# Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3
ՄԱՐՏ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 60-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

**Վաթսուն տարի առաջ՝ 1922 թ. դեկտեմբերի 30-ին, մեր երկրի ժողովուրդների կամքով ստեղծվեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը՝ բանվորների և գյուղացիների աշխարհում առաջին միասնական միութենական բազմազգ պետությունը:**

ՍՍՀՄ վաթսունամյակը նշանակալի իրադարձություն է սովետական ժողովրդի կյանքում, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, սոցիալիզմի պատմական նվաճումների վկայությունը: Այդ փառապանծ տարեդարձին Սովետական Միությունը ամբողջ աշխարհի առջև հանդես է գալիս որպես համատեղ կոմունիզմ կառուցող իրավահավասար հանրապետությունների համերաշխ ընտանիք: Կուռ է մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը: Անխախտ է սովետական ժողովրդի համախմբվածությունը հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը, լենինյան մեծ գործի հավատարիմ շարունակող ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտրոնական կոմիտեի շուրջը:

Սովետական մարդիկ իրենց մեծ տոնը դիմավորում են հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած նոր հաջողություններով, համառ, ստեղծագործական աշխատանքով իրականացնելով ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած կոմունիստական շինարարության պլանները: Ղեկավարվելով համագումարի որոշումներով, կուսակցությունն ու ժողովուրդը հաստատակամ պայքար են մղում պատերազմի սպառնալիքը վերացնելու և աշխարհի խաղաղությունն ամրապնդելու համար:

**ՍՍՀ Միության ծնունդը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի արգասիքն է:** Հոկտեմբերը փշրեց սոցիալական և ազգային ճնշման շղթաները, պատմական ինքնուրույն ստեղծագործության հասցրեց մեր երկրի բոլոր ժողովուրդներին: Բանվոր դասակարգի իշխանության, արտադրության միջոցների հանրային սեփականության հաստատմամբ դրվեց բոլոր ազգերի և ազգությունների ազատ զարգացման, նրանց սերտ միասնության և բարեկամության ամուր հիմքը:

Որպես ինտերնացիոնալ համախմբման առաջատար ուժ հանդես եկավ Ռուսաստանի բանվոր դասակարգը: Ինքնակալության և կապիտալիզմի դեմ մղած իր հեղափոխական պայքարի անօրինակ հերոսությամբ, քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում ցուցաբերած արիությամբ ու տոկունությամբ, անձնվեր աշխատանքով, հետևողական ինտերնացիոնալիզմով նա վաստակեց բոլոր ազգությունների աշխատավորների ճանաչումն ու վստահությունը: Բանվոր դասակարգը աշխատավոր մասսաներին, ինչպես որ կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, հասցրեց սովետական հասարակարգի: Սովետա-

կան կազմակերպության գաղափարը հարազատ էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավոր մասսաներին, պարզ ու կիրառելի՝ նրանց կյանքի ամենաբազմազան պայմաններում:

Միասնական միութենական պետության ստեղծման գործում վճռական դեր խաղաց ՌՍՖՍՀ-ն, որի շուրջը կամավոր հիմունքներով համախմբվեցին բոլոր սովետական հանրապետությունները: Լինելով առաջին բազմազգ սովետական պետությունը, ՌՍՖՍՀ-ն հանդիսացավ ՍՍՀ Միության նախատիպը: Ռուս ժողովուրդը, հաշվի չառնելով դժվարությունները ու զրկանքները, անշահախնդիր օգնություն էր ցույց տալիս երկրի մյուս ժողովուրդներին՝ պաշտպանելու իրենց հեղափոխական նվաճումները, անգնահատելի ավանդ մուծեց նախկին ազգային ծայրամասերի հետամնացությունը հաղթահարելու գործում:

**ՍՍՀՄ կազմավորումն իր կազմով բազմազգ, գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ, կազմակերպական կառուցվածքով, գործունեության սկզբունքներով խորապես ինտերնացիոնալիստական՝ բոլշևիկների լենինյան կուսակցության մեծագույն ծառայությունն է:**

Բանվոր դասակարգի, ամենալայն մասսաների արմատական շահերի անդուլ պաշտպանությամբ, կոմունիզմի իդեալներին նվիրվածությամբ, բոլոր ժողովուրդների ազգային շահերի և զգացմունքների հանդեպ մեծագույն ուշադրությամբ, բուրժուական նացիոնալիզմի, շովինիզմի և ազգային նիհիլիզմի բոլոր դրսևորումների նկատմամբ անհաշտությամբ կուսակցությունը նվաճեց երկրի բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների առաջնորդը լինելու վեհ իրավունքը: Տեսական, քաղաքական ու կազմակերպչական հետևողական աշխատանքով կուսակցությունը նրանց դաստիարակեց միասնականության հաստատ վճռականությամբ, նրանց կամքը և ուժերը մոբիլիզացրեց ընդհանուր նպատակի իրագործման՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար: Երկրի ժողովուրդների սոցիալական և ազգային ազատագրության, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի բարձրացման գործում կուսակցությունը ներդրեց իր անդուլ աշխատանքը, կոմունիստների տաղանդն ու հոգեկան խանդավառությունը, կադրերի գիտելիքներն ու կազմակերպչական արվեստը:

**ՍՍՀ Միության ստեղծումը Վլադիմիր Իլյիչ Լենինի գաղափարների, ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների կենդանի մարմնացումն է:** Նոր դարաշրջանի գիտական վերլուծության հիման վրա Վ. Ի. Լենինը ստեղծագործաբար, համակողմանիորեն զարգացրեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հայացքները ազգային հարցի վերաբերյալ: Դրա լուծման գլխավոր ուղին նա համարում էր պրոլետարիատի դասակարգային պայքարը քաղաքական իշխանության նվաճման համար, նոր, շահագործումից զերծ հասարակության ստեղծման համար: Լենինը խորապես հիմնավորեց սովետական հանրապետությունների սերտագույն դաշինքի անհրաժեշտությունը սոցիալիստական շինարարության խնդիրների լուծման համար, հայրենիքը իմպերիալիզմի ոտնձգություններից պաշտպանելու համար: Այդ դաշինքի ամրության երաշխիքը Լենինը համարում էր ազգերի հարաբերություններում լիակատար փոխադարձ վստահությունը, կամավոր համաձայնությունը, անհավասարության ամեն մի ձևի բացառումը: Լինելով համոզված ինտերնացիոնալիստ, նա հետևողականորեն և անհաշտ պայքարում էր բոլոր աշխատավորների հեղափոխական համախմբման համար, ազգային պրոբլեմների լուծման գործում ամեն տեսակ խոտորումների դեմ:

Լենինի քաղաքական ու կազմակերպչական հանճարը, նրա վիթխարի աշխատանքը մի ամբողջության մեջ միավորեցին կոմունիստների մարտական կազմակերպության ուժը, պրոլետարիատի հեղափոխական կորովը և ժողովուրդների՝ ազգային հավասարության և ազատության անհաղթահարելի ձգտումը: Նրա մշակած գաղափարները կենսագործվեցին:

Պատմությունը չգիտե մի այլ պետություն, որը խիստ կարճ ժամկետներում այնքան շատ բան արած լինի ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման համար, որպիսին է ՍՍՀՄ-ը՝ մեր բոլոր ժողովուրդների սոցիա-



լիստական հայրենիքը: Նրանց միասնությունը կոփվում և ամրապնդվում էր ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրական հեղափոխության ընթացքում, սոցիալիզմի կառուցման պայքարում: Հայրենական մեծ պատերազմի դաժան տարիներին եղբայր ժողովուրդները ուս-ուսի տված ոտքի ելան պաշտպանելու հայրենիքը, ցուցաբերեցին մասսայական հերոսություն և հաղթանակի աննկուն կամք, ջախջախեցին ֆաշիստական զավթիչներին, փրկեցին աշխարհի ժողովուրդներին ստրկացումից և ոչնչացումից: Համաժողովրդական անմոռաց սխրանք դարձավ տնտեսության ետպատերազմյան վերածնունդը:

Սովետների երկրի ժողովուրդները սեփական փորձով համոզվեցին. միասնական միության մեջ համախմբվելը բազմապատկում է իրենց ուժերը, արագացնում սոցիալ-տնտեսական զարգացումը: Մենք իրավունք ունենք հպարտանալու, որ երկրի բոլոր ազգերի աշխատավորների հետ ընդհանուր շարքում նախկին ազգային ծայրամասերի ժողովուրդները, որոնք առաջներում դատապարտված էին դարավոր հետամնացության, վստահորեն քայլեցին դեպի սոցիալիստական գալիքը, շրջանցելով կապիտալիզմի փուլը և հասան սոցիալական առաջընթացի բարձունքներին: Նոր, արդարացի աշխարհի համար համատեղ պայքարում ծնվեցին աշխատավոր մարդկանց մեծ եղբայրությունը, միասնական ընտանիքի զգացումը, ստեղծվեց ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամությունը՝ մասսաների ստեղծարար գործունեության անսպառ աղբյուրները:

Անցած 60 տարիները նշանավորվեցին Սովետական Միության սոցիալ-տնտեսական շեշտակի զարգացմամբ: Այդ ժամանակամիջոցում ազգային եկամուտը բազմապատիկ աճեց: Համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ ՍՍՀՄ-ի բաժինը 1922 թվականի մեկ տոկոսից բարձրացավ ու հասավ ներկայիս քսան տոկոսին:

Ժողովուրդների համերաշխ ընտանիքում դինամիկ աճում է սովետական բոլոր հանրապետությունների էկոնոմիկան: Ժամանակակից արդյունաբերություն, գյուղատնտեսություն, գիտություն, կուլտուրայի իսկական ծաղկում՝ ահա թե ինչն է այսօր բնորոշ նրանցից յուրաքանչյուրին: Միևնույն ժամանակ նրանք ունեն իրենց անկրկնելի դեմքը, ազգային ինքնատիպ գծերը:

**Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ՍՍՀ Միության մեջ համախմբված ժողովուրդների հեղափոխական-վերակերտիչ գործունեության արգասիքը եղավ զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը:** Երկրում հաստատվեցին հասուն սոցիալիստական հասարակական հարաբերություններ, հիմնականում լուծվեց սովետական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման խնդիրը: Ապահովվեց բոլոր ազգերի և ազգությունների իրավաքանական ու փաստական հավասարություն: Կազմավորվեց մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը:

Այդ հանրությունը խարսխվում է սովետական մարդկանց պատմական բախտի անբաժանելիության վրա, ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր բնույթի օբյեկտիվ խոր փոփոխությունների, բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության անխախտ դաշինքի վրա: Այն տնտեսական և ամբողջ հասարակական կյանքի հարանուն ինտերնացիոնալացման, մեր երկրում սոցիալիստական ազգերի զարգացման արդյունքն է, ազգեր, որոնց միջև ստեղծվել են իսկական իրավահավասարության, եղբայրական փոխըմբռնման ու համագործակցության, հարգանքի և փոխադարձ վստահության հարաբերություններ:

Մեր հայրենիքի սոցիալ-տնտեսական առաջընթացի նոր բնագծեր դուրս գալը կուսակցությանն ու ժողովրդին հնարավորություն են ընձեռում իրականացնելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատավորների բարեկեցության և կուլտուրայի հետագա բարձրացման, սոցիալ-դասակարգային և ազգային հարաբերությունների զարգացման, սոցիալիստական պետականության և դեմոկրատիայի կատարելագործման, նոր մարդու

դաստիարակության՝ իրենց մասշտաբներով ու բարդությամբ հարանուն խնդիրները: Այդ խնդիրների լուծման ծավալուն ծրագիրը առաջադրեց ՍՄԿԿ XXVI համագումարը:

**Հասուն սոցիալիստական հասարակարգում հաջողությամբ զարգանում է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսը՝ ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության նյութական հիմքը:** Սովետական Միությունը ինդուստրիալ հզոր տերություն է՝ բարձր մեքենայացված գյուղատնտեսությամբ, առաջավոր գիտությամբ ու կուլտուրայով:

Յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկա կարևոր տեղ է գրավում աշխատանքի հասարակական բաժանման մեջ, ավելի ու ավելի ծանրակշիռ ավանդ է մուծում երկրի ազգային հարստության մեջ: Ամենուրեք ստեղծվել և հաջողությամբ աշխատում են բազմազգ արտադրական, գիտական և ստեղծագործական կոլեկտիվներ: Դա մեր օրերի սոցիալական և հասարակական-քաղաքական հատկանշական երևույթն է:

Սովետական բոլոր հանրապետությունների հետագա վերելքին զգալի չափով նպաստում է ընդհանուր միութենական այնպիսի խոշոր ժողովրդատնտեսական խնդիրների լուծումը, ինչպիսիք են Սիբիրի, Հեռավոր Արևելքի և Հյուսիսի, ԲԱՄ-ի գոտու վառելիքաէներգետիկ և հումքային հարստությունների յուրացումը, ոչ սևահողային գոտու զարգացումը: Դրա համար անհրաժեշտ են բոլոր հանրապետությունների աշխատավորների համատեղ ջանքերը, նրանց նյութական և աշխատանքային ռեսուրսների ակտիվ մոբիլիզացումը:

**Կուսակցության կուրսը, ինչպես նշեց XXVI համագումարը, նախատեսում է յուրաքանչյուր հանրապետության նյութական և հոգևոր պոտենցիալի մեծացում և դրա հետ մեկտեղ նրա առավելագույն օգտագործում ողջ երկրի ներդաշնակ զարգացման համար:** Կուսակցությունը դա համարում է սովետական հասարակության առաջընթացի, ՍՍՀՄ տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման, աշխատավորների բարեկեցության բարձրացման անհրաժեշտ պայմանը: Կենտրոնացված պլանավորումը՝ միութենական և ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի և օկրուգների լայն նախաձեռնության զուգորդությամբ հնարավորություն է ընձեռում ապահովելու սովետական էկոնոմիկայի հաշվեկշռված և արդյունավետ զարգացումը: Բոլոր տնտեսական և սոցիալական խնդիրները լուծել առաջին հերթին համապետական դիրքերից, պայքարել տեղայնության և գերատեսչականության ամեն տեսակ դրսևորումների դեմ՝ այսպիսին է գործի նկատմամբ իսկական կուսակցական, ինտերնացիոնալիստական մոտեցման անհրաժեշտ պահանջը:

**Արդի պայմաններում շարունակվում է սովետական հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումը, որը տանում է դեպի հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում հասարակության՝ գլխավորում և հիմնականում անդասակարգ կառուցվածքի հաստատմանը:** Որպես այդ պրոցեսի վճռական ուժ, նրա «սոցիալական բանականություն և սոցիալական սիրտ» (Կ. Մարքս) հանդես է գալիս բանվոր դասակարգը: Իր տնտեսական դիրքով, իր գաղափարախոսությամբ, հոգեբանությամբ և բարոյականությամբ նա եղել և մնում է աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության և եղբայրության առավել հետևողական արտահայտիչը: ՍՄԿԿ-ն ամեն անհրաժեշտ բան անում է, որպեսզի մշտապես աճեն մեր բազմազգ բանվոր դասակարգի գաղափարական հասունությունը, սոցիալական ակտիվությունը, ընդհանուր կուլտուրան և պրոֆեսիոնալ վարպետությունը, նրա դերը արդի քաղաքականության հանգուցային պրոբլեմների լուծման գործում:

70-ական թվականներին աճեցին սովետական բանվոր դասակարգի բոլոր ազգային ջոկատները, հատկապես այն հանրապետություններում, որտեղ բնակչության կառուցվածքում նրա տեսակարար կշիռը ընդհանուր միութենականից ցածր էր: Կուսակցությունը այսուհետ ևս մշտական ուշադրություն կնվիրի բնիկ ազգության որակյալ բանվորների կադրեր պատրաստելուն: Այս ամենը նպաստում է հասարակության զարգացման վրա բանվոր դասա-



կարգի ազդեցության ընդլայնմանը, ամրապնդում է բոլոր դասակարգերի և խմբերի, ազգերի և ազգությունների միասնության սոցիալական հիմքը:

Լենինյան ազգային քաղաքականության իրականացման հետ օրգանապես կապված են սովետական հանրապետությունների կոլտնտեսային գյուղացիության սոցիալական դեմքի, նրա կուլտուրայի, նրա կյանքի պայմաններում կատարված խոր փոփոխությունները: Պարենային պրոբլեմի լուծումը, գյուղատնտեսական արտադրության, հողագործության և անասնապահության կուլտուրայի համակողմանի վերելքը այժմ տնտեսական և քաղաքական կարևորագույն խնդիրներն են:

Այդ խնդիրների կատարումը պահանջում է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդում, ագրոարդյունաբերական ինտեգրացման զարգացում, կադրերի պատրաստման և տեղում նրանց ամրակայման գործի բարելավում, գյուղում աշխատանքի և կենցաղի պայմանների կատարելագործում:

ՍՍՀՄ-ը առաջավոր դիրքեր է գրավում համաշխարհային գիտության, տեխնիկայի և կուլտուրայի ասպարեզում, և դրանում կա սովետական բազմազգ մտավորականության հսկայական ծառայությունը: Ինժեներատեխնիկական, գիտական, գեղարվեստական մտավորականության, ուսուցիչների և բժիշկների խոշոր ջոկատներ են ստեղծվել և շարունակում են աճել յուրաքանչյուր հանրապետությունում: Կարևոր է այսուհետ ևս կատարելագործել մասնագետների պատրաստման որակը և պլանավորման սիստեմը, նրանց տեղաբաշխելիս ավելի ճշտորեն հաշվի առնել հանրապետությունների և ամբողջությամբ վերցրած ՍՍՀ Միության ռեալ պահանջմունքները, ավելի լրիվ օգտագործել նրանց ստեղծագործական պոտենցիալը՝ հօգուտ կոմունիստական շինարարության:

**Զարգացած սոցիալիստական հասարակարգում առավել վառ կերպով է բացահայտվում ՍՄԿԿ-ի և սովետական պետության սոցիալական քաղաքականության համաժողովրդական բնույթը:** Այդ քաղաքականությունը նպատակամղված է բոլոր ազգերի և ազգությունների համար կենսական այնպիսի հարցերի լուծմանը, ինչպիսիք են աշխատավորների բարեկեցության, կրթության և կուլտուրայի բարձրացումը, նրանց աշխատանքի և հանգստի պայմանների բարելավումը, բնակարանային շինարարության զարգացումը, սոցիալական ապահովության սիստեմի, բժշկական և կենցաղային սպասարկման կատարելագործումը, շրջակա միջավայրի պահպանությունը: Յոթանասնական թվականներին իրականացվեց ժողովրդի կենսամակարդակի բարձրացման՝ երկրի ամբողջ պատմության մեջ ամենալայն ծրագիրը: Դրան հատկացվեցին երկու անգամ ավելի շատ միջոցներ, քան նախորդ տասնամյակում: Դրա շնորհիվ բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները ավելացան գրեթե մեկուկես անգամ: Այն, ինչ սոցիալիզմը ձեռք է բերել սոցիալ-տնտեսական զարգացման, մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման գործում՝ մի ամբողջ դարաշրջան է:

Միևնույն ժամանակ կուսակցությունը տեսնում է չլուծված պրոբլեմները, եղած դժվարություններն ու թերությունները: ՍՄԿԿ-ն կոմունիստներին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնում է դրանց հաղթահարման համար: Սովետական մարդիկ որպես մարտական կուսակցական պատվիրան ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումում Լ. Ի. Բրեժնևի ասած խոսքերը՝ «Հարկավոր է ավելի լավ աշխատել: Ավելի լավ կազմել պլանները և ավելի լավ կատարել դրանք: Ավելի լավ կազմակերպել արտադրությունը և ավելի լավ արտադրել: Մի խոսքով, ավելի արդյունավետ աշխատել»:

Կուսակցությունը ձգտում է այնպես անել, որ նյութական և հոգևոր բարիքների պահանջմունքի ընդհանուր աճի հետ մեկտեղ անշեղորեն հաղթահարվեն սոցիալական խմբերի և ռեգիոնների, քաղաքի և գյուղի միջև անցյալից ժառանգված տարբերությունները, որ հետևողականորեն կիրառվեն բաշխ-

սական և կուլտուրական շինարարության կարևոր հարցերը, անցնում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի իսկական դպրոց։

Կյանքը հաստատում է՝ ՍՍՀ Միությունը սովետական ազգերի և ազգությունների պետական միավորման դինամիկ և արդյունավետ ձև է, որը նկատի է առնված սոցիալիստական պետականությունը աստիճանաբար կոմունիստական հասարակական ինքնակառավարման վերաճելու պատմական ամբողջ ժամանակաշրջանի համար։

**Զարգացած սոցիալիզմի պայմաններում անշեղորեն աճում է ՍՄԿԿ-ի ղեկավար, ուղղություն տվող և կազմակերպող գործունեության դերը ՍՍՀՄ ազգերի և ազգությունների զարգացման, նրանց եղբայրական դաշինքի ամրապնդման գործում:** Ազգային հարաբերությունների ոլորտի ճիշտ, մարքս-լենինյան սկզբունքների վրա հիմնված կուսակցական ղեկավարությունը բազմազգ սոցիալիստական հասարակության առաջընթացի անհրաժեշտ պայմանն է։ Կուսակցությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ընկեր Լ. Ի. Բրեժնևը մշտական հոգատարություն են ցուցաբերում ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության և միասնության ընտ ամենայնի ամրապնդման նկատմամբ, ստեղծագործաբար զարգացնում լենինյան ուսմունքը ազգային հարցի վերաբերյալ։

Կոմունիստները եղել և մնում են, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը, ինչպես դեմոկրատական, ինչպես ինտերնացիոնալիստական բազայի վրա ազգերի աստիճանական, ավելի ու ավելի լրիվ մերձեցման կողմնակիցներ։ Անդասակարգ հասարակության ստեղծումը կարևոր ուղենիշ կլինի մարքս-լենինյան գիտության բացահայտած այդ օրինաչափ պրոցեսի հետագա զարգացման մեջ։ Կոմունիստական գաղափարախոսության համար չկա առավել խորթ բան, քան տվյալ օբյեկտիվ պրոցեսը արհեստականորեն առաջ մղելու կամ նրան խոչընդոտելու ձգտումը։ Խնդիրն այն է, որ ասպարեզ տրվի նրա բնական զարգացմանը ժողովուրդների կամավորության, հավասարության և եղբայրական համագործակցության հիման վրա։

Յուրաքանչյուր ազգի և ազգության շահերի ու պահանջմունքների մանրակրկիտ հաշվառում, ամբողջությամբ վերցրած սովետական ժողովրդի շահերի հետ դրանց օրգանական զուգակցում, հասարակության զարգացման հրատապ խնդիրների լուծման համար աշխատավորների ջանքերի միավորում՝ այս ամենը գտնվում է ՍՄԿԿ-ի ուշադրության կենտրոնում։

Կուսակցությունը զգայուն կերպով հետևում է այն բանին, որ ազգային հարաբերությունների ոլորտում նոր պրոցեսներն ու պրոբլեմները, որպիսիք մշտապես ծնում է այնպիսի խոշոր բազմազգ պետության զարգացումը, ինչպիսին մերն է, ժամանակին և լիակատար կերպով արտացոլվեն կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական մարմինների գործունեության մեջ։ Այդ խնդրի իրականացման հուսալի միջոցն է ղեկավարման գիտական սկզբունքների, աշխատանքի լենինյան ոճի, լենինյան կադրային քաղաքականության անշեղ կիրառումը։

Սովետական հանրապետությունները բնակչության բազմազգ կազմ ունեն։ Կարևոր է, որ բոլոր ազգերը պատշաճ ներկայացուցչություն ստանան կուսակցական և պետական մարմիններում՝ խստիվ հաշվի առնելով մարդու գործնական և գաղափարաքաղաքական հատկությունները։ Քանի որ մի շարք հանրապետություններում վերջին տարիներս զգալիորեն ավելացել է ոչ բնիկ ազգությունների քաղաքացիների թիվը, որոնք իրենց յուրահատուկ պահանջմունքներն ունեն լեզվի, կուլտուրայի և կենցաղի բնագավառում, կուսակցական կոմիտեները կոչված են ավելի խոր կերպով թափանցելու այդ պրոբլեմների մեջ, ժամանակին առաջարկելու դրանց լուծման ուղիները։

«Մեր երկրում հարգվում են ազգային զգացմունքները, յուրաքանչյուր մարդու ազգային արժանապատվությունը,— նշվում է XXVI համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։— ՍՄԿԿ-ն պայքարել է և միշտ էլ վճռականորեն կպայքարի սոցիալիզմի էությանը խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են շովինիզմը կամ նացիոնալիզմը, ամեն տեսակ



նացիոնալիստական խեղումների դեմ, լինի դա, ասենք, հակասեմիտիզմ թե սիոնիզմ»։ Իր ամբողջ գործունեությամբ, նպատակասլաց գաղափարախոսական աշխատանքով կուսակցությունն աշխատավորներին դաստիարակում է սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, սովետական միասնական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացմունքի ոգով։

Լինել ինտերնացիոնալիստ, շեշտել է Լենինը, նշանակում է «մտածել **ոչ** միայն իր ազգի մասին, այլ **նրանից ավելի բարձր** դասել բոլորի շահերը»։ Նա սովորեցնում էր պայքարել մանր ազգայնական նեղմտության, պարփակվածության, մեկուսացվածության դեմ։ Հավատարիմ լինելով լենինյան պատգամներին, կուսակցությունը աշխատավորների մեջ մշակում է ամեն տեսակ ազգային պրոբլեմներին դասակարգային դիրքերից մոտենալու կարողություն։ Նա ձգտում է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր սովետական մարդ պարզորեն հասկանա, թե ինտերնացիոնալ պարտքի կատարումն այսօր գործնականում նշանակում է նախ և առաջ բարեխիղճ, նախաձեռնողական, ստեղծագործական աշխատանք ընդհանուրի բարօրության համար, աշխատանքի արդյունավետության և որակի ըստ ամենայնի բարձրացում, ակտիվ մասնակցություն համաժողովրդական խնդիրների լուծմանը, ՍՍՀ Միության, համաշխարհային սոցիալիստական ընկերակցության տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդմանը։

**ՍՍՀՄ-ի կազմավորումը և հաջող զարգացումը միջազգային անանց նշանակություն ունի, պատմական կարևոր բնագիծ է նշանավորում ժողովուրդների իրավահավասարության և բարեկամության, աշխարհի հեղափոխական նորացման համար առաջավոր մարդկության դարավոր պայքարում:**

Կյանքը հաստատեց լենինյան այն կանխատեսումը, որ նոր հասարակարգը ծնում է միանգամայն այլ միջազգային հարաբերություններ, որոնք զերծ են կապիտալիստական աշխարհի համար բնորոշ խտրականությունից, գերիշխումից ու ենթարկումից։ Այդպիսի հարաբերությունների օրինակ են տալիս սոցիալիզմի եղբայրական երկրները։

**Պետությունների՝ սոցիալիզմի էությանը ներհատուկ հարաբերությունները առավել լիակատար կերպով մարմնավորված են սոցիալիստական ընկերակցության մեջ:**

Այն մարմնավորում է արմատական շահերի և մարքս-լենինյան գաղափարախոսության ընդհանրությամբ համախմբված, ընկերական համերաշխության ու փոխօգնության, բազմակողմանի համագործակցության կապերով շաղկապված սուվերեն, իրավահավասար պետությունների միջազգային հարաբերությունների նոր, սոցիալիստական տիպ։

Սոցիալիստական ընկերակցության երկրների կենդանի ոգին, ղեկավար և ուղղություն տվող ուժը նրանց կոմունիստական ու բանվորական կուսակցություններն են։ Փորձը հաստատում է, որ մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հավատարմությունը, բոլոր բնագավառներում եղբայրական կուսակցությունների սերտ փոխգործողությունը հնարավորություն են ընձեռում ճիշտ զուգակցելու սոցիալիստական պետությունների ընդհանուր և ազգային շահերը, հաջողությամբ լուծելու զարգացման ընթացքում ծագող հակասություններն ու դժվարությունները, վստահորեն առաջ ընթանալու յուրաքանչյուր երկրի և ողջ սոցիալիստական ընկերակցությանը։ Այդ բանին հուսալիորեն ծառայում են Տնտեսական փոխօգնության խորհուրդը և Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը։

Սոցիալիստական երկրները անվիճելի հաջողությունների են հասել նոր հասարակության կառուցման ասպարեզում։ Միևնույն ժամանակ համաշխարհային սոցիալիզմի ինտերնացիոնալ փորձը հավաստեց լենինյան այն միտքը, որ ռեալ սոցիալիզմ տանող ճանապարհը բարդ կլինի։ Չի կարելի հաշվի չառնել, որ նոր կարգերի զարգացումը տեղի է ունենում իմպերիալիզմի տնտեսական, քաղաքական, ռազմական և գաղափարախոսական մշտական ճնշման պայմաններում։ Այնտեղ, որտեղ իմպերիալիզմի քայքայիչ գործունեությանը ավելանում են ներքին քաղաքականության սխալներն ու վրիպում-

ները, հող է ստեղծվում խորը, հակասոցիալիստական ուժերի ակտիվացման համար: Պրակտիկան ցույց է տալիս, թե կառավարող կոմունիստական կուսակցության համար որքան կարևոր է մասսաների հետ կապի ամրապնդման համար հոգալը, կշռադատված, ռեալիստական քաղաքականություն վարելը, ինտերնացիոնալիստական ոգով աշխատավորներին դաստիարակելը, սոցիալիզմի հակառակորդներին ժամանակին ու վճռական հակահարված տալը, եղբայրական պետությունների հետ համերաշխությունն ամրապնդելը:

Համաշխարհային սոցիալիստական ընկերակցությունը անշեղորեն զարգանում է: Շարունակվում է եղբայրական երկրների մերձեցման պրոցեսը: Այն ընթանում է հաշվի առնելով նրանց ազգային, պատմական առանձնահատկությունները, որը դրսևորվում է այդ երկրների հասարակական կյանքի ձևերի բազմազանության մեջ: Առավել սերտ է դառնում նրանց փոխգործողությունը ժողովուրդների խաղաղության և անվտանգության համար մղվող պայքարում: Կատարելագործվում է երկկողմ և բազմակողմ համագործակցությունը էկոնոմիկայի, գաղափարախոսության, գիտության և կուլտուրայի ոլորտում: Երկարաժամկետ նպատակային ծրագրերի հիման վրա խորանում է տնտեսական ինտեգրացումը: Կյանքն ինքը եղբայրական երկրների առջև խնդիր է դրել պլանների կոորդինացումը լրացնել ամբողջությամբ վերցրած տնտեսական քաղաքականության համաձայնեցմամբ:

**ՍՄԿԿ-ն հետևողականորեն հանդես է գալիս միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման բոլոր ջոկատների հետ սոցիալիստական ընկերակցության համերաշխության ամրապնդման օգտին:** Կուսակցության XXVI համագումարը շեշտեց, որ համաշխարհային կոմունիստական շարժման հետագա համախմբման և նրա հեղինակության աճի հզոր գործոն է ծառայում կոմունիստների հետևողական պայքարը հանուն խաղաղության, ընդդեմ իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության, նրա կողմից ուժեղացվող սպառազինությունների մրցավազքի, որը ժողովուրդներին միջուկային աղետի սպառնալիք է բերում: Կոմունիստները, զինված լինելով մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով, անդուլ կերպով պայքարում են իրենց երկրների բանվոր դասակարգի, աշխատավորների շահերի համար, դեմոկրատիայի, խաղաղության և սոցիալիզմի համար:

Զարգանում է ՍՍՀՄ-ի համագործակցությունը Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման հետ, ազատագրված պետությունների հետ, որոնք պայքարում են ընդդեմ իմպերիալիզմի, հանուն ազգային անկախության ամրապնդման ու սոցիալական առաջընթացի: Սովետական Միությունը վճռականորեն հանդես է գալիս գաղութատիրության մնացուկների վերացման օգտին, նեոգաղութատիրության և ռասիզմի դեմ, տնտեսական ու քաղաքական թելադրանքի և անիրավահավասարության դեմ: Նա հետևողականորեն պաշտպանում է չմիանալու շարժման հակաիմպերիալիստական ավանդույթները, գործնականորեն աջակցում դեմոկրատական հիման վրա միջազգային տնտեսական հարաբերությունների վերակառուցման համար զարգացող պետությունների պայքարին: Երիտասարդ պետությունները, և ամենից առաջ սոցիալիստական կողմնորոշում ընտրածները, բուռն հետաքրքրությամբ են վերաբերվում ազգային-տնտեսական շինարարության, առանց զարգացման կապիտալիստական փուլի ՍՍՀՄ մի շարք ժողովուրդների՝ սոցիալիզմին անցնելու սովետական փորձին:

Մեծ Հոկտեմբերի հաղթած ուղիով ՍՍՀ Միության ժողովուրդների հետ միասին այսօր ընթանում են հարյուր միլիոնավոր մարդիկ Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի տարբեր երկրներում: Չկա ու չի կարող լինել դեպի սոցիալիզմ տանող ճանապարհ՝ առանց հաշվի առնելու այն ընդհանուր օրինաչափությունները, որոնք հայտնագործվել են մարքսիզմ-լենինիզմի կողմից, հաստատվել ՍՍՀՄ-ի, ռեալ սոցիալիզմի երկրների փորձով, հեղափոխական պայքարի և սոցիալիստական շինարարության ինտերնացիոնալ պրակտիկայով, ինչպես նաև չի կարող լինել այդ ուղիով հաջող առաջընթաց՝ առանց բազմակողմանիորեն հաշվի առնելու յուրաքանչյուր երկրի ազգային առանձնահատկությունները:



**Միջազգային իրադրության սրման պայմաններում, որի պատճառը իմպերիալիզմի, ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմի քաղաքականությունն է, մարդկության բախտի համար առաջնակարգ նշանակություն ունի մեր կուսակցության և պետության պաշտպանած խաղաղության լենինյան ստրատեգիայի ակտիվ կենսագործումը:** ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած և Լ. Ի. Բրեժնևի նոր նախաձեռնություններով լրացված խաղաղության 80-ական թվականների ծրագիրը նշում է պատերազմի սպառնալիքի թուլացման, լարվածության թուլացման պրոցեսի խորացման, տարբեր հասարակարգեր ունեցող պետությունների լայն համագործակցության զարգացման ռեալիստական, կոնստրուկտիվ ուղիները: Այդ ծրագիրը հնարավորություն է ընձեռում միջազգային բարդ պրոբլեմները լուծելու ոչ թե առճակատման միջոցով, այլ ազնիվ, իրավահավասար բանակցությունների հիմունքներով:

Սովետական պետության քաղաքականությունը աշխարհին սպառազինությունների մրցավազքի նոր փուլ պարտադրելու, միջազգային մթնոլորտը մշտապես շիկացնելու, միջազգային փոխշահավետ կապերի հիմքերի խարխլելու իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների ձգտման գործուն հակակշիռն է: Այն խորապես մարդասիրական է, կրում է անկեղծ, դեմոկրատական բնույթ, համապատասխանում է ՍՍՀՄ-ի, եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդների, ողջ խաղաղասեր մարդկության շահերին: Դա այդ քաղաքականությունը ապահովում է միջազգային հասարակայնության ամենալայն շրջանների, բարի կամքի բոլոր մարդկանց աջակցությամբ:

ՍՍՀՄ-ի, սոցիալիստական ընկերակցության երկրների խաղաղասիրական քաղաքականությունը միևնույն ժամանակ իմպերիալիզմի ագրեսիվ նկրտումներին վճռական հակահարված տալու քաղաքականություն է, նկրտումներ, որոնց հետ միանում է Պեկինի այժմյան ղեկավարության հակասովետական քաղաքականությունը, ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների անվտանգության նկատմամբ բոլոր ոտնձգություններին հակահարված տալու քաղաքականություն է: Սոցիալիստական ընկերակցությունը անհրաժեշտ ամեն բան ունի իր պատմական հեղափոխական նվաճումները պաշտպանելու համար:

Սովետական Միությունը ոչ ոքի չի պարտադրում պետական կառուցվածքի որևէ շաբլոն և «մոդել», որոնք անտեսեին այս կամ այն երկրի առանձնահատկությունները: Նա պատմության ընթացքի վրա հարաճուն ազդեցություն է գործում իր գոյության բուն փաստով, նոր տիպի սոցիալական, ազգամիջյան հարաբերությունների ռեալ պրակտիկայով, բարդ պրոբլեմների լուծման օրինակի ուժով, որոնցից ի վիճակի չէ գլուխ հանել կապիտալիզմը: ՍՍՀՄ-ը, որպես հզոր սոցիալիստական պետություն, մյուս երկրների հետ իր հարաբերությունները կառուցում է հավասարության վեհ, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, մարդկային սկզբունքով, այլ ոչ թե մեծ ժողովրդին նվաստացնող արտոնությունների սկզբունքով:

**Դիմավորելով ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը, սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում է իր նվաճումներով, այն հեղափոխական պատմական առաքելությամբ, որ պատվով կատարում է մեր հայրենիքը, ընթանալով ժողովուրդների խաղաղության, անկախության, ազատության ու երջանկության համար մարտնչողների առաջին շարքերում:** ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները Սովետական Միության բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորներին ոգեկոչում են աշխատանքային նոր մեծագործությունների՝ հանուն կոմունիզմի հաղթանակի:

Բոլոր հանրապետությունների հետագա զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում նշանակալի քայլ է տասնմեկերորդ հնգամյակը: Այն նշանավորում է նաև կարևոր փուլ լենինյան ազգային քաղաքականության իրականացման, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ամրապնդման բնագավառում:

Հանրային արտադրությունն ինտենսիվացնելու, նրա արդյունավետությունն ըստ ամենայնի բարձրացնելու կուսակցության կուրսը պահանջում է մեծ կազմակերպվածություն, գործարարություն և կարգապահություն, կառա-

վարման սիստեմի հստակ և ներդաշնակ գործունեություն, մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացում:

Տասնմեկերորդ հնգամյակի և 80-ական թվականների ողջ ժամանակաշրջանի համար կուսակցության առաջադրած խնդիրները համապատասխանում են սովետական ժողովրդի կենսական շահերին: Եվ նա հաստատակամորեն պայքարում է դրանց լուծման համար: ՍՍՀՄ-ի 60-ամյակի առթիվ ծավալված սոցիալիստական մրցության մեջ բոլոր հանրապետությունների, երկրամասերի և մարզերի աշխատավորները ցուցաբերում են հարվածային աշխատանքի հիանալի օրինակներ, ամեն ինչ անում 1982 թվականի պլանի հաջող կատարման համար:

Իր ուժերին վստահ, լավատեսությամբ համակված սովետական ժողովուրդը ընթանում է Լենինի կուսակցության նշած ուղիով: Կասկած չկա, որ ՍՄԿԿ XXVI համագումարի սահմանած կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ կլուծվեն: Դրա գրավականը ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ համախմբվածությունն է, նրանց համերաշխ համատեղ աշխատանքը հանուն այդ մեծ նպատակի:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է.

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, զինված ուժերի քաղմարմիններին՝ կազմակերպչական և գաղափարադաստիարակչական լայն աշխատանք ծավալել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի նախապատրաստության նպատակով:

Կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական մարմինների ողջ գործունեությունը նպատակամղել մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվության հետագա բարձրացմանը, կուսակցության XXVI համագումարի պատմական որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած խնդիրների հաջող կենսագործմանը:

Հավանություն տալ Մոսկվայի, Լենինգրադի, բոլոր միութենական հանրապետությունների առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությանը, որոնք սոցիալիստական մրցություն են ծավալել ՍՍՀՄ 60-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու, տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի պլանը, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համար:

Հաստատակամորեն բարձրացնել մրցության ամբողջ կազմակերպման մակարդակը, այն զարգացնել տնտեսական մեխանիզմի կատարելագործման աշխատանքի հետ սերտորեն շաղկապված: Գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացվի էկոնոմիկայի ինտենսիվացման, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի, վառելիքի, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների նվազագույն ծախսումներով վերջնական բարձր արդյունքների ձեռքբերման վրա:

Բազմապատկել մրցության փառավոր ավանդույթները, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում ստեղծել նոր ռեզերվների ստեղծագործական որոնման, ընկերական փոխօգնության, արտադրանքի մատակարարումների առաջադրանքների ու պարտավորությունների կատարման համար բարձր պատասխանատվության, թերությունների, աշխատանքային կարգապահության խախտումների նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտ:

Մրցությունը կոչված է դառնալու կուսակցության XXVI համագումարի որոշումների կենսագործման, մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման նպատակով աշխատավորներին մոբիլիզացնելու գործուն միջոց:

ՍՍՀՄ-ի հոբելյանի նախապատրաստությունը պետք է նպաստի աշխա-



տավորների գաղափարաքաղաքական, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց դասակարգային կոփման հետագա բարելավմանը: Դրա համար հարկավոր է.

համոզիչ կերպով բացահայտել մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հեղափոխական վերակերտիչ մեծ ուժը, այն մեծ ստեղծագործական ավանդը, որ մեր կուսակցությունը, ընկեր Լ. Ի. Բրեժնևը ներդնում են գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի մեջ.

լայնորեն ցույց տալ Սովետական Միության հերոսական բանվոր դասակարգի, կոմունիստական կուսակցության դերը բոլոր աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման, լենինյան ազգային քաղաքականության իրականացման գործում, ազգերի և ազգությունների բազմակողմանի առաջընթացի ու մերձեցման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ասպարեզում.

վառ ու փաստարկված կերպով պրոպագանդել սոցիալիզմի պատմական առավելությունները և նրա նվաճումները սոցիալ-քաղաքական, տնտեսական և ազգային ամենաբարդ պրոբլեմների լուծման գործում, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման՝ ՍՄԿԿ XXVI համագումարի կուրսը: Բազմակողմանիորեն բացահայտել կուսակցության և պետության սոցիալ-տնտեսական քաղաքականության բովանդակությունը, որի նպատակն է մեծացնել յուրաքանչյուր հանրապետության նյութական և հոգևոր պոտենցիալը, այն առավելագույնս օգտագործել ՍՍՀՄ ամբողջ ժողովրդական տնտեսության արդյունավետությունը բարձրացնելու համար և այդ հիման վրա ապահովել սովետական մարդկանց կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ աճը.

խորապես բացահայտել մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորման և զարգացման բնույթն ու առանձնահատկությունները, երկրի բանվորների, գյուղացիների, մտավորականության դաշինքի հետագա ամրապնդման, ազգերի և ազգությունների մերձեցման, անդասակարգ հասարակության գոյավորման ուղիները.

բազմակողմանիորեն պարզաբանել ՍՍՀՄ սահմանադրության, միութենական և ինքնավար հանրապետությունների սահմանադրությունների նշանակությունը ազգային հարաբերությունների բնագավառում, հասարակության կյանքի բոլոր ոլորտներում հետևողական, սոցիալիստական դեմոկրատիզմի ամրապնդման համար.

լայնորեն լուսաբանել միութենական և ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի և օկրուգների նվաճումները, համոզիչ կերպով ցույց տալ, որ միայն սոցիալիստական կարգերը, բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունն են ապահովում նրանց ազատ, բազմակողմանի և դինամիկ զարգացումը.

համոզիչ կերպով բացահայտել ՍՄԿԿ-ի լենինյան արտաքին քաղաքականության խաղաղասիրական, ինտերնացիոնալիստական բնույթը, սովետական ժողովրդի և եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորների, միջազգային բանվոր դասակարգի, զարգացող երկրների ժողովուրդների արմատական շահերի ընդհանրությունը իմպերիալիզմի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարում: Վճռականապես մերկացնել սուվերեն պետությունների ներքին գործերին իմպերիալիզմի միջամտության փաստերը, նրանց հետ սպառնալիքների լեզվով խոսելու, քաղաքական ճնշման, տնտեսական ու ռազմական շանտաժի օգնությամբ իր կամքը պարտադրելու նրա փորձերը.

Նկատի ունենալով, որ նացիոնալիզմը ռեալ սոցիալիզմի դեմ իմպերիալիզմի քայքայիչ գործունեության գլխավոր միջոցներից մեկն է, անհրաժեշտ է հետևողական, հարձակողական պայքար մղել առանձին մարդկանց մեջ նացիոնալիստական նախապաշարումներ բորբոքելու փորձերի դեմ, վճռականապես հանդես գալ ազգային քաղաքականության լենինյան սկզբունքներից ամեն տեսակ շեղումների դեմ: Փաստարկված կերպով մերկացնել մեր երկրի

պատմության, ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականության բուրժուական կեղծարարներին: Անքախորեն, կոնկրետ փաստերով ցույց տալ կապիտալի աշխարհում ազգային ճնշման և անհավասարության անվերանալիությունը, ազգային և ռասայական հակամարտությունների դրսևորումները, իմպերիալիզմի կողմից զարգացող երկրների ժողովուրդներին պարտադրվող հարաբերությունների կողոպտիչ բնույթը.

ուժեղացնել երիտասարդության հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը, պրոպագանդել կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթները, ՍՍՀՄ զինված ուժերի հերոսական մեծագործությունները, յուրաքանչյուր սովետական մարդու մեջ ձևավորել սոցիալիզմի ճշմարտացիության և անպարտելիության համոզվածություն, քաղաքական զգոնություն, հայրենիքը, սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու պատրաստակամություն:

Կոմունիստների պարտքն է անդուլ կերպով ամրապնդել սովետական ժողովրդի միասնությունն ու համախմբվածությունը, աշխատավորների մեջ դաստիարակել սոցիալիստական հայրենիքի համար հպարտության և ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության զգացմունք, ազգամիջյան հաղորդակցման բարձր կուլտուրա, նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհանդուրժողականություն:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, պաշտպանության մինիստրությանը, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին և հասարակական գիտությունների ակադեմիային, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին, թերթերի և հանդեսների խմբագրություններին, ՏԱՍՍ-ին, ՍՍՀՄ հեռուստառադիոպետկոմին, ՍՍՀՄ պետկինոյին, ՍՍՀՄ հրատպետկոմին, հեղինակային իրավունքների համամիութենական գործակալությանը, քաղհրատին, «Պլակատ» հրատարակչությանը, ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանը, ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, ՍՍՀՄ լուսավորության մինիստրությանը, ՍՍՀՄ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեին, ՍՍՀՄ սպորտկոմիտեին, ԴՕՍԱԱՖ-ի Կենտկոմին, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը, ստեղծագործական միություններին՝ սույն որոշման հիման վրա մշակել և իրականացնել ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի նախապատրաստության միջոցառումներ:



ՍՄԿԿ Կենտկոմը երկրի կոմունիստներին, կոմերիտականներին, բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորներին դիմում է կոչով՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության 60-ամյակը դիմավորել ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների իրականացման, երկրի էկոնոմիկայի զարգացման, նրա պաշտպանունակության ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի բարձրացման ասպարեզում ձեռք բերած նոր նվաճումներով: Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ սովետական մարդիկ է՛լ ավելի սերտորեն կհամախմբեն իրենց շարքերը կոմունիստների լենինյան կուսակցության շուրջը, է՛լ ավելի մեծ նախաձեռնություն ու ստեղծագործություն, անձնվիրություն ու համառություն, գիտակցական կարգապահություն հանդես կբերեն մեր երկրում կոմունիզմի կառուցման և ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման համար մղվող պայքարում:

---

# ԸՆԿ. Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԶԻՆԱԹԱՓՄԱՆ ՕԳՏԻՆ ՀԱՆԴԵՍ ԵԿՈՂ ԱՎՍՏՐԱԼԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՆԱՄԱԿԻՆ

Հարգելի բարեկամնե՛ր:

Ես կարդացի ձեր նամակը, որը հասցեագրված է ինձ և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռեյգանին: Ինձ համար մոտ ու հասկանալի է տագնապի ու մտահոգության ձեր զգացումը սպառազինությունների շարունակվող մրցավազքի, ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքի ուժգնացման կապակցությամբ:

Սովետական Միության կուսակցական և պետական ղեկավարությունը, ողջ սովետական ժողովուրդը ելնում են այն բանից, որ ջերմամիջուկային պատերազմի սանձազերծումը կլիներ ամբողջ մարդկությանն աղետով սպառնացող հանցագործություն: Այդ մասին մենք բազմիցս հայտարարել ենք:

Ձեր առաջադրած հարցերի կապակցությամբ կկամենայի ասել հետևյալը՝

1. Դուք խնդրում եք հավաստել երբեք առաջինը միջուկային զենք չգործադրելու պարտավորությունը:

Այդ կապակցությամբ ձեր ուշադրությունն եմ հրավիրում այն բանի վրա, որ Սովետական Միությունը արդեն հայտարարել է, որ ինքը երբեք միջուկային զենք չի գործադրի այն պետությունների դեմ, որոնք հրաժարվում են միջուկային զենքի արտադրությունից ու ձեռքբերումից և իրենց տերիտորիայում չունեն այդպիսի զենք: Մենք պատրաստ ենք նաև պայմանագրային կարգով համապատասխան երաշխիքներ տալ այդպիսի ոչ միջուկային տերություններից յուրաքանչյուրին և մյուս բոլոր միջուկային տերություններին կոչ ենք անում ստանձնել նույնպիսի պարտավորություններ: Ավելին, ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 36-րդ նստաշրջանում հենց Սովետական Միությունը հանդես եկավ կարևոր ու կոնստրուկտիվ նախաձեռնությամբ, որի նպատակն է հասնել այն բանին, որ ոչ ոք և ոչ մի ժամանակ առաջինը չգործադրի միջուկային զենք: Այդ հիման վրա ընդունված դեկլարացիան հանդիսավորությամբ հռչակում է, որ այն պետությունները, որոնք առաջինը կգործադրեն միջուկային զենք, ծանրագույն հանցանք կգործեն ընդդեմ մարդկության: Միայն ԱՄՆ-ը և նրա ռազմաքաղաքական մերձավորագույն դաշնակիցները չպաշտպանեցին ամբողջ աշխարհի ժողովուրդների իղձերին համապատասխանող այդ որոշումը:

2. Ձեր նամակում կոչ է արվում, որպեսզի ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի՝ զինաթափման երկրորդ հատուկ նստաշրջանից առաջ կամ այդ նստաշրջանի ժամանակ ստորագրվեն լուրջ համաձայնագրեր միջուկային սպառազինությունների մրցավազքը սահմանափակելու վերաբերյալ: Մենք, մեր կողմից, հասկանում ենք այդպիսի միջոցառումների ձեռնարկման շտապ լինելը և մեզանից կախված ամեն ինչ կանենք՝ նպաստելու այդ հարցում պայմանավորվածությունների ձեռքբերմանը:

Այդ իմաստով մենք առաջնահերթ խնդիր ենք համարում Եվրոպայում միջին հեռավորության միջուկային զենքի շուրջը Ժնևում վարվող սովետաամերիկյան բանակցություններում արագ և կոնստրուկտիվ արդյունքի հասնելը: Թեև եվրոպական մայրցամաքը հազարավոր կիլոմետրերով հեռու է Ավստրալիայից, մենք կարծում ենք, որ այդ խնդիրը գլոբալ նշանակություն ունի, քանի որ Եվրոպայում միջուկային կոնֆլիկտը անխուսափելիորեն կվերաճեր համաշխարհայինի:

Կարծում եմ, որ անհրաժեշտ է նաև արագացնել ստրատեգիական միջուկային սպառազինությունների սահմանափակման ու կրճատման սովետա-ամերիկյան բանակցությունների վերսկսումը:

Սովետական Միությունը ուզած ժամանակ պատրաստ է դրան, սակայն ամերիկյան կողմը անվերջ հետաձգում է համայն մարդկությանը հուզող այդ պրոբլեմի վերաբերյալ երկխոսությունը: Մենք նաև չափազանց հրատապ ենք համարում քիմիական զենքի արգելման շուրջը սովետա-ամերիկյան բանակցությունների վերսկսումը, որոնք միակողմանի կարգով ընդհատել է ամերիկյան կողմը:

Սովետական Միությունը պատրաստ է ուզած պահին շարունակել նաև ԱՄՆ-ի հետ Հնդկական օվկիանոսի շրջանում ռազմական գործունեությունը սահմանափակելու բանակցությունները, որոնք դարձյալ ընդհատվել են ամերիկյան կողմից և չեն վերսկսվում, չնայած այդ մասին 1979 թվականին Վիեննայում բարձր մակարդակով ձեռք բերված պայմանավորվածությանը: Ուզում եմ ասել, որ մենք մեզ համար ոչ մի խոչընդոտ չենք տեսնում համանման միջոցառումները տարածելու նաև Խաղաղ օվկիանոսի վրա:

Առհասարակ մենք երբեք իդեալական չենք համարել և չենք համարում այն դրությունը, որի դեպքում մեծ տերությունների ռազմական նավատորմները երկար ժամանակով երթևեկում են իրենց ափերից շատ հեռու: Եվ մենք պատրաստ ենք լուծելու այդ պրոբլեմը, բայց, իհարկե, լուծելու հավասարության և միատեսակ անվտանգության պայմաններում:

3. Դուք դնում եք միջուկային զենքի բոլոր փորձարկումները դադարեցնելու անհրաժեշտության հարցը: Պետք է հիշեցնեմ, որ մթնոլորտում, ընդջրյա և տիեզերքում այդ զենքի փորձարկումներ Սովետական Միությունը չի կատարում արդեն գրեթե 20 տարի՝ այն պահից ի վեր, երբ ուժի մեջ մտավ համապատասխան պայմանագիրը: Միջուկային տերություններից միայն Չինաստանը և Ֆրանսիան չեն ստորագրել այն, ընդ որում Չինաստանը շարունակում է միջուկային փորձարկումներ կատարել մթնոլորտում: Մենք պատրաստ ենք ուզած պահին վավերացնել նաև միջուկային զենքի ստորերկրյա փորձարկումները սահմանափակելու վերաբերյալ 1974 թվականի պայմանագիրը: Սակայն վավերացումը ձգձգում է ամերիկյան կողմը:

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա պատրաստ է պայմանավորվելու ոչ միայն միջուկային զենքի բոլոր փորձարկումները լրիվ դադարեցնելու շուրջը, այլև այդ զենքի հետագա արտադրությունը դադարեցնելու, նրա պաշարները կրճատելու, իսկ ապա նաև իսպառ վերացնելու շուրջը:

4. Մենք պատրաստ ենք առանց կանխակալ կարծիքի քննարկելու մյուս կողմի բոլոր առաջարկությունները զինաթափման վերաբերյալ: Կարող եմ ձեզ հավաստիացնել, որ մենք մանրակրկիտ կերպով ուսումնասիրում ենք մյուս կողմի դիրքավորումները ու առաջարկությունները և երբեք դրանք շեմից չենք մերժում: Դրանց գնահատմանը մենք մոտենում ենք մի չափանիշով՝ որչափով են դրանք համապատասխանում պատերազմի կանխման ու խաղաղության ամրապնդման խնդրին և որչափով են համապատասխանում հավասարության ու միատեսակ անվտանգության սկզբունքին:

Սոցիալիզմի երկրները ռազմաստրատեգիական հավասարակշռության են հասել կապիտալիզմի աշխարհի հետ: Այդ հավասարակշռությունը ագրեսիվ ուժերի նկրտումները զսպող գործոն է: Այն սասանելու հաշիվները ձախողման են դատապարտված:

Ռազմական հավասարակշռություն սպառազինությունների որքան կարևորն է ցածր մակարդակներով՝ այսպիսին է մեր կոնստրուկտիվ մոտեցումը միջուկային զինաթափմանը հօգուտ բոլոր ժողովուրդների: Մենք պատրաստ ենք դիմելու միջուկային սպառազինությունների զգալի կրճատման: Բայց այդ բնագավառում հավասարակշռության ամեն մի խախտում հղի կլիներ կայունության խախտմամբ, սպառնալիքի տակ կդներ խաղաղության պահպանումը:

Հաշվի առնելով ձեր նամակում շարադրված նկատառումները, ուզում եմ հատկապես շեշտել՝ մենք ելնում ենք այն վստահությունից, որ բանականությունը կհաղթի, և վերջին հաշվով միջուկային աղետը կկանխվի: Դրան չի կարելի հասնել սոսկ միակողմանի ջանքերով, պահանջվում են աշխարհի բոլոր երկրների և ժողովուրդների ակտիվ գործողությունները:

Ավստրալիայում խաղաղության շարժման բոլոր մասնակիցներին, որոնց թիվը, որքան ինձ հայտնի է, ավելի ու ավելի է մեծանում, մաղթում եմ հաջողություն իրենց ազնիվ գործունեության մեջ՝ հանուն զինաթափման և միջազգային համագործակցության ամրապնդման:

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**

# ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԴԵՄ ԿՈՉ ԱՆՈՂ ԴԻՄՈՒՄԻ ՀԵՂԻՆԱԿ ՃԱՊՈՆԱԿԱՆ ԳՐՈՂՆԵՐԻՆ

Հարգելի պարոնա՛յք:

Միջուկային պատերազմը կանխելու ձեր հուզիչ կոչը չի կարող անտարբեր թողնել: Լիովին կիսում եմ ձեր տագնապը հարաճուն միջուկային սպառնալիքի առթիվ: Ձեզ հետ մեկտեղ վճռականորեն դատապարտում եմ խելահեղ գաղափարները միջուկային զենքի գործադրման թույլատրելիության մասին, թեկուզ և «սահմանափակ» նպատակներով:

Միայն միամիտ, ռեալությունից հեռու կանգնած մարդիկ կարող են կարծել, թե ջերմամիջուկային աղետի բոցը մահաբեր կրակով չի այրի իրենց տունը, եթե նա գտնվում է հրդեհի աղբյուրից հեռու: Ամեն ոք, ում համար թանկ է մեր մոլորակի վրա կյանքի ապագան, պարտավոր է իր ավանդը մուծել միջուկային պատերազմի վտանգի վերացման, խաղաղության ամրապնդման ուղիների որոնման գործում:

Սովետական Միությունում հիշում են ամերիկյան ատոմային ռմբակոծության ենթարկված ճապոնական Հիրոսիմա և Նագասակի քաղաքների ողբերգությունը, ծանոթ են այդ ողբերգության մասին պատմող ճապոնացի արձակագիրների ու բանաստեղծների շատ ստեղծագործություններին, որոնք թարգմանվել են մեր ժողովուրդների լեզուներով: Այդ ժամանակից ի վեր ատոմային զենքից հետո երևան եկավ նաև ջերմամիջուկային զենքը: Գաղտնիք չէ, որ միջուկային էներգիայի կիրառմամբ գործող զենքի նոր տեսակներն առավել հզոր, դժվար երևակայելի ոչնչացնող կարողություններ ունեն:

Բայց, ըստ երևույթին, դեռևս ամենքը չէ, որ հասկացել են ներկայումս ԱՄՆ-ի կողմից ծավալվող հրթիռամիջուկային սպառազինությունների մրցավազքի նոր փուլի լրջությունն ու վտանգավորությունը մարդկության համար:

Այդ իսկ պատճառով ՍՄԿԿ XXVI համագումարն առաջարկեց ստեղծել տարբեր երկրների ականավոր գիտնականների մասնակցությամբ միջազգային հեղինակավոր կոմիտե, որը ողջ աշխարհի ժողովրդական լայն զանգվածների գիտակցությանը հասցներ այն ճշմարտությունը, թե մարդկության համար ինչպիսի կործանարար հետևանքների կհանգեցներ միջուկային պատերազմը, ցուցադրեր միջուկային աղետի կանխման կենսական անհրաժեշտությունը:

Սովետական Միությունը երբեք չի եղել սպառազինությունների մրցավազքի նախաձեռնողը: Մենք չենք, որ առաջինն ստեղծեցինք միջուկային զենքը: Ընդհակառակն: Սովետական Միությունը անդուլ կերպով անում է կոնկրետ և ռեալիստական առաջարկություններ՝ ուղղված սպառազինությունների մրցավազքի դադարեցման, զինաթափման նպատակին: Սովետական Միությունը պատրաստ է վերացնելու իր միջուկային զինանոցը, բայց, իհարկե, միայն այն դեպքում, եթե նույն կերպ վարվեն նաև միջուկային զենք ունեցող մյուս բոլոր պետությունները:

ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի վերջերս ավարտված 36-րդ նստաշրջանում այդ կազմակերպության անդամ երկրների գերակշռող մեծամասնությունը

պաշտպանեց Սովետական Միության առաջարկությունը՝ մարդկության դեմ ուղղված ծանրագույն հանցագործություն հայտարարելու առաջինը միջուկային զենք գործադրելը և քվերակեց նեյտրոնային զենքի արտադրությունն արգելելու վերաբերյալ ՍՍՀՄ-ի նախաձեռնությամբ մտցված բանաձևի օգտին: Սակայն, գտնվեցին պետություններ, դրանց թվում նաև Ճապոնիան, որոնց կառավարությունները դեմ դուրս եկան այդ մարդասիրական առաջարկություններին:

Սովետական Միությունը հանդես եկավ որպես միջուկային զենքի փորձարկումների լրիվ և ընդհանուր արգելման բանակցությունների նախաձեռնող, հաստատակամորեն պահանջում է համապատասխան համաձայնագրի շուտափույթ ստորագրում: Մեր երկիրը հայտարարել է իր պատրաստակամությունը անհապաղ բանակցություններ սկսելու միջուկային զենք ունեցող բոլոր պետությունների և այլ շահագրգռված երկրների մասնակցությամբ, նպատակ ունենալով պայմանավորվածության հասնել միջուկային զենքի բոլոր տեսակների արտադրությունը դադարեցնելու, դրա պաշարները սահմանափակելու, իսկ ապա լիովին վերացնելու շուրջը:

Միաժամանակ մենք առաջարկում ենք կոնվենցիա կնքել ոչ-միջուկային պետությունների անվտանգության երաշխիքների ամրապնդման վերաբերյալ և համաձայնագիր՝ միջուկային զենք չտեղաբաշխելու այն պետությունների տերիտորիայում, որտեղ ներկայումս այդպիսի զենք չկա: Սովետական Միությունը ամենայն որոշակիությամբ հայտարարում է, որ երբեք միջուկային զենք չի գործադրի այն պետությունների դեմ, որոնք հրաժարվում են այդ զենքի արտադրությունից ու ձեռքբերումից և այդպիսին չունեն իրենց տերիտորիայում: Ավելին, Սովետական Միությունը պատրաստ է դրա վերաբերյալ նաև հատուկ համաձայնագիր կնքել ամեն մի ոչ-միջուկային պետության հետ: Մենք խոչընդոտներ չենք տեսնում այն բանի համար, որ այդ հարցի վերաբերյալ կարծիքների փոխանակում սկսենք նաև Ճապոնիայի հետ՝ ինչպես Հեռավոր Արևելքում վստահության միջոցների շուրջը բանակցություններ վարելու՝ ՍՄԿԿ XXVI համագումարում արված առաջարկության շրջանակներում, այնպես էլ երկու կողմերի համար ընդունելի ամեն մի այլ ձևով:

Սովետական Միությունը հաստատակամորեն ձգտում է գործնական արդյունքների հասնել միջուկային սպառազինությունների մրցավազքը սանձահարելու գործում: Եվ մեր մեղքը չէ, որ այդ ասպարեզում արվածը դեռևս խիստ անբավարար է:

Ներկայումս բարդացած միջազգային իրադրության մեջ, երբ ԱՄՆ-ը մշակում և արտադրության մեջ է ներդնում մասսայական ոչնչացման զենքի որակապես նոր տեսակներ, ձգձգում ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման բանակցությունների վերսկսումը, օբստրուկցիոնիստական դիրք գրավում միջազգային կլիմայի առողջացմանը նպատակամղված սովետական առաջարկությունների վերաբերմամբ, հատկապես կարևոր նշանակություն է ստանում մոլորակի բոլոր խաղաղասեր ուժերի գործողությունների ակտիվացումը: Այդ կապակցությամբ չեմ կարող չպաշտպանել ձեր կոչը՝ անհապաղ գործողությունների դիմելու ի պաշտպանություն խաղաղության:

Չափազանց արժեքավոր է, որ խաղաղության ճապոնացի կողմնակիցները լի են վճռականությամբ՝ իրենց ավանդը մուծելու այդ ազնիվ գործի մեջ, վճռականորեն հանդես են գալիս իրենց երկրի տերիտորիայում ինչպես սեփական, այնպես էլ օտարերկրյա միջուկային զենք տեղաբաշխելու դեմ:

Ուզում եմ ձեզ հավաստիացնել, որ Սովետական Միությունը եղել է, կա և միշտ կմնա միջուկային աղետի կանխման, ողջ աշխարհի խաղաղության համար, լարվածության թուլացման և զինաթափման համար պայքարող վճռական ու հետևողական մարտիկ:

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**

---




Ժողովուրդների եղբայրական ընտանիքում

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ

**Է. Վ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ միասնության, համախմբվածության հետագա ամրապնդումը հասարակական հարաբերությունների ողջ համակարգի զարգացման գլխավոր միտումն է, մեր երկրում կառուցված զարգացած սոցիալիստական հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր կյանքի առաջատար և ամենընդհանուր օրինաչափությունը: Հասարակության համախմբվածությունը, միասնությունը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— սոցիալիզմի եզակի նվաճումն է, մեր անգնահատելի, անհաղթահարելի ուժը: Գաղափարաքաղաքական և սոցիալական համախմբվածությունից զատ այն ներառում է նաև ազգերի ու ազգությունների համախմբվածությունը, որն արտահայտվում է սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի սերտ միահյուսմամբ, միաձուլմամբ, միասնական համամիութենական ժողովրդատնտեսական համակարգի ստեղծումով, ազգային կուլտուրաների բարեբեր փոխներթափանցումով: ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանում սովետական ժողովուրդների ընտանիքը դարձել է առավել համախմբված, ապրում է ավելի համերաշխ, որ սովետական ազգերի միասնությունն այսօր ամուր է, ինչպես երբեք:*

*Սովետական հասարակության ինտերնացիոնալ միասնության ամրապնդումն օբյեկտիվ, բայց ամենևին էլ ոչ տարերային պրոցես է, որում կարևոր և անընդմեջ աճող դեր է խաղում ՍՄԿԿ և սովետական պետության լենինյան ինտերնացիոնալիստական քաղաքականությունը: «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է.* «ՍՍՀՄ կազմավորումն իր կազմով բազմազգ, գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ, կազմակերպական կառուցվածքով, գործունեության սկզբունքներով խորապես ինտերնացիոնալիստական՝ բոլշևիկների լենինյան կուսակցության մեծագույն ծառայությունն է»: *ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացմանն ու մերձեցմանը միտող այդ քաղաքականության էությունը, ինչպես ՍՄԿԿ XXVI համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը, յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալի մեծացումն է և դրա հետ մեկտեղ ողջ երկրի ներդաշնակ զարգացման համար այն առավելագույնս օգտագործելը (տե՛ս*

ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 89)։ Այդ կուրսի իրականացման գործում հատուկ դեր ունի սովետական միութենական և ազգային պետականությունը։ ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց սովետական ազգային պետականության, դրա կազմակերպման և գործառնության ձևերում ինտերնացիոնալիստական էության առավել լրիվ և խոր արտացոլման անհրաժեշտությունը։

Սովետական ազգային պետականությունն ինտերնացիոնալիստական է իր դասակարգային բնույթով և սոցիալիստական էությամբ։ Այն, ինչպես և սովետական պետականությունն ամբողջությամբ վերցրած, իրենից ներկայացնում է բանվոր դասակարգի, բոլոր ազգությունների աշխատավորների արմատական շահերի ու նպատակների միասնությունն ու անտրոհելիությունը մարմնավորող ու պաշտպանող քաղաքական իշխանություն, պետականություն։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «սովետական հանրապետությունը միավորում է բոլոր ազգերի աշխատավորներին և պաշտպանում է անխտիր բոլոր ազգերի աշխատավորների շահերը» (ԵԼԺ, հ. 36, էջ 655)։

Սովետական ազգային պետականության ինտերնացիոնալիզմը բնորոշվում է իր տնտեսական, սոցիալական ու գաղափարախոսական հիմունքների ինտերնացիոնալիստական էությամբ։ Դրանք են՝ արտադրամիջոցների նկատմամբ սոցիալիստական սեփականությունը. բանվորների, գյուղացիների և մտավորականության անխախտ դաշինքը՝ բանվոր դասակարգի առաջատար դերի պայմաններում. ժողովրդական դեպուտատների սովետները. մարքսիզմ-լենինիզմը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները, որոնք «արթնացնում են աշխատավորների դասակարգային գիտակցությունը և ամրակուռ միություն են կազմակերպում նրանցից» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 35, էջ 340)։

Սովետական պետականության ինտերնացիոնալիզմի բարձրագույն քաղաքական մարմնավորումը ՍՄԿԿ-ի՝ և՛ իր կազմով, և՛ իր կառուցվածքով, և՛ իր գաղափարախոսությամբ, և՛ իր քաղաքականությամբ ու գործունեության բնույթով ինտերնացիոնալիստական կուսակցության, ղեկավար և ուղղություն տվող դերն է։ ՍՄԿԿ-ն միավորում է մեր երկրի ավելի քան 100 ազգերի, ազգությունների և էթնիկական խմբերի առաջավոր ներկայացուցիչներին։ Ցանկացած ազգության կոմունիստները, լինելով միասնական կուսակցության անդամներ, ունեն միատեսակ իրավունքներ ու պարտականություններ և հավասարապես պատասխանատու են երկրի բախտի համար։ Կուսակցության բոլոր ազգային ջոկատները միաձուլվում են Սովետական Միության կոմունիստական կուսակցության մեջ, ինչպես գետերի ջրերն են միախառնվում հզոր օվկիանոսում։ ՍՄԿԿ-ի ղեկավար դերը գլխավոր երաշխիքն է կյանքում պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների իրագործման, սովետական բազմազգ պետության միասնության հետագա անշեղ ամրապնդման ասպարեզում։

Հոկտեմբերի հաղթանակից հետո սովետական սոցիալիստական պետականության ինտերնացիոնալիստական բնույթը հանդիսացավ միասնական միութենական պետության մեջ ֆեդերատիվ սկզբունքով միավորվելու բոլոր սովետական հանրապետությունների բնական ձգտման կարևորագույն ելակետերից մեկը։ 1922 թ. դեկտեմբերի 30-ին ՍՍՀՄ սովետների I համագումարում ընդունված ՍՍՀ Միության կազմավորման մասին դեկլարացիայում ասված է, որ իր դասակարգային բնույթով ինտերնացիոնալ սովետական իշխանության բուն կառուցվածքը սովետական հանրապետությունների աշխատավոր զանգվածներին մղում է մեկ սոցիալիստական ընտանիքում միավորվելուն։ Արդի պայմաններում դա սովետական հասարակության ինտերնացիոնալ միասնության անշեղ ամրապնդման կարևորագույն գործոններից մեկն է, և, ինչպես շեշտվում է ՍՄԿԿ Կենտկոմի վերոհիշյալ որոշման մեջ, ներկայումս էլ «շարունակվում է սովետական հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումը, որը տանում է դեպի հասուն սոցիալիզմի պատ-



մական շրջանակներում հասարակության՝ գլխավորում և հիմնականում անդասակարգ կառուցվածքի հաստատմանը»։

Սովետական՝ ինչպես միութենական, այնպես էլ ազգային, պետականության ինտերնացիոնալիզմը բազմազանորեն դրսևորվեց սոցիալական ու ազգային ճնշման բոլոր ձևերի հետևողական վերացմամբ. ազգերի ինքնորոշման սկզբունքի անշեղ իրականացմամբ՝ հանուն նրանց ազատ զարգացման և առավել սերտ մերձեցման ու միավորման. բոլոր ազգությունների լիակատար իրավահավասարությամբ, բոլոր քաղաքացիների իրավունքների և պարտականությունների հավասարությամբ՝ նրանց ազգային և ռասայական պատկանելությունից անկախ. միասնական բազմազգ պետության մեջ ժողովուրդների միավորման կամավորությամբ. ժողովուրդների փաստական անհավասարության վերացմամբ ու բոլոր ազգերի և ազգությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի համակողմանի ծաղկումն ապահովելով. ընդհանուր, ինտերնացիոնալ շահերի առաջնայնության հիման վրա ողջ բազմազգ պետության ընդհանուր շահերն ու յուրաքանչյուր ազգի, յուրաքանչյուր հանրապետության առանձնահատուկ շահերն ուշադիր կերպով հաշվի առնելով և ներդաշնակորեն համադրելով. սովետական բազմազգ պետության կազմակերպման և գործառնության ասպարեզում դեմոկրատական ցենտրալիզմի և սոցիալիստական ֆեդերալիզմի սկզբունքների իրականացմամբ և այլն։

Սովետական սոցիալիստական պետականության ինտերնացիոնալիզմը չի նշանակում, թե նա ապազգային է։ Սոցիալիզմի պայմաններում ինտերնացիոնալն ու ազգայինը չեն հակադրվում միմյանց նաև պետականության ոլորտում։ Սովետական սոցիալիստական պետականության ինտերնացիոնալիզմը տարբեր ժողովուրդների պետականության կազմակերպման, գործառնության և զարգացման խնդրում որպես անհրաժեշտ պահանջ ներառնում է ազգային-առանձնահատուկի, ազգային-յուրօրինակի հաշվառումը։ Այդ իսկ պատճառով սովետական ազգային պետականությունն իրենից ներկայացնում է ինտերնացիոնալի և ազգայինի մի միասնություն՝ ինտերնացիոնալի առաջատար դերի առկայությամբ։ Որոշ իմաստով կարելի է ասել, որ դա ինտերնացիոնալիստական բովանդակության և ազգային ձևի միասնություն է։

ՍՍՀՄ ժողովուրդների պետականությունում ազգայինն արտահայտվում է նրանում, որ 1) սովետական ազգային պետականությունը կառուցվում է մարզերի հիման վրա, մարզեր, որոնք տարբերվում են տվյալ տերիտորիայում հոծ կերպով ապրող բնակչության ազգային կազմի յուրահատկությամբ. 2) պետական մարմինները կազմվում են գերազանցապես բնիկ ազգության կամ ազգությունների ներկայացուցիչներից, իսկ այն դեպքերում, երբ այդ ազգությունները բնակչության մեծամասնությունը չեն կազմում, ապահովվում է նրանց լայն ներկայացուցչությունն այդ մարմիններում. 3) ազգային մարզերի իշխանության և կառավարման մարմինների գործավարությունն ու ողջ աշխատանքը, որպես կանոն, իրականացվում են համապատասխան ազգային լեզուներով, տվյալ մարզերի բնակչության մեծամասնության լեզուներով կամ էլ, հատկապես բազմազգ մարզերում, միաժամանակ երկու կամ մի քանի լեզուներով. 4) ազգային մարզերի իշխանության և կառավարման մարմինների կառուցվածքն ունի որոշ առանձնահատկություն. 5) հրատարակվում են հատուկ օրենսդրական ակտեր, որոնք, սահմանում են համապատասխան ազգային պետությունների հատուկ քաղաքական- իրավական (միութենական և ինքնավար հանրապետությունների սահմանադրությունները) և ազգային-պետական գոյացումների (օրենք ինքնավար մարզի մասին, օրենք ինքնավար օկրուգների մասին) դրությունը, արտացոլում դրանց ազգային և այլ յուրօրինակությունները. 6) ընդհանուր միութենական օրենքները (այդ թվում նաև հասարակական կյանքի տարբեր ոլորտներում կիրառվող ընդհանուր միութենական օրենսդրության հիմունքները) և Միության այլ պետական ակտեր ունեն յուրահատուկ կիրառում՝ հաշվի առնելով ազգային մարզերի առանձնահատկությունները. 7) վե-

ջոցներով ծածկում էր բյուջեի ծախսումների բաժնի 40 տոկոսից պակաս մասը (տե՛ս В. И. Ленин, КПСС о Советском многонациональном государстве. М., Политиздат, 1981, стр. 321—322)։

Սոցիալիստական շինարարության ընթացքում սովետական պետությունը հետևողականորեն ապահովում էր հետամնաց ազգային ծայրամասերի էկոնոմիկայի և կուլտուրայի աճի առավել արագացված տեմպեր։ Եթե ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ում 1913—1979 թթ. արդյունաբերական արտադրանքն աճել է 157 անգամ, ՌՍՖՍՀ-ում՝ 155, Ուկրաինայում՝ 102 անգամ, ապա Բելոռուսիայում՝ 221, Ղազախստանում՝ 238, Մոլդավիայում՝ 281, Կիրգիզիայում՝ 344, Հայաստանում՝ 362 անգամ (տե՛ս СССР в цифрах в 1979 г., М., «Статистика», 1980, стр. 104)։ Հոկտեմբերյան առաջին տարիներին շատ ազգային շրջաններում բնիկ ազգություններին պատկանող գրագետ մարդիկ հատ ու կենտ էին, ներկայումս ազգային հանրապետությունները վերածվել են ո՛չ միայն համատարած գրագիտության, այլև բարձր սոցիալիստական կուլտուրայի շրջանների։ Այսպես, ՍՍՀՄ բնակչության 1979 թ. ընդհանուր մարդահամարի տվյալներով զբաղված բնակչության շրջանում բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն ունեն. ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ում՝ 80,5 տոկոսը, Տաջիկստանում՝ 77, Կիրգիզիայում՝ 80,4, Ղազախստանում՝ 80,7, Թուրքմենիայում՝ 82,3, Ադրբեջանում՝ 83,2, Ուզբեկստանում՝ 84,8, Վրաստանում՝ 85,6, Հայաստանում՝ 86,8 տոկոսը (տե՛ս «Вестник статистики», 1980, № 2, стр. 23—24)։

ՍՍՀՄ ժողովուրդների փաստական հավասարության հասնելն ու ծաղկումը սովետական պետականության ինտերնացիոնալիստական էության ամենավառ դրսևորումներից է։ ՍՍՀ Միության մեջ սովետական հանրապետությունների միավորումը, նշվում է ՍՍՀՄ սահմանադրությունում, բազմապատկեց երկրի ժողովուրդների ուժերն ու հնարավորությունները սոցիալիզմի շինարարության գործում։ Եղբայրական միասնության մեջ անասելի լիակատարությամբ բացահայտվեցին բոլոր ազգերի և ազգությունների ստեղծարար եռանդը, ընդունակություններն ու տաղանդը։ Այժմ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, ազգային հանրապետությունները տնտեսական և կուլտուրական զարգացման շատ կարևոր ցուցանիշներով հաճախ էապես գերազանցում են միջին միութենական մակարդակը և ավելի ու ավելի մեծ ներդրում են անում մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի առաջընթացի գործում։ Այսպես, միջինասիական հանրապետություններում, ուր մինչև Հոկտեմբերը երկրագործին ծանոթ էր միայն հարկադիր ձեռքի աշխատանքը, վարելահողի 100 հեկտարին ընկնող էներգահագեցվածությունն այժմ կրկնակի գերազանցում է միջին միութենական ցուցանիշները։

ՍՍՀՄ պատմական փորձը պերճախոս կերպով վկայում է, որ միայն սոցիալիզմն ու նրա պետականությունն են ժողովուրդների առջև բացում տնտեսական և այլ հետամնացությունն արագորեն հաղթահարելու և արդյունաբերականորեն բարձր զարգացած առաջավոր սոցիալիստական ազգերի վերածվելու ուղիները։ Իսկ դա բոլոր ազգերի ու ազգությունների հետագա համախմբման, երկրի ինտերնացիոնալ միասնության ամրապնդման կայուն հիմքն է։

Արդի փուլում սովետական պետականության ինտերնացիոնալիզմը նորովի է դրսևորվում։ Այդ մասին ակներևաբար կարելի է դատել նույնիսկ հանրապետությունների զարգացման հասունացած խնդիրների լուծմանը, ՍՍՀ Միության ամրապնդմանն ուղղված այն հարցերի պարզ թվարկումով, որոնց վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմն ու սովետական կառավարությունը որոշումներ են կայացրել ՍՄԿԿ XXV և XXVI համագումարների միջև ընկած ժամանակահատվածում։

Դրանցից են թե՛ ՌՍՖՍՀ-ի ինքնավար օկրուգների մասին նոր օրենքը, թե՛



միջինասիական հանրապետություններում ոռոգման սիստեմների ընդլայնումը, թե՛ Ծայրագույն Հյուսիսի շրջաններում եղջերվաբուծության ու Կիրգիզիայում ոչխարաբուծության զարգացումը, թե՛ Սևանա լճի ռեսուրսների պահպանումը, թե՛ Աբխազիայի, Տուվայի, Բուրյաթիայի, Հյուսիսի ժողովուրդների բնակության շրջանների էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացումը և բազմաթիվ այլ հարցեր։

ՍՄԿԿ և սովետական պետության քաղաքականության ինտերնացիոնալիզմն արդի փուլում հատկապես վառ կերպով դրսևորվում է բոլոր հանրապետությունների համատեղ ջանքերով սեղմ ժամկետներում ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտու զարգացման բարդ ու անհետաձգելի խնդրի լուծման հարցում։ Ժամանակին ռուս ժողովուրդը, ռուս բանվոր դասակարգը վճռական դեր խաղացին ազգային ծայրամասերի զարգացման, Թուրքսիբի, Ուրալ-Կուզբասի կառուցման, խոպանի յուրացման, Տաշքենդի վերականգնման գործում։ Այսօր իր ինտերնացիոնալիստական սխրանքի համար ռուս ժողովրդին հավերժ երախտապարտ մեր երկրի եղբայրական ժողովուրդներն իրենց լուման են ներդնում և ՍՄԿԿ XXVI համագումարի կոչով ավելին կներդնեն այդ համաժողովրդական խնդրի լուծման գործում։ Կուսակցության կոչին ի պատասխան, մի շարք միութենական հանրապետություններ հանդես եկան ՍՄԿԿ Կենտկոմի հավանությանն արժանացած վսեմ ինտերնացիոնալիստական նախաձեռնությամբ, որն ուղղված էր ոչ սևահողային գոտուն օգնությունն ուժեղացնելուն։ Դա մեր երկրի ազգային հանրապետությունների միջև իրոք եղբայրական ինտերնացիոնալիստական հարաբերությունների նոր, վառ դրսևորում է։

ՍՄԿԿ XXVI համագումարը կանխորոշեց զարգացած սոցիալիզմի պայմաններում սովետական ազգային պետականության հետագա կատարելագործման ուղիներն ու հեռանկարները։ Այն նշեց, որ մեր երկրի ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբման ասպարեզում ակնառու հասումները չեն նշանակում, թե ազգային հարաբերությունների ոլորտում բոլոր հարցերն արդեն լուծված են։ «Այնպիսի խոշոր բազմազգ պետության զարգացման դինամիկան, ինչպիսին մերն է,— համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— քիչ պրոբլեմներ չի ծնում, որոնք պահանջում են կուսակցության զգայուն վերաբերմունքը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 91)։ Դրանց թվին է դասվում նաև սովետական ազգային պետականության ձևերի կատարելագործման պրոբլեմը՝ կապված հանրապետությունների բնակչության բազմազգության աճի հետ։

Այս խնդրի կարևորությունն ու այժմեականությունը նախ և առաջ պայմանավորված է այն բանով, որ կոմունիստական շինարարության ընթացքում օրինաչափորեն մեծանում է ժողովրդի ազգամիջյան, հանրապետությունից հանրապետություն տեղաշարժը։ Դա պայմանավորված է երկրի արտադրաուժերի տեղաբաշխման գործում եղած խոշոր փոփոխություններով, նոր, հատկապես արևելյան և հյուսիսային նոսր բնակեցված շրջանների ինտենսիվ յուրացմամբ, բոլոր հանրապետությունների համատեղ ջանքերով խոշոր ընդհանուր միութենական ժողովրդատնտեսական պրոբլեմների (օրինակ, խոպանի յուրացումը, ԲԱՄ-ի շինարարությունը, ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտու զարգացումը) լուծմամբ, հանրապետությունների միջև աշխատանքի սոցիալիստական բաժանման խորացմամբ ու դրանց տնտեսության մասնագիտացմամբ, տրանսպորտի սիստեմի զարգացմամբ և այլն։ Հատկանշական է, որ 9 տարվա ընթացքում (1970—1979 թթ.) Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջանների բնակչության թիվը մեծացավ 11 տոկոսով, այդ թվում. Յակուտական ԻՍՍՀ-ում՝ 26, Տյումենի մարզում՝ 34, Մագադանի և Կամչատկայի մարզերում՝ 32 տոկոսով, այն դեպքում, երբ ՌՍՖՍՀ բնակչությունն ամբողջությամբ վերցրած աճել է 6 տոկոսով։ Հետաքրքրական է նաև, որ ՌՍՖՍՀ Հյուսիսում և Արևելքում տեղա-

բաշխված 10 ինքնավար օկրուգների բնակչության թիվը միևնույն ժամանակահատվածում մեծացել է 38 տոկոսով (տե՛ս «Вестник статистики», 1980, № 3, стр. 4—5)։ Մատնանշելով, որ Միջին Ասիայում և Կովկասի մի շարք շրջաններում, հատկապես գյուղում, կա բանվորական ուժի ավելցուկ, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում խնդիր դրեց «այդ վայրերի բնակչությանն ավելի ակտիվորեն ներգրավել երկրի նոր տերիտորիաների յուրացման գործում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 88)։

Սովետական հանրապետությունների բնակչության կազմի բազմազգության մասին է խոսում այն փաստը, որ 15 միութենական հանրապետություններից տասում 1979 թ. սկզբին ոչ բնիկ ազգությունների ներկայացուցիչները կազմում էին տվյալ հանրապետության ողջ բնակչության քառորդից ավելին, այդ թվում երկու հանրապետությունում՝ Ղազախստանում և Կիրգիզիայում, նույնիսկ կեսից ավելին։ Ինչ վերաբերում է 20 ինքնավար հանրապետություններին, ապա դրանց ճնշող մեծամասնությունում ոչ բնիկները կազմում են համապատասխան հանրապետության ամբողջ բնակչության կեսից ավելին։ Ահա երկրի զանազան շրջաններից մի քանի առավել ցցուն օրինակներ։ Ղազախստանում ղազախները կազմել են 36 տոկոս, ռուսները՝ 40,8, ուկրաինացիները՝ 6,1, թաթարները՝ 2,1, ուզբեկները՝ 1,8, բելոռուսները՝ 1,2, ույգուրները՝ 1, կորեացիները՝ 0,6, ադրբեջանցիները՝ 0,5, դունգանները՝ 0,2, այլ ազգությունների ներկայացուցիչները՝ 9,7 տոկոս։ Վրաստանում վրացիները կազմել են 68,8 տոկոս, օսերը՝ 3,2, աբխազները՝ 1,7, հայերը՝ 9, ռուսները՝7,4, ադրբեջանցիները՝ 5,1, հույները՝ 1,9, ուկրաինացիները՝ 0,9, այլ ազգությունների ներկայացուցիչները՝ 2 տոկոս։ Լատվիայում լատիշները կազմել են 53,7 տոկոս, ռուսները՝ 32,8, բելոռուսները՝ 4,5, ուկրաինացիները՝ 2,7, լեհերը՝ 2,5, լիտվացիները՝ 1,5, հրեաները՝ 1,1, այլ ազգությունների ներկայացուցիչները՝ 1,2 տոկոս։ Կիրգիզիայում կիրգիզները կազմել են 47,9 տոկոս, ռուսները՝ 25,9, ուզբեկները՝ 12,1, ուկրաինացիները՝ 3,1, թաթարները՝ 2, ույգուրները՝ 0,8, ղազախները՝ 0,8, տաջիկները՝ 0,7, այլ ազգությունների ներկայացուցիչները՝ 6,7 տոկոս (տե՛ս Население СССР. М., Политиздат, 1980, стр. 28—30).

Սովետական ազգային հանրապետությունների բնակչության բազմազգության աճը, մի շարք հանրապետություններում ոչ բնիկ ազգությունների քաղաքացիների թվի զգալի ավելացումը ողջ հասակով մեկ առաջադրեցին նրանց յուրահատուկ շահերն ու պահանջները առավել լիովին ու համակողմանիորեն հաշվի առնելու և ապահովելու պրոբլեմը, այդ թվում և համաժողովրդական սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման հիման վրա հանրապետությունների համապատասխան կուսակցական և պետական մարմիններում նրանց ներկայացուցչությունն ընդլայնելու միջոցով։

Այս կապակցությամբ ՍՄԿԿ XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սովետական հանրապետությունների բնակչության կազմը բազմազգ է։ Եվ բնական է, որ բոլոր ազգերը դրանց կուսակցական և պետական մարմիններում պատշաճ ներկայացուցչության իրավունք ունեն։ Հասկանալի է՝ խստիվ հաշվի առնելով յուրաքանչյուր մարդու գործնական ու գաղափարաքաղաքական հատկությունները։

Վերջին տարիներս մի շարք հանրապետություններում զգալիորեն ավելացել է ոչ բնիկ ազգությունների քաղաքացիների թիվը։ Նրանք ունեն իրենց յուրահատուկ պահանջները լեզվի, կուլտուրայի և կենցաղի բնագավառներում։ Հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմներն ու մարզկոմները պետք է ավելի խորամուխ լինեն նման հարցերում, ժամանակին առաջարկեն դրանց լուծման ուղիները» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 92)։

Սովետական սոցիալիստական դեմոկրատիան ապահովում է երկրի բազմաթիվ ազգությունների լայն ներկայացուցչությունը իշխանության ու կառավարման բարձրագույն և տեղական մարմիններում։ Այսպես, 1979 թ. ընտրված ՍՍՀՄ Գերագույն սովետի կազմում կան 61 ազգության դեպուտատներ, այդ



թվում Միության սովետի կազմում՝ 41 ազգության, իսկ ազգությունների սովետում՝ 57 ազգության (տե՛ս «Правда», 19 апреля 1979 г.)։ 1980 թ. միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետներում ընտրված են 71 ազգության դեպուտատներ, այդ թվում միութենական հանրապետությունների գերագույն սովետներում՝ 56 ազգության, իսկ ինքնավար հանրապետությունների գերագույն սովետներում՝ 52 ազգության (տե՛ս Итоги выборов и состав депутатов Верховных Советов союзных и автономных республик 1980 г., Статистический сборник, М., 1980, стр. 21)։ Նույն տարում ժողովրդական դեպուտատների բոլոր տեղական սովետներում ընտրվել են ավելի քան 100 ազգությունների դեպուտատներ (տե՛ս նույն տեղը, стр. 32—33)։

Իշխանության հանրապետական և տեղական մարմինների բազմազգ կազմի մասին են վկայում հետևյալ տվյալները. ՌՍՖՍՀ Գերագույն սովետն իր կազմում ունի 42 ազգության դեպուտատներ, ՈՒՍՍՀ-ինը՝ 10, ԲՍՍՀ-ինը՝ 6, Ուզբեկական ՍՍՀ-ինը՝ 19, Ղազախական ՍՍՀ-ինը՝ 13, Վրացական ՍՍՀ-ինը՝ 11, Ադրբեջանական ՍՍՀ-ինը՝ 7, Լիտվական ՍՍՀ-ինը՝ 9, Մոլդավական ՍՍՀ-ինը՝ 7, Լատվիական ՍՍՀ-ինը՝ 7, Կիրգիզական ՍՍՀ-ինը՝ 11, Տաջիկական ՍՍՀ-ինը՝ 12, Հայկական ՍՍՀ-ինը՝ 6, Թուրքմենական ՍՍՀ-ինը՝ 12, Էստոնական ՍՍՀ-ինը՝ 6 ազգության դեպուտատներ։ Առավել լայն է տարբեր ազգությունների ներկայացուցչությունը իշխանության տեղական մարմիններում։ ՌՍՖՍՀ ժողովրդական դեպուտատների տեղական սովետների կազմում կան ավելի քան 100 ազգությունների դեպուտատներ, Ուկրաինայում՝ 62, Բելոռուսիայում՝ 39, Ուզբեկստանում՝ 47, Ղազախստանում՝ 65, Վրաստանում՝ 36, Ադրբեջանում՝ 39, Լիտվայում՝ 24, Մոլդավիայում՝ 34, Լատվիայում՝ 26, Կիրգիզիայում՝ 48, Տաջիկստանում՝ 36, Հայաստանում՝ 7, Թուրքմենիայում՝ 41, Էստոնիայում՝ 23 ազգությունների դեպուտատներ։ ՌՍՖՍՀ 10 ինքնավար օկրուգների ժողովրդական դեպուտատների սովետների կազմում ընտրված են 37 ազգության ներկայացուցիչներ (տե՛ս «Политическое самообразование», 1981, № 1, стр. 24. М. И. Куличенко. Расцвет и сближение наций в СССР. М., «Мысль», 1981, стр. 353):

Սովետական ազգային պետականության ինտերնացիոնալիզմի խորությունն արտահայտվում է այն բանում, որ միութենական հանրապետությունների գերագույն սովետներում հաճախ ներկայացված են նույնիսկ այնպիսի ազգություններ, որոնք տվյալ հանրապետությունում կազմում են բնակչության տասներորդական և նույնիսկ հարյուրերորդական տոկոսը։ Իսկ ինչ վերաբերում է ժողովրդական դեպուտատների տեղական սովետներին, ապա նրանցում գործնականում ներկայացված են երկրի բոլոր ազգությունները։ Այսպես, վեպսերը, որոնց թիվը կազմում է 8 հազար մարդ, ներկայացված են միութենական հանրապետության գերագույն սովետի մեկ դեպուտատով, ինքնավար հանրապետությունների 2 դեպուտատով և տեղական սովետների 89 դեպուտատով։ Էվենների թիվը 30 հազար մարդու էլ չի հասնում, իսկ նրանց մեջ կան միութենական հանրապետության 2 դեպուտատ, ինքնավար հանրապետության մեկ և տեղական սովետների 839 դեպուտատ (տե՛ս «Вестник статистики», 1980, № 7, стр. 43. Итоги выборов и состав депутатов Верховных Советов союзных и автономных республик 1980 г., стр. 21. Итоги выборов и состав депутатов местных Советов народных депутатов 1980 г., стр. 32):

Վիճակագրական տվյալները համոզիչ կերպով վկայում են, որ սովետական դեմոկրատիայի պայմաններում իրենց ազգային պետությունը կամ ազգային-պետական գոյացումներն ունեցող, բնակչությամբ համեմատաբար փոքրաթիվ ազգությունների ներկայացուցիչների բաժինը սովետների դեպուտատների մեջ, որպես կանոն, զգալիորեն մեծ է, քան երկրի բնակչության կազմում նրանց ունեցած բաժինը։ Սա լիովին հերքում է արևմտյան «սովետագետների» կեղծարարական պնդումները, իբր, ՍՍՀՄ-ում նկատվող ռուս ժողո-

վըրդի կարծեցյալ «քաղաքական տիրապետության» և ոչ ռուսների, հատկապես փոքր ժողովուրդների, «իրավունքների ու շահերի» ճնշման վերաբերյալ։

ՍՍՀՄ կազմավորման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է. «ՍՍՀՄ փորձով ապացուցված է՝ որքան լայնորեն է զարգանում սոցիալիստական դեմոկրատիան, որքան դեմոկրատական է երկրի կյանքը, այնքան մեծ է բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների փոխադարձ կամավոր ձգողության ուժը։ Ի տարբերություն բուրժուական դեմոկրատիայի, որը սոսկ ձևականորեն է հռչակում ազգերի իրավահավասարություն, սոցիալիստական դեմոկրատիան հուսալիորեն պաշտպանում է աշխատավորների սոցիալական և ազգային շահերն ու իրավունքները»։

Զարգացած սոցիալիստական հասարակության և համաժողովրդական սոցիալիստական պետականության պայմաններում սովետական ազգային-պետական ձևերի ինտերնացիոնալիզմն ավելի է հարստանում և առավել լրիվ մարմնավորվում։ Ամենից առաջ նոր, առավել խոր ինտերնացիոնալիստական, ընդհանուր սովետական (միութենական) բովանդակությամբ են հագենում ՍՍՀՄ ժողովուրդների պետականության ազգային ձևերը։ Դրանում է արտահայտվում կոմունիստական շինարարության ընթացքում սովետական ազգերի ու ազգությունների կյանքի բոլոր կողմերի առավել ընդհանուր ինտերնացիոնալացման անքակտելի բաղադրիչ մասը հանդիսացող սովետական ազգային պետականության հետագա ինտերնացիոնալացման օրինաչափ պրոցեսը։

Վերջին հաշվով, ինչպես ազգերի ու ազգությունների ողջ կենսաձևի, այնպես էլ սովետական ազգային պետականության հետագա ինտերնացիոնալացման համար որպես վճռորոշ գործոն են ծառայում արտադրության հանրայնացման մակարդակի աճը, արտադրաուժերի զարգացմամբ ազգային շրջանակները շարունակ առավելապես գերազանցելը, արտադրական կապերով հանրապետական մասշտաբներից առավել չափով դուրս գալը, ընդհանուր միութենական էկոնոմիկայի՝ որպես երկրի տերիտորիայում հասարակական արտադրության, բաշխման և փոխանակման բոլոր օղակներն ընդգրկող միասնական բարձր զարգացած ժողովրդատնտեսական կոմպլեքսի զարգացումը։ Դրա հետ է կապված նաև ինտերնացիոնալիստական հիման վրա խոշոր ընդհանուր միութենական արտադրական և գիտաարտադրական միավորումների ստեղծումը, որոնք հաճախ ներառնում են զանազան շրջանների ու հանրապետությունների ձեռնարկություններն ու հիմնարկությունները։ Այս ամենը տընտեսական հիմք է ծառայում ո՛չ միայն սովետական բազմազգ պետության միութենական միասնության ամրապնդման, այլև սովետական պետականության ազգային ձևերն ընդհանուր միութենական բովանդակությամբ է՛լ ավելի հագեցնելու, միութենական և ազգային պետականության միասնությունը խորացնելու, ազգային սովետական պետականության մարմիններում ընդհանուր խնդիրների լուծման տեսակարար կշիռը մեծացնելու համար։

Սովետական ազգային պետականության ինտերնացիոնալացման հետագա խորացումն առավել անմիջականորեն կապված է սոցիալ-քաղաքական գործոնների հետ։ Այստեղ կարևորագույն նշանակություն ունեն՝ ամբողջությամբ վերցրած հասարակության և յուրաքանչյուր հանրապետության նույնատիպ սոցիալական կառուցվածքի հաստատումը, բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի անշեղորեն սերտացող մերձեցումը, ինչպես նաև բանվոր դասակարգի թվական կազմի արագ աճը, տեսակարար կշռի և ղեկավար դերի մեծացումը։ Այս ամենը հանգեցնում է այն բանին, որ ինչպես միութենական, այնպես էլ հանրապետական ու տեղական կուսակցական և պետական մարմինների կազմում ավելի ու ավելի շատ բանվորներ են ընդգրկվում։ Այսպես, 1979 թ. ընտրված ՍՍՀՄ Գերագույն սովետի կազմում բոլոր դեպուտատների 34,8 տոկոսը բաղկացած է բանվորներից (1974 թ.՝ 32,8 տոկոսը). միութենական հանրապետությունների 1980 թ. ընտրված գերագույն սովետներում բանվորները կազմում են 33,2 տոկոսը (1971 թ.՝ 29,6). ինքնավար հանրապետությունների 1980 թ. ընտրված գերագույն սովետների կազմում՝ 37,6 (1971 թ.՝



31,7). ժողովրդական դեպուտատների 1980 թ. ընտրված տեղական սովետներում՝ 43,4 (1971 թ.՝ 36,5) տոկոսը։ Անշեղորեն մեծանում է բանվորների բաժինը նաև գործադիր մարմինների կազմում։ Խոսելով այս պրոցեսի մասին, կուսակցության XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Դա շատ ճիշտ է, դա մենք ողջունում ենք» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 84)։

Բացառիկ կարևոր դեր է խաղում նաև կոմունիստների թվական աճը, սովետական ազգային պետականության մարմինների աշխատանքում նրանց մասնակցության ընդլայնումը։ 1966 թ. մինչև 1981 թ. ընկած ժամանակաշրջանում ՍՄԿԿ-ի թվական կազմի 40 տոկոս ընդհանուր աճի դեպքում Ուկրաինայի, Տաջիկստանի, Հայաստանի, Թուրքմենիայի, Ադրբեջանի կոմկուսների կազմն աճել է 50—56 տոկոսով, Էստոնիայինը՝ 70—82 տոկոսով։ ՍՄԿԿ անդամներն ու անդամության թեկնածուները մշտապես կազմում են միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների դեպուտատների շուրջ երկու երրորդը, ինքնավար մարզերի և ինքնավար օկրուգների սովետների դեպուտատների կեսից ավելին։ 1980 թ. ընտրված գործկոմների կազմում ՍՄԿԿ անդամներն ու անդամության թեկնածուները համապատասխանաբար կազմում են 92,7 և 90,3 տոկոս։ Կոմունիստները կազմում են միութենական հանրապետությունների գերագույն սովետների նախագահությունների անդամների 90,3 և ինքնավար հանրապետությունների նախագահությունների անդամների 85,7 տոկոսը։

Վերը դիտարկված սոցիալական գործոններն անմիջականորեն պայմանավորում են սովետական ազգային պետականության զարգացումը և ինտերնացիոնալիստական էության ու սոցիալիստական բովանդակության խորացումը։ Սակայն սովետական ազգային պետականության ինտերնացիոնալացման պրոցեսն ունի նաև մեկ այլ կողմ, որն անմիջականորեն կապված է այդ պետականության բուն ազգային ձևերի ինտերնացիոնալացման հետ։ Եվ այստեղ կարևոր նշանակություն ունի հանրապետությունների բնակչության բազմազգության աճի հիման վրա սովետական ազգային պետականության մարմիններում ոչ բնիկ ազգությունների ներկայացուցչության ընդլայնումը։

Ըստ գործնական և գաղափարաքաղաքական հատկությունների կադրերի ընտրության ու առաջքաշման լենինյան սկզբունքն իր հիմքում և իր էությամբ ինտերնացիոնալիստական է։ Բայց սխալ կլիներ այն մեկնաբանել այնպես, թե իբր դա նշանակում է պետական և հասարակական կյանքում ազգային հատկանիշների, այդ թվում նաև բնակչության ազգային կառուցվածքի և ազգային կազմի անտեսում։ Կուսակցության XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ՍՄԿԿ Կենտկոմը հաշվետու ժամանակաշրջանում մշտապես ուշադրություն է դարձրել սովետական հասարակության ազգային կառուցվածքի զարգացման հարցերին։ Ինչպես արդեն նշվեց, համագումարը տեղերում կուսակցական մարմինների առջև խնդիր դրեց խորամուխ լինել հանրապետությունների բնակչության ազգային կազմի լուրջ փոփոխության հետ կապված հարցերում։

Քսան-երեսնական թվականներին, սոցիալիզմի կառուցման և ազգային հարցի լուծման ընթացքում, ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը եռանդուն կերպով իրականացնում էին տեղական ազգությունների ներկայացուցիչներից լայնորեն կադրեր պատրաստելու և պետական իշխանության ու կառավարման մարմինների, դրանց ապարատի բնիկացման գիծ։ Դա կարևոր դեր խաղաց ժողովուրդների փաստական անհավասարության վերացման, սովետական ազգային պետականության կազմավորման և ամրապնդման գործում։ Ներկայումս պետական մարմինների բնիկացման քաղաքականությունը վաղուց արդեն սպառել է իրեն, որովհետև դեռևս տասնամյակներ առաջ հաջողությամբ լուծվել են այդ քաղաքականության հետամտած խնդիրները։ Բոլոր հանրապետություններում, ինքնավար մարզերում և օկրուգներում պատրաստվել և աճել են բարձրորակ կադրեր, որոնք, ինչպես ցույց տրվեց վերևում, լայնորեն ներկայացված են պետական բոլոր մարմիններում։ Ուստի այսօր սխալ կլիներ խոսք վարել «բնիկացման» մասին։

Դրա հետ մեկտեղ հանրապետությունների, ինքնավար մարզերի և օկրուգների բնակչության ազգային կառուցվածքը և ազգային կազմը հաշվի առնելն անհրաժեշտ է և այն ժամանակ, երբ հարցը վերաբերում է ոչ բնիկ ազգաբնակչության պահանջների բավարարմանը։ Սովետական ազգային պետականության ինտերնացիոնալիստական բնույթին և ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հետագա ամրապնդման շահերին դժվար թե համապատասխաներ մի այնպիսի վիճակ, երբ ի վնաս ոչ բնիկ ազգաբնակչության ներկայացուցչության թույլ տրվեր բնիկ ազգությունների ներկայացուցչության չհիմնավորված շեշտակի ընդլայնում։ Օրինակ, բնիկ ազգությունը հանրապետության բնակչության կեսից զգալի պակաս է, իսկ դեպուտատների և պետական ապարատի աշխատողների կազմում կեսից, նույնիսկ երկու երրորդից ավելին է։ Ուստի ՍՄԿԿ XXVI համագումարի այս բնագավառին ևս վերաբերող առաջադրած խնդիրների գործնական իրականացումը բացառիկ կարևոր դեր ունի մեր երկրում ազգային և ինտերնացիոնալ պրոցեսների գիտական կառավարումը հետագայում կատարելագործելու, ինտերնացիոնալ միասնությունն ամրապնդելու, բազմազգ սովետական հասարակությունը համախմբելու գործում։

Հասուն սոցիալիզմի պայմաններում սովետական ազգային պետականության զարգացման կարևորագույն առանձնահատկություններից մեկն այն է, որ այդ պրոցեսն իրականացվում է միութենական պետականության զարգացման և դրա առաջատար դերի առկայության հետ անքակտ միասնության մեջ։ Միութենական պետականության և ազգային պետականության նման միասնության սահմանադրական հիմունքներն ամրագրված են ՍՍՀՄ սահմանադրությունում՝ զարգացած սոցիալիստական հասարակության հիմնական օրենքում։ Դա արտահայտված է սովետական բազմազգ պետության զարգացման արդի փուլում կիրարկելի դեմոկրատական ցենտրալիզմի և սոցիալիստական ֆեդերալիզմի սկզբունքների իրականացման հիման վրա կենտրոնացված ղեկավարության միութենական հիմունքների դերի և նշանակության մեծացման մեջ. ընդհանուր միութենական խնդիրների և ֆունկցիաների, սովետական ազգային պետականության մարմինների կազմակերպման ու գործունեության բովանդակությունում և ձևերում ընդհանուր-ինտերնացիոնալ հատկանիշների տեսակարար կշռի աճի մեջ, միութենական մարմինների կազմակերպման հարցում և դրանց գործունեությունում, ընդհանուր միութենական խնդիրներն ու ֆունկցիաներն իրականացնելիս սովետական ազգային պետականության մարմինների մասնակցության ընդլայնման ու դերի բարձրացման մեջ և այլն։

Այս կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի հիշյալ որոշման մեջ կարդում ենք. «Յուրաքանչյուր ազգի և ազգության շահերի ու պահանջմունքների մանրակրկիտ հաշվառում, ամբողջությամբ վերցրած սովետական ժողովրդի շահերի հետ դրանց օրգանական զուգակցում, հասարակության զարգացման հրատապ խնդիրների լուծման համար աշխատավորների ջանքերի միավորում՝ այս ամենը գտնվում է ՍՄԿԿ-ի ուշադրության կենտրոնում»։

Կոմունիստական շինարարության ընթացքում մեծանում է սովետական միութենական և ազգային պետականության՝ որպես կուսակցության ծրագրային նպատակների, կոմունիստական իդեալների համար սովետական ժողովուրդների համատեղ պայքարում պատմականորեն լիովին իրեն արդարացրած ազգային-պետական ձևերի, դերն ու նշանակությունը։

**Մոսկվա**

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԱԶԳԱՅԻՆ-ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Հ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների
թեկնածու, դոցենտ

ՍՄԿԿ ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ քաղաքականության՝ ժողովուրդների իսկական հավասարության, եղբայրության ու բարեկամության քաղաքականության պրակտիկ կենսագործման շնորհիվ աճել և ամրապնդվել է ազատ ժողովուրդների հզոր համագործակցությունը՝ Հոկտեմբերի հայրենիքը, որը, ինչպես նշված է «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, այսօր «ամբողջ աշխարհի առջև հանդես է գալիս որպես համատեղ կոմունիզմ կառուցող իրավահավասար հանրապետությունների համերաշխ ընտանիք»։

Պատմական փորձը համոզիչ կերպով ցույց տվեց, որ սովետական ֆեդերացիայի լենինյան սկզբունքների գործնական իրականացումը ապահովել է Սովետական Միության բոլոր ազգերի ու ազգությունների բազմակողմանի ծաղկումն ու մերձեցումը, կյանքի բոլոր բնագավառներում նրանց եղբայրական, իրավահավասար ազգամիջյան համագործակցության հետագա ուժեղացումը։ «Կյանքը համոզում է,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— որ մեր հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական ինտենսիվ զարգացումը արագացնում է դրանց բազմակողմանի մերձեցման պրոցեսը։ Տեղի են ունենում ազգային կուլտուրաների ծաղկում ու փոխհարստացում, սոցիալական ու ինտերնացիոնալ նոր հանրության՝ միասնական սովետական ժողովրդի, կուլտուրայի ձևավորում։ Այդ պրոցեսը մեղմանում ընթանում է այնպես, ինչպես որ այն պետք է ընթանա սոցիալիզմի օրոք՝ հավասարության, եղբայրական համագործակցության ու կամավորության հիման վրա։ Կուսակցությունը խստիվ հետևում է ազգային քաղաքականության լենինյան այդ սկզբունքների կիրառմանը։ Դրանցից մենք երբեք չենք շեղվի» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 92—93)։

Սովետական Հայաստանը ՍՍՀՄ ժողովուրդների ազգային պետականության բարձրագույն ձևը հանդիսացող 15 իրավահավասար միութենական հանրապետություններից մեկն է։ Հայկական ՍՍՀ սահմանադրությունը, որն ընդունվեց 1978 թվականի ապրիլի 14-ին, պարունակում է պետական-իրավական նորմերի մի ամբողջ խումբ, որոնք կարգավորում են հանրապետության ազգային-պետական կառուցվածքի հետ առնչվող հարաբերությունների ողջ կոմպլեքսը։ Այդ նորմերը խմբավորված են հիմնական օրենքի երրորդ բաժնում, որը կոչվում է «Հայկական ՍՍՀ ազգային-պետական և վարչատերիտորիալ կառուցվածքը»։ Բաժինը կազմված է երկու գլուխներից՝ «Հայկական ՍՍՀ-ն միութենական հանրապետություն է ՍՍՀՄ կազմում» (գլուխ 7-րդ) և

«Հայկական ՍՍՀ վարչատերիտորիալ կառուցվածքը» (գլուխ 8-րդ)։ Բաժնի նոր անվանումը լրիվ ու հստակորեն արտացոլում է նրա ներքին բովանդակությունը։

Հարկ է նկատել, որ Հայկական ՍՍՀ 1937 թվականի սահմանադրությունում պետության ձևի դիտարկվող տարրը նշելու համար կիրառվել է «պետական կառուցվածք» հասկացությունը (այդպես էր կոչվում Հայկական ՍՍՀ 1937 թ. սահմանադրության երկրորդ գլուխը)։ Ինչ վերաբերում է 1922 թ. սահմանադրությանը, ապա այնտեղ հանրապետության պետական կառուցվածքին նվիրված հատուկ բաժին կամ գլուխ գոյություն չուներ։

Հայկական ՍՍՀ 1978 թ. սահմանադրությունը, ՍՍՀՄ 1977 թ. սահմանադրությունից հետո, հիմնվելով հաջորդայնության սկզբունքի վրա, պահպանել է հանրապետության պետական կառուցվածքի բոլոր հիմնական հատկանիշները։ Միևնույն ժամանակ այն, ինչպես և եղբայրական հանրապետությունների բոլոր նոր սահմանադրությունները, արտացոլել է սովետական բազմազգ պետության և սովետական ժողովուրդների ազգային պետականության զարգացման արդի միտումները, մասնավորապես՝ միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքների սահմանադրական երաշխիքների ընդլայնումն ու պետության միութենական հիմունքների ամրապնդումը, որոնց անհրաժեշտությունը թելադրվում է ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների հետզհետե խորացող մերձեցմամբ։ Բացի այդ, ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների նոր հիմնական օրենքները զգալիորեն կատարելագործեցին պետական-իրավական հարաբերությունների քննարկվող ոլորտի սահմանադրական կանոնարկումը։ «Ազգային-պետական կառուցվածք» տերմինի կիրառումն առավել հստակորեն է շեշտում պետական կառուցվածքի կապը ազգային հարցի լուծման, ազգային պետականության տարբեր ձևերի առկայության հետ։

Հայկական ՍՍՀ ազգային-պետական կառուցվածքի առանձնահատկությունը կայանում է նրանում, որ այն ոչ բարդ, միատարր (ունիտար) սովետական սոցիալիստական պետություն է։ Հայկական ՍՍՀ-ն բաղկացած է շրջաններից և այլ վարչատերիտորիալ միավորներից։ Նրանում ընդգրկված չեն այլ պետություններ կամ ազգային-պետական գոյացումներ։ Լինելով ՍՍՀՄ կազմի մեջ մտնող միութենական հանրապետություն, Հայկական ՍՍՀ-ն միևնույն ժամանակ հանդիսանում է սուվերեն պետություն, որն իր տերիտորիայում լրիվին իրականացնում է պետական իշխանությունը, բացի այն լիազորություններից, որոնք կամավոր կերպով հանձնված են ՍՍՀ Միության տնօրինությանը։

Հայկական ՍՍՀ-ն ստեղծվել է աշխատավոր մասսաների սուվերեն կամքին համաձայն, որպես հայ ժողովրդի ազգային պետականության ձև։ Այն կազմավորվել է 1920 թվականի նոյեմբերի 29-ին։ 1922 թվականի մարտի 12-ից մինչև 1936 թվականի դեկտեմբերի 5-ը գտնվել է Անդրկովկասյան ֆեդերացիայի կազմի մեջ։ 1936 թվականի դեկտեմբերի 5-ին Հայկական ՍՍՀ-ն մտավ անմիջականորեն ՍՍՀՄ-ի մեջ։

Հայկական ՍՍՀ-ն, ինչպես և ցանկացած միութենական հանրապետություն, ազգային պետություն է։ Անունն իսկ արտացոլում է նրա ազգային բնույթը։ Այդ պետականության ազգային հիմքն ամուր է և հաստատուն։

Հայկական ՍՍՀ սահմանադրության 68-րդ հոդվածում տրված է հանրապետության պետական-իրավական ստատուսի ընդգրկուն, առավելագույն չափով հստակ բնորոշումը։ Այնտեղ ասված է. «Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը սուվերեն սովետական սոցիալիստական պետություն է։ Կոմունիստական հասարակարգի հաջող կառուցման, երկրի տնտեսական և քաղաքական միասնության ամրապնդման, անվտանգության և պաշտպանության ապահովման նպատակով Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը, իր ժողովրդի ազատ ինքնորոշման շնորհիվ, կամավորության և իրավահավասարության հիման վրա Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների.... հետ միասին միավորվել է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության՝ միասնական միութենական բազմազգ պետության մեջ։



Դրանից ելնելով, Հայկական ՍՍՀ-ն ՍՍՀ Միությանը՝ ի դեմս նրա պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների, վերապահում է ՍՍՀՄ սահմանադրության 73-րդ հոդվածով սահմանված իրավունքները։

ՍՍՀՄ սահմանադրության 73-րդ հոդվածում նշված սահմաններից դուրս Հայկական ՍՍՀ-ն իր տերիտորիայում պետական իշխանությունը իրականացնում է ինքնուրույն»։

Միավորվելով ՍՍՀ Միության մեջ, սովետական հանրապետությունները կամովին հրաժարվել են իրենց պատկանող որոշ իրավունքներից, բայց չեն սահմանափակել իրենց սուվերենությունը։ Սուվերենությունը, որպես պետական իշխանության ընդհանուր անկապտելի հատկանիշ, անբաժանելի է, որը չի կարելի սահմանափակել առանց լրիվ չափով այն վերացնելու։ Կարելի է խոսել միայն սուվերենության ամրապնդման կամ թուլացման, բայց ոչ երբեք սահմանափակման կամ ինքնասահմանափակման մասին։

Ստեղծելով ՍՍՀ Միությունը, միավորված սովետական հանրապետություններն իրենց իրավունքների մի մասը կամովին վերապահեցին միութենական պետությանը՝ հանուն միավորված սովետական սոցիալիստական հանրապետությունների ընդհանուր նպատակների իրականացման։ Իրավունքների այս ինքնասահմանափակումը չպետք է շփոթել «սուվերենության ինքնասահմանափակման» հետ։ Այս կապակցությամբ, ըստ երևույթին, ոչ բոլորովին ճիշտ պետք է համարել ՍՍՀ Միության 1936 թ. սահմանադրության 15-րդ հոդվածի և Հայկական ՍՍՀ 1937 թ. սահմանադրության 13-րդ հոդվածի ձևակերպումները, քանի որ դրանք հիմք են տվել միութենական հանրապետության «սուվերենության ինքնասահմանափակման» վերաբերյալ հետևությանը։ ՍՍՀՄ 1936 թ. սահմանադրության 15-րդ հոդվածում ասված է. «Միութենական հանրապետությունների սուվերենիտետը սահմանափակված է (ընդգծումն իմն է—Հ. Խ.) միայն ՍՍՀՄ սահմանադրության 14-րդ հոդվածում մատնանշված շրջանակներով։ Այդ շրջանակներից դուրս յուրաքանչյուր միութենական հանրապետություն պետական իշխանությունն իրականացնում է ինքնուրույն կերպով։ ՍՍՀՄ-ը պահպանում է միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները»։

ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների գործող սահմանադրություններում նման ձևակերպում գոյություն չունի։ Հիրավի, չի կարելի նույնացնել միութենական հանրապետության սուվերենությունն ու իրավասությունը։ Վերջինս սուվերենությունից տարբերվում է նրանով, որ այն իրավաբանորեն արտահայտում է միութենական հանրապետության՝ ի դեմս նրա մարմինների, լիազորությունների ծավալը։ Իրավասությունն ամրագրվում է լիազորությունների ամբողջության ձևով և տնօրինության հարցերի շրջանակով։ Միութենական հանրապետության սուվերենությունն արտահայտվում է այդ հանրապետության իրավասության մեջ և, առաջին հերթին, նրա հույժ կարևոր լիազորություններում, որոնք միութենական հանրապետության սուվերենության երաշխիքն են։ Սուվերենությունն ու իրավասությունը չի կարելի նույնացնել։

ՍՍՀ Միության սուվերենությունը միութենական հանրապետությունների սուվերենությունների հանրագումարը չէ և հատուկ է Միությանը նրա ստեղծման պահից ի վեր։ ՍՍՀՄ սուվերենությունը և միութենական հանրապետություններից յուրաքանչյուրի սուվերենությունը միմյանցից չեն բխում։ Սակայն դրանք ոչ միայն մեկուսացած չեն ու միմյանց հակադիր չեն, այլև գտնվում են միասնության մեջ։

ՍՍՀ Միության սուվերենությունը և յուրաքանչյուր միութենական հանրապետության սուվերենությունը ներդաշնակորեն զուգակցվում են, միմյանց լրացնում՝ չկլանելով և չսահմանափակելով միմյանց։ Միութենական հանրապետությունների սուվերենությունը ցայտուն կերպով դրսևորվում է ՍՍՀ Միության կազմի մեջ նրանց մտնելու կամավորության սկզբունքում։ Միութենական պետության մեջ կամովին միավորվելու սկզբունքը սովետական սոցիալիստական ֆեդերացիայի կարևորագույն սահմանադրական սկզբունքներից է։

Այն ամրագրված է ՍՍՀՄ սահմանադրության 70-րդ և Հայկական ՍՍՀ սահմանադրության 68-րդ հոդվածներում։ ՍՍՀ Միության կամավոր բնույթը ո՛չ միայն հռչակված է, այլև ռեալ կերպով երաշխավորված։ Յուրաքանչյուր միութենական հանրապետության իրավունք է վերապահվում ազատորեն դուրս գալու ՍՍՀՄ-ից (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 72)։ Հայկական ՍՍՀ-ն իրեն իրավունք է վերապահում ազատորեն դուրս գալու ՍՍՀՄ-ից (Հայկական ՍՍՀ սահմանադրություն, հոդված 69)։ Անհրաժեշտ է ուշադրություն դարձնել ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ սահմանադրությունների նշված հոդվածների ձևակերպմանը։ ՍՍՀ Միության կազմից դուրս գալու միութենական հանրապետության իրավունքը ոչ թե տրվում է, այլ պահպանվում։ Այլ խոսքով, ՍՍՀ Միությունը չէ, որ միութենական հանրապետություններին իրավունք է տալիս դուրս գալու իր կազմից, այլ միութենական հանրապետությունները, որպես կամավորության սկզբունքով միավորված սուվերեն պետություններ, պահպանել են Միության կազմից դուրս գալու իրենց միակողմանի իրավունքը։ Դա միութենական հանրապետությունների սուվերեն, անկապտելի իրավունքն է, ուստի այն չի կարող որևէ փոփոխության ենթարկվել միութենական իշխանության կողմից։ Այդ իրավունքի իրականացման համար անհրաժեշտ է միայն մեկ պայման՝ միութենական հանրապետության ժողովրդի կամքի ազատ դրսևորում։ Մյուս միութենական հանրապետությունների և ֆեդերալ մարմինների համաձայնության անհրաժեշտությունը չկա։ ՍՍՀՄ-ից միութենական հանրապետությունների ազատորեն դուրս գալու իրավունքը չի կարող վերացվել, փոփոխվել կամ սահմանափակվել միութենական իշխանության կողմից։

Հայկական ՍՍՀ պետական իշխանությունը ընդհանուր միութենական իշխանությունից անջատված չէ։ Այդ սուվերեն պետական իշխանությունն օժտված է գերագույնության, միասնության, լիիշխանության և անկախության հատկանիշներով։

Հայկական ՍՍՀ պետական իշխանության գերագույնության էական առանձնահատկությունը կայանում է նրանում, որ այն օրգանապես կապված է ՍՍՀ Միության պետական իշխանության գերագույնության հետ։ ՍՍՀՄ, միութենական և ինքնավար հանրապետությունների ազգային-պետական կառուցվածքն ամրակայող սահմանադրական նորմերը կարևոր դեր են կատարում սովետական պետությունում միութենական և ազգային պետականության միասնությունն ապահովելու, բոլոր պետական-իրավական ինստիտուտների այնպիսի հարաբերակցություն սահմանելու գործում, որը երաշխավորում է պետական իշխանության միասնությունը ինչպես միութենական հանրապետությունում, այնպես էլ ՍՍՀ Միությունում (տե՛ս Советское государственное право, под ред. Е. И. Козловой и В. С. Шевцова. М., 1978, стр. 196)։

Հայկական ՍՍՀ-ն մյուս միութենական հանրապետությունների հետ միասին մասնակցում է ո՛չ միայն ընդհանուր միութենական պետական մարմինների ստեղծմանը, այլև այդ մարմինների միջոցով գործնականում մասնակցում է ընդհանուր միութենական պետական իշխանության իրականացմանը։ Իսկ ընդհանուր միութենական պետական մարմիններն իրենց բազմաթիվ լիազորությունները միութենական հանրապետությունների տերիտորիայում իրականացնում են տվյալ հանրապետության պետական մարմինների միջոցով։ Հետևապես, ընդհանուր միութենական իշխանությունը միաձուլվում է միութենական հանրապետության իշխանության հետ, որի արդյունքը դրանց խոր, օրգանական միասնությունն է։

Հայկական ՍՍՀ-ն մյուս միութենական հանրապետությունների հետ մասնակցում է ընդհանուր միութենական իշխանության և միութենական հանրապետությունների իշխանության փոխհարաբերությունների սկզբունքների մշակմանը։ ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների պետական մարմինների ֆունկցիաները լրացնում են միմյանց։ Հայկական ՍՍՀ պետական իշխանությունը գոյություն ունի ոչ թե ՍՍՀ Միության պետական իշխանությանը զուգահեռ, այլ վերջինիս հետ օրգանական միասնության մեջ։ Այդ միասնության հիմքը ո՛չ միայն սովետական պետության ֆեդերատիվ կառուցվածքն է, այլև ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների պետական իշխանության միասնական սոցիալ-քաղաքական բնույթը, պետական իշխանության բոլոր մարմինների կառուցվածքի միասնական սկզբունքները, ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական, քաղաքական ու կուլտուրական շահերի ընդհանրությունը։



Այս հանգամանքը հստակորեն ամրագրված է ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ հիմնական օրենքներում։ Մասնավորապես, Հայկական ՍՍՀ սահմանադրության 73-րդ հոդվածում ասված է. «Հայկական ՍՍՀ-ն մասնակցում է ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված հարցերի լուծմանը ՍՍՀՄ Գերագույն սովետում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ կառավարությունում և ՍՍՀ Միության մյուս մարմիններում։

Հայկական ՍՍՀ-ն ապահովում է տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացումը իր տերիտորիայում, նպաստում է այդ տերիտորիայում ՍՍՀ Միության լիազորությունների իրականացմանը, կենսագործում է ՍՍՀՄ պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների որոշումները։

Իր տնօրինությանը վերապահված հարցերում Հայկական ՍՍՀ-ն կոորդինացնում և վերահսկում է միութենական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների գործունեությունը»։

Այսպիսով, էապես մեծացել է հանրապետության դերը ո՛չ միայն իր ներքին հանրապետական հարցերի, այլև ՍՍՀ Միության տնօրինությանը վերապահված հարցերի լուծման գործում։

Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները պահպանվում են ՍՍՀ Միության կողմից։ Մնում են նաև այդ իրավունքների երաշխիքները։ Ավելին, դրանց ավելացվում են նորերը, ինչպես հանրապետությունների մասնակցության իրավունքը միութենական մարմինների կողմից այն հարցերի լուծմանը, որոնք վերապահված են ՍՍՀ Միության իրավասությանը։ Վավերագրվում է ՍՍՀՄ Գերագույն սովետում օրենսդրական նախաձեռնություն ցուցաբերելու՝ միութենական հանրապետությունների իրավունքը, ի դեմս նրանց պետական իշխանության բարձրագույն մարմինների (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ սահմանադրության մասին, «Հայաստան» հրատ., 1978, էջ 22)։

ՍՍՀՄ սահմանադրությունում և միութենական հանրապետությունների սահմանադրություններում վավերագրված են միութենական հանրապետության սուվերեն իրավունքները։ Դրանցում առավել լրիվ չափով է բացահայտվում պետական իշխանության բովանդակությունը և դրանով իսկ դրսևորվում է պետական սուվերենությունը։ Բայց պետական սուվերենությունը չի կարելի նույնացնել նույնիսկ սուվերեն իրավունքների հետ։ Սակայն այդ իրավունքներում սուվերենությունը ձեռք է բերում առավել կոնկրետ արտահայտություն և իրավական ձևակերպում։

ՍՍՀՄ սահմանադրության 76-րդ հոդվածում ասված է. «Միութենական հանրապետությունն ունի իր սահմանադրությունը, որը համապատասխանում է ՍՍՀՄ սահմանադրությանը և հաշվի է առնում հանրապետության առանձնահատկությունները»։ Հայկական ՍՍՀ-ն, որպես սուվերեն պետություն, ինքնուրույն կերպով ընդունում և փոփոխում է իր սահմանադրությունը առանց որևէ հետագա հաստատման։

«ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ շեշտված է. «ՍՍՀՄ սահմանադրության, միութենական և ինքնավար հանրապետությունների սահմանադրությունների մեջ խտացված արտահայտություն են գտել սովետական հասարակության տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքում տեղի ունեցած առավել էական փոփոխությունները, մեր

պետության խոր դեմոկրատիզմը։ Դրանցում վավերագրված են կյանքի սոցիալիստական կացութաձևի՝ բոլոր ազգերի և ազգությունների համար ընդհանուր արմատական հիմունքները, ուժեղացված են հանրապետությունների սուվերեն իրավունքների երաշխիքները, բարձրացված է նրանց դերը համաժողովրդական խնդիրների լուծման գործում»։

Հայկական ՍՍՀ սահմանադրությունը ո՛չ միայն վավերագրում է հանրապետության հասարակարգի և քաղաքականության հիմունքները, քաղաքացիների հիմնական իրավունքները, ազատություններն ու պարտականությունները, հանրապետության ազգային-պետական և վարչատերիտորիալ կառուցվածքը, պետական մարմինների համակարգը և գործունեության սկզբունքները, այլև Հայկական ՍՍՀ՝ որպես ՍՍՀ Միության կազմի մեջ մտնող սուվերեն պետության, իրավական դրությունը։ Հայկական ՍՍՀ սահմանադրությունը կառուցվում է միութենական սահմանադրությանը համապատասխան։ Սակայն այս հանգամանքը չի նվազեցնում Հայկական ՍՍՀ սահմանադրության՝ որպես հիմնական օրենքի, դերն ու նշանակությունը, դրա ինքնուրույն բնույթը։ Միության և միութենական հանրապետությունների սահմանադրությունների միասնությունը բխում է ո՛չ միայն մեր պետության ֆեդերատիվ բնույթից, այլև ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների տնտեսական ու քաղաքական հիմքերի միատարրությունից, կուսակցական ղեկավարման միասնությունից։ Դրանով է բացատրվում, մասնավորապես, այն փաստը, որ ՍՍՀ Միության սահմանադրության՝ հասարակարգի և քաղաքականության հիմունքները, քաղաքացիների իրավական վիճակը, պետական ապարատի կազմակերպումն ու գործունեությունը և այլն վավերագրող նորմերը բառացիորեն վերարտադրվում են միութենական հանրապետությունների սահմանադրություններում։ Եվ եթե ՍՍՀՄ սահմանադրության մեջ փոփոխություններ են մտցվում, ապա համապատասխան փոփոխություններ են կատարում նաև միութենական հանրապետությունները։ Դրա հետ միասին, Հայկական ՍՍՀ սահմանադրությունը, ինչպես և մյուս միութենական հանրապետությունների սահմանադրությունները, հաշվի է առնում և արտացոլում հանրապետության ազգային, պատմական, տնտեսական և այլ առանձնահատկությունները։ ՍՍՀՄ-ն իրականացնում է ՍՍՀՄ սահմանադրության կատարման վերահսկողությունը և ՍՍՀՄ սահմանադրությանը միութենական հանրապետությունների սահմանադրությունների համապատասխանության ապահովումը (տե՛ս **ՍՍՀՄ սահմանադրության** 73-րդ հոդվածը)։

Հաշվի առնելով Հայկական ՍՍՀ ազգային-պետական կառուցվածքի առանձնահատկությունները, հանրապետության սահմանադրությունում որոշարկված են Հայկական ՍՍՀ իրավասությանը վերաբերող առավել կարևոր հարցերը։ Մասնավորապես, պետական շինարարության մարզում Հայկական ՍՍՀ-ի տնօրինությանը՝ ի դեմս նրա պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների, վերապահված են՝ Հայկական ՍՍՀ սահմանադրության ընդունումը, դրա մեջ փոփոխություններ մտցնելը և դրա պահպանման վերահսկողությունը. վարչատերիտորիալ կառուցվածքի հարցերի լուծումը. իր տնօրինությանը վերապահված հարցերի վերաբերյալ հանրապետության օրենսդրությունը, պետական կարգի, քաղաքացիների իրավունքների և ազատությունների պահպանությունը. պետական իշխանության ու կառավարման մարմինների կազմակերպման և գործունեության կարգի սահմանումը. հանրապետության քաղաքացիության մեջ ընդունումը, ամնիստիան և Հայկական ՍՍՀ դատարանների կողմից դատապարտված քաղաքացիների ներումը. միջազգային հարաբերություններում հանրապետության ներկայացուցչության իրականացումը։

Տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության ասպարեզում Հայկական ՍՍՀ տնօրինությանն են վերապահված՝ միասնական սոցիալ-տնտեսական քաղաքականության իրականացումը. հանրապետության էկոնոմիկայի



ղեկավարումը. գիտատեխնիկական առաջընթացի ապահովումը և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու պահպանման նպատակով միջոցառումների իրականացումը. Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների մշակումն ու հաստատումը, դրանց կատարման վերաբերյալ հաշվետվությունների հաստատումը. հանրապետության իրավասության սահմաններում միութենական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների գործունեության կոորդինացումն ու վերահսկումը. Հայկական ՍՍՀ պետական բյուջեի մշակումն ու հաստատումը, դրա կատարման հաշվետվության հաստատումը. հանրապետական ենթակայության շրջանների ու քաղաքների բյուջեների իրականացման ղեկավարումը. համաձայն ՍՍՀ Միության օրենսդրության, Հայկական ՍՍՀ պետական բյուջեի գոյացման նպատակով մուտք եղող եկամուտների սահմանումը. ժողովրդական տնտեսության միութենական-հանրապետական և հանրապետական ճյուղերի, հանրապետական ենթակայության միավորումների և ձեռնարկությունների ղեկավարումը. հողից, ընդերքից, անտառներից ու ջրերից օգտվելու կարգի սահմանումը. շրջակա միջավայրի պահպանումը. բնակարանային և կոմունալ տնտեսության, բնակչության կոմունալ սպասարկման, քաղաքների և այլ բնակավայրերի բնակարանային շինարարության ու բարեկարգման, ճանապարհաշինության և տրանսպորտի ղեկավարումը. ժողովրդական կրթության, հանրապետության կուլտուրական և գիտական կազմակերպությունների ու հաստատությունների, առողջապահության, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի, սոցիալական ապահովության, պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանման և օգտագործման ղեկավարումը. հանրապետական նշանակության այլ հարցերի լուծումը։ Հայկական ՍՍՀ իրավասությունն ավելի մանրամասնորեն վավերագրվում է ընդհանուր միութենական և հանրապետական հատուկ օրենսդրական ակտերում։

Հայկական ՍՍՀ սուվերենության արտահայտությունն է նաև իշխանության և կառավարման բարձրագույն և տեղական մարմինների համակարգի առկայությունը, որն արտացոլում է հանրապետության տնտեսական, քաղաքական, ազգային ու պատմական առանձնահատկությունները։ Հայկական ՍՍՀ գործող սահմանադրությունը վավերագրեց հանրապետության ժողովրդական դեպուտատների սովետների և կառավարման մարմինների, արդարադատության, արբիտրաժի և դատախազական հսկողության համակարգը։ Այդ պետական մարմինների համակարգի միջոցով հանրապետությունը գործնականում իրականացնում է իր լիազորությունները, որոնք սահմանված են ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ սահմանադրություններով։

Միութենական հանրապետությունների, այդ թվում և Հայկական ՍՍՀ պետական մարմինների համակարգի կազմակերպման ու գործունեության սահմանադրական հիմունքները սահմանում է ՍՍՀ Միությունը (տե՛ս **ՍՍՀՄ սահմանադրության** IV—VII բաժինները)։ Միության այդ իրավունքը բխում է ՍՍՀՄ ֆեդերատիվ բնույթից, սովետական պետական իշխանության սոցիալիստական միասնությունը պահպանելու անհրաժեշտությունից։

Հայկական ՍՍՀ-ի՝ որպես սուվերեն պետության, էական հատկանիշն է սեփական տերիտորիայի (ցամաք, ընդերք, ջրեր, օդային տարածություն) առկայությունը։ Տերիտորիան ծառայում է որպես ազգ հասկացության անքակտելի հատկանիշ, նրա սուվերենության որոշիչ, Հայկական ՍՍՀ-ն չէր կարող լինել սուվերեն պետություն, եթե չունենար սեփական տերիտորիա և չկարողանար տնօրինել այդ տերիտորիայի մեջ մտնող հողերը, ընդերքը և մյուս բնական հարստությունները։

Հայկական ՍՍՀ տերիտորիան հանրապետության նյութական բազայի կարևորագույն տարրն է, առանց որի անհնարին է նրա գոյությունը որպես սուվերեն պետություն։ Տերիտորիան պետական սուվերենության տարածական սահ-

մանն է։ Ճիշտ այդ սահմաններում են գործում հանրապետության իրավական ակտերը։ Այն հանգամանքը, որ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության տերիտորիան միասնական է ու ներառնում է միութենական հանրապետությունների տերիտորիաները, և որ ՍՍՀՄ սուվերենությունը տարածվում է նրա ողջ տերիտորիայի վրա (տե՛ս ՍՍՀՄ սահմանադրության 75-րդ հոդվածը), չի հակասում հանրապետության սուվերենությանը։ Հայկական ՍՍՀ տերիտորիալ գերագույնության սկզբունքը ձևակերպված է ՍՍՀՄ սահմանադրության 78-րդ հոդվածում և Հայկական ՍՍՀ սահմանադրության 70-րդ հոդվածում։ Վերջինում, մասնավորապես, ասված է. «Հայկական ՍՍՀ տերիտորիան չի կարող փոփոխվել առանց նրա համաձայնության։ Հայկական ՍՍՀ և ուրիշ միութենական հանրապետությունների միջև սահմանները կարող են փոփոխվել համապատասխան հանրապետությունների փոխադարձ համաձայնությամբ, որը ենթակա է ՍՍՀ Միության հաստատմանը»։

Միութենական հանրապետության՝ որպես սուվերեն պետության, կարևոր հատկանիշն է սեփական քաղաքացիության և միութենական հանրապետության քաղաքացիության մեջ ընդունելու, հետևաբար, նաև ՍՍՀՄ քաղաքացիության մեջ ընդունելու իրավունքի առկայությունը։

Հայկական ՍՍՀ-ն միութենական պետության անդամ է, հետևաբար նրա քաղաքացիները միևնույն ժամանակ ՍՍՀՄ քաղաքացիներ են։ Միասնական միութենական քաղաքացիության սկզբունքը վավերագրված է ՍՍՀՄ սահմանադրության 33-րդ հոդվածում։ Այդ հոդվածի պահանջից ելնելով, Հայկական ՍՍՀ սահմանադրության 31-րդ հոդվածում վավերագրված է. «ՍՍՀՄ-ում սահմանված միասնական միութենական քաղաքացիությանը համապատասխան, Հայկական ՍՍՀ յուրաքանչյուր քաղաքացի հանդիսանում է ՍՍՀՄ քաղաքացի։ Սովետական քաղաքացիություն ձեռք բերելու և այն կորցնելու հիմունքներն ու կարգը որոշվում են ՍՍՀՄ քաղաքացիության մասին օրենքով։ Միութենական մյուս հանրապետությունների քաղաքացիները Հայկական ՍՍՀ տերիտորիայում օգտվում են Հայկական ՍՍՀ քաղաքացիների բոլոր իրավունքներից։

Հայկական ՍՍՀ քաղաքացիները արտասահմանում օգտվում են սովետական պետության պաշտպանությունից ու հովանավորությունից»։

«ՍՍՀՄ քաղաքացիության մասին» օրենքին համապատասխան, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը 1981 թվականի օգոստոսի 26-ին ընդունեց «Հայկական ՍՍՀ քաղաքացիության մեջ ընդունելու կարգի մասին» հրամանագիրը։

Հայկական ՍՍՀ-ն օժտված է լայն լիազորություններով արտաքին հարաբերությունների մարզում։ Նա, որպես սուվերեն պետություն, իրավունք ունի հարաբերությունների մեջ մտնելու օտար պետությունների հետ, նրանց հետ պայմանագրեր կնքելու և դիվանագիտական ու հյուպատոսական ներկայացուցիչներ փոխանակելու, մասնակցելու միջազգային կազմակերպությունների գործունեությանը (տե՛ս Հայկական ՍՍՀ սահմանադրության 74-րդ հոդվածը)։ Հայկական ՍՍՀ սահմանադրության 109-րդ հոդվածի համաձայն, հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը վավերացնում և չեղյալ է հայտարարում Հայկական ՍՍՀ միջազգային պայմանագրերը, նշանակում և ետ է կանչում օտարերկրյա պետություններում և միջազգային կազմակերպություններին առընթեր հանրապետության դիվանագիտական ներկայացուցիչներին։ Գերագույն սովետի նախագահությունն ընդունում է օտարերկրյա պետությունների՝ իրեն առընթեր հավատարմագրված դիվանագիտական ներկայացուցիչների հավատարմագրերը և ետ կանչման գրերը։

Հայկական ՍՍՀ ազգային-պետական կառուցվածքի հարցերի սահմանադրական կարգավորման առանձնահատկությունն է միութենական հանրապետության պետական լեզվի վերաբերյալ սահմանադրական նորմի առկայությունը։ Ազգերի ու ազգությունների ազատ զարգացման սկզբունքը ենթադրում է ազգային լեզվի զարգացում։



Դեռևս Հայկական ՍՍՀ 1937 թվականի սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկման ժամանակ այն լրացվեց նոր հոդվածով, որը հռչակում էր. Հայկական ՍՍՀ պետական լեզուն հայերենն է։ Հայկական ՍՍՀ տերիտորիայում բնակվող ազգային փոքրամասնությունների համար ապահովվում է իրենց ազգային լեզվի զարգացումն ու դրանից օգտվելն ինչպես կուլտուրական, այնպես էլ պետական հիմնարկություններում (տե՛ս Հայկական ՍՍՀ 1937 թվականի սահմանադրության 119-րդ հոդվածը)։ Նման նորմեր գոյություն ունեին Վրացական և Ադրբեջանական միութենական հանրապետությունների 1937 թվականի սահմանադրություններում։ Հարկ է նշել, որ նման հոդված գոյություն չուներ Հայկական ՍՍՀ 1922 թվականի սահմանադրությունում։

Վ. Ի. Լենինը, անդրադառնալով պետական լեզվի խնդիրներին, նշել է, որ «դեմոկրատական պետությունն անպայման պետք է ընդունի մայրենի լեզուների լիակատար ազատությունը և մերժի լեզուներից մեկի որևէ արտոնություն» (ԵԼԺ, հ. 25, էջ 88)։

Հայկական ՍՍՀ-ում հայերի կողքին ապրում են ադրբեջանցիներ, ռուսներ, քրդեր և այլ ժողովուրդների ներկայացուցիչներ։ Հայկական ՍՍՀ ազգային կազմն ըստ 1970 և 1979 թթ. մարդահամարների հետևյալ պատկերն է ներկայացնում. ողջ բնակչությունը՝ համապատասխանաբար 2.491,9 հազար և 3.037,3 հազար մարդ, որից հայեր՝ 2.208,3 հազար և 2.725 հազար, ադրբեջանցիներ՝ 148,2 հազար և 160,8 հազար, ռուսներ՝ 66,1 հազար և 70,3 հազար, քրդեր՝ 37,5 հազար և 50,8 հազար, այլ ազգություններ՝ 31,8 հազար և 30,4 հազար մարդ։

Տվյալ դեպքում պետական լեզուն սահմանադրորեն ամրագրելն ամենևին էլ չի նշանակում մայրենի լեզուների ազատության սահմանափակում և դրանով իսկ հանրապետության տերիտորիայում բնակվող ազգային փոքրամասնությունների իրավունքների ոտնահարում։ Դա չի նշանակում նաև տվյալ լեզվի առավելություն, քանի որ նշվում է այն առավել օգտագործվող լեզուն, որով խոսում է հանրապետության բնակչության մեծամասնությունը, իսկ հանրապետության ամեն մի բնակչի համար լրիվ չափով երաշխավորվում է իր մայրենի լեզվից օգտվելու հնարավորությունը։ Տվյալ հանգամանքներն առավել հստակորեն, առավել ճշգրտորեն արտացոլված են Հայկական ՍՍՀ գործող հիմնական օրենքում, որտեղ ասված է. «Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության պետական լեզուն հայոց լեզուն է։

Հայկական ՍՍՀ-ն պետական հոգատարություն է իրականացնում հայոց լեզվի ըստ ամենայնի զարգացման նկատմամբ և ապահովում է դրա գործածությունը պետական ու հասարակական մարմիններում, կուլտուրայի, լուսավորության ու այլ հիմնարկություններում։

Հայկական ՍՍՀ-ում ապահովվում է այդ մարմիններում ու հիմնարկություններում ռուսաց լեզվի և ուրիշ լեզուների ազատ գործածությունը, որոնցից օգտվում է բնակչությունը։

Այս կամ այն լեզվի գործածության որևէ արտոնություն կամ սահմանափակում չի թույլատրվում» (հոդված 72)։

Հայկական ՍՍՀ օրենքներն ու հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմինների այլ ակտերը հրապարակվում են հայերեն, ռուսերեն և ադրբեջաներեն լեզուներով։

Հանրապետությունում դատավարությունը տարվում է հայերեն կամ տվյալ վայրի բնակչության մեծամասնության լեզվով։ Գործին մասնակցող այն անձանց համար, ովքեր չեն տիրապետում դատավարության լեզվին, ապահովվում է թարգմանի միջոցով գործի նյութերին լրիվ ծանոթանալու և դատարանում մայրենի լեզվով հանդես գալու իրավունքը (տե՛ս Հայկական ՍՍՀ սահմանադրության 157-րդ հոդվածը)։

Հարկ է նշել, որ հանրապետությունում բնակվող ազգային փոքրամաս-

*նությունների լեզուների օգտագործումը չի պարփակվում օրենսդրության և դատավարության ոլորտներում։ Մայրենի լեզվի ազատ զարգացման և օգտագործման իրավունքը լայնորեն իրականացվում է ամենատարբեր մարզերում՝ ժողովրդական կրթության, գիտության, գրականության, ռադիոհաղորդումների և այլ բնագավառներում։ Նրանք ունեն իրենց բուհերը, դպրոցները, թերթերը, թատրոնները և կուլտուրայի այլ օջախներ։*

*Հայկական ՍՍՀ-ն ունի իր պետական գերբը, պետական դրոշը և իր մայրաքաղաքը, որոնք խորհրդանշում են նրա սուվերենությունը։*

*Հայկական ՍՍՀ սուվերեն իրավունքները, ՍՍՀՄ սահմանադրության 81-րդ հոդվածի համաձայն, պաշտպանվում են ՍՍՀ Միության կողմից։*

*Այսպիսով, ինչպես ՍՍՀՄ սահմանադրությունը, այնպես էլ Հայկական ՍՍՀ հիմնական օրենքն արտացոլում են սովետների երկրի նյութական ու հոգևոր կյանքի ինտերնացիոնալացման այն պրոցեսի ավելի բարձր աստիճանը, որը զարգանում է հասուն սոցիալիզմի պայմաններում հիրավի դեմոկրատական ձևերով։*

*Սովետական սահմանադրությունների ազգային-պետական կառուցվածքին վերաբերող նոր նորմերն ու դրույթներն արտահայտում են զարգացման արդի փուլը, երբ միութենական հանրապետությունների համակողմանի զարգացումն ուղեկցվում է ՍՍՀ Միության՝ իբրև միութենական պետության, հետագա ամրապնդմամբ, որն իր հերթին նպաստում է բոլոր միութենական հանրապետությունների՝ իբրև ազգային պետությունների, հետագա զարգացմանն ու բարգավաճմանը։*

*Միաժամանակ, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի վերոհիշյալ որոշման մեջ, «կյանքը համոզում է՝ ՍՍՀ Միությունը սովետական ազգերի և ազգությունների պետական միավորման դինամիկ և արդյունավետ ձև է, որը նկատի է առնված սոցիալիստական պետականությունը աստիճանաբար կոմունիստական հասարակական ինքնակառավարման վերաճելու պատմական ամբողջ ժամանակաշրջանի համար»։*

---

# ՍՍՀՄ-Ը ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՆԱՌԻԿ ԱՄՐՈՑՆ Է

**Ա. Գ. ԱԴՈՅԱՆ**

ՏՈԳՈՐՎԱԾ ՍՄԿԿ XXVI համագումարի կենսահաստատ իմաստնությամբ, սովետական ժողովուրդը ջանք չի խնայում կենսագործելու ընթացիկ հնգամյակի խոշորագույն պլանները։ Սովետական մարդիկ քաջ գիտեն, որ այդ վիթխարի ծրագրերի իրականացումը կատարվում է միջազգային իմպերիալիզմի հրահրած, ուժգնացող լարվածության պայմաններում։ Ստեղծված իրավիճակը յուրաքանչյուր աշխատավորից պահանջում է սահմանված պլանների կատարում ու գերակատարում, կուռ կարգապահություն, հասարակական պարտականությունների անթերի կենսագործում։

Պատմության դասերը ցույց են տալիս, որ կապիտալիզմի արագ ընթացքը տեխնիկայի ու արտադրության բոլոր աշխատողներին դարերով գամել է գործազրկության ու դասակարգային զարհուրելի կեղեքման, պարբերական և անվերջ խորացող ճգնաժամերի, ինֆլյացիայի «պարսպին»։ Կապիտալիստական «դրախտի» համամարդկային ապրելակերպի բացասական գնահատականը տվել են աշխարհի բոլոր ժողովուրդների պրոգրեսիվ մտածողներն ու գրողները, քաղաքական գործիչները։

Ոչ ոք չի կարող հերքել, որ իմպերիալիզմի մարդակուլ բորենիները չեն հաշտվում այն իրողության հետ, որ փաշիզմի ջախջախմամբ աշխարհն արդեն ընթանում է Հոկտեմբերի, կոմունիզմի հունով։ Այո՛, ներքին և արտաքին անհաղթահարելի ընդվզումներից փլուզվում է զառամյալ կապիտալի աշխարհը։ Աշխարհ, որը թավալված է իր գոյությամբ հարուցած արյան և ընչաքաղցության, դրամատենչության ու մարդկանց բարոյական վերասերման ճահճում։

Եվ ի՞նչ։ Բանը հասել է այնտեղ, որ ԱՄՆ-ն ու իրենց շահակիցները սեփական գոյության հույսն ու ապավենը համարում են ջերմամիջուկային հրեշավոր զենքերի կույտը։ Իհարկե, պարոնայք ռեյգանները ցավատանջ մտորումներից հետո հիշեցին, որ երկու հրատապ անելիք ևս կա։ Օրը ցերեկով, հարայհրոցով, ընպառնալիքներով ու մեծագույն ծախսերի գնով, նողկալի զրպարտություններով մարդկության ատյանի առջև ստել, թե աշխարհին կոմունիզմի, սովետիզմի վտանգն է սպառնում։ Եվ այդ անում են այն արկածախնդիրները, որոնք միշտ իրենց զանգվածային հակառակորդների բերանները փակում են «քաղաքակրթության» զենքի օգնությամբ։

Կարծեք թե հանճարեղ Հեգելն այսօրվա համար է գրել՝ ժողովուրդներն ու նրանց պետությունները պատմությունից դասեր չեն առնում։ Հիրավի, Մեծ հոկտեմբերի լուսավառ արևի ճառագայթներից կուրացած ԱՄՆ-ի պարոնայք «հանրապետական» միապետները որոշել են չունկնդրել բազմափորձ և ռեալ պատմության ձայնին՝ խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքին։

Եվ ահա, ձևացնելով, թե չեն անում փոթորկած բազում ազգերի ու ժողովուրդների ըմբոստության որոտները, ռազմատենչ Ռեյգանը վճռել է նատոյական համախոհների հետ Եվրոպայի բեմում մի այնպիսի ողբերգություն բեմադրել, որի դիտողները չկարողանան նույնիսկ երանի տալ Դանթեի «Դժոխքի», Հռոմի փլատակների, Բաբելոնյան աշտարակի ավերակների «փրկվածներին»։

Կուսակցության XXVI համագումարի հեղինակավոր ամբիոնից, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մեր կուսակցությունը մեկ անգամ ևս ապացուցեց, որ սովետական ժողովուրդը ոչ միայն ցանկություն, այլև քաղաքական կամք ունի ամեն ինչ անելու հանուն խաղաղության՝ կայուն, անսասան խաղաղության»։ Այնուհետև եզրակացրեց, որ «Խաղաղության հակառակորդների պլաններն անտարակույս կվիժեցվեն»։

Պատմության առաջընթացը հաստատեց, որ վերջին տասը տարում կապիտալիզմը երրորդ տնտեսական անկումն է ապրում, բնավ չկարողանալով կասեցնել վիթխարի մասշտաբների վերընթաց ինֆլյացիան, գների 2,3 անգամ բարձրացումը։ Ահա թե ինչու Ռեյգանը հայտարարել է, թե «ազգային պատմության ըն-

թացքում սա ամենավատթարն է, որն սպառնում է սասանել միլիոնավոր ամերիկացիների «կյանքի բուն հիմքերը»:

Մինչդեռ սոցիալիզմը կենդանի է: Այն զարգանում է, անշեղորեն առաջ ընթանում: Եվ մենք ոչ թե պարզապես հավատում ենք, այլ հաստատ գիտենք,— ասում է ընկեր Բրեժնևը,— կկատարվի նաև մեր բարձրագույն նպատակը՝ կկառուցվի կոմունիստական հասարակությունը:

Արդ, ելնելով մեր առաջընթացի ներկա փուլից, իմաստավորելով անվիճելի հաջողությունները նոր մարդու դաստիարակության մարզում, կուսակցությունը պահանջեց նոր աստիճանի բարձրացնել զանգվածների գաղափարաքաղաքական, բարոյադաստիարակչական մակարդակը: ՍՄԿԿ XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Ըստ էության խոսքը վերաբերում է գաղափարախոսական աշխատանքի շատ տեղամասերի ու ոլորտների վերակառուցմանը... Հարկավոր է հասնել այն բանին, որ այդ աշխատանքի բովանդակությունը լինի առավել հրատապ, իսկ ձևերը համապատասխանեն սովետական մարդկանց արդի պահանջմունքներին ու ձգտումներին»:

Ժամանակի հրամայականն է՝ սևեռուն ուշադրություն նվիրել քաղաքականության և էկոնոմիկայի այժմեական խնդիրներին: Այս ամենն անմիջականորեն վերաբերում են նաև մեզ՝ ժուռնալիստներիս, գաղափարախոսական ճակատի բոլոր աշխատողներիս:

Կուսակցությունն անվերապահորեն պահանջում է, որ պրոպագանդան **չշրջանցի սուր թեմաները**, չերկնչի շոշափելու, այսպես կոչված, դժվարին հարցերը: «Մեր կուսակցության քաղաքականությունը,— օրինական հպարտությամբ ասաց ընկեր Բրեժնևը,— պարզ է: Եվ մենք պատրաստ ենք պատասխանելու ամեն մի հարցի, որը ծագում է սովետական մարդկանց շրջանում: Հարկավոր է դա անել համարձակորեն, հիշելով, որ եթե մենք դրանց չենք պատասխանում, ապա մեր երկրի թշնամիները կջանան դրանից օգտվել սոցիալիզմը զրպարտելու միտումով: Գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքը պետք է վարվի հետաքրքրական ու աշխույժ, առանց շաբլոն ֆրազների և պատրաստի ֆորմուլաների ստանդարտ հավաքածուի: Սովետական մարդը կիրթ, կուլտուրական մարդ է: Եվ երբ նրա հետ սկըսում են խոսել ոչ խելացի, ձևական-պաշտոնական լեզվով, կյանքի հետ, ռեալ փաստերի հետ կոնկրետ կապի փոխարեն բավարարվում են ընդհանուր ֆրազներով, ապա նա պարզապես անջատում է հեռացույցը կամ ռադիոն, մի կողմ է դնում թերթը»:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի այս ցուցումները և «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման դրույթները ելակետային են կոմունիստական դաստիարակության ողջ գործը, մասնավորապես պրոպագանդան ու ագիտացիան նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու կոնկրետ մեթոդների ու միջոցների մշակման ու պրակտիկայում արմատավորելու համար: Ընդ որում այստեղ հարկավոր է խորապես գիտակցել, որ գաղափարախոսական **գործունեության վերակառուցումը** կարճատև կամպանիա չէ, այլ շատ տարիների համար նախատեսված բազմակողմանի ու քրտնաջան աշխատանք, որն օբյեկտիվորեն պայմանավորված է ինչպես սովետական հասարակարգի առաջընթացով, նույնպես և ողջ համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացմամբ: Ուստի այդ վերակառուցումը հարկավոր է իրականացնել հիմնավորապես, հեռանկարով:

Եվ այսպես. համաշխարհային հեղափոխական պրոցեսի վերընթացը ևս մեզնից, որպես լենինյան վսեմ գաղափարների սերմնացաններից, պահանջում է միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումների բուռն ընթացքի խոր ու համակողմանի իմացություն: Սա մեր առօրյա բարոյաքաղաքական պարտականությունն է, աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության մի կենսատու աղբյուր:

Այս առումով, բացառիկ հաջող և, անշուշտ, ուսանելի է վերջերս լույս տեսած իրոք արժույթավոր և հրատապ մի գիրք՝ **Սովետական Միությունը ամերիկացիների աչքերով: 1917—1977***: Լենինյան դարի վիթխարի իրադարձությունների այս ճշմարտացի ու կենդանի անդրադարձումը կազմել ու խմբագրել է (բովանդակալի առաջաբանով) Ի. Մ. Կրասնովը: Հեղինակին հաջողվել է լենինյան ոգով համակել և բացահայտել մեծ Հոկտեմբերի ու նրա անմահ նավավարի համաշխարհային հեղինակության անզուգական վեհությունը: Ժողովված բազում նյութերի թե՛ ընտրությունը, թե՛ ամփոփումները կատարվել են ժուռնալիստական վարպետությամբ: Փոքր-ինչ խորհուն ընթերցողն անգամ այս գողտրիկ էպոպեան կարդալիս ողջ էությամբ կհամակվի մեծագույն մարդասեր կոմունիստի՝ Վ. Ի. Լենինի աշխարհափոխ գաղափարներով:

Ընթերցողները հետաքրքրությամբ կկարդան լենինիզմին հարող ամերիկյան առաջավոր հասարակական գործիչներին: Ուրախությամբ պետք է կարևորել գրքում սևեռված ամերիկյան

* Советский Союз глазами американцев 1917—1977. М., 1979.



կոմունիստ և պրոգրեսիվ մտածողների իմաստալի, անկեղծ ու հոգեցունց խոսքը: Ով կամենում է շոշափել ու վերապրել մեծ Լենինի անմահության գաղտնիքն ու հմայքը ողջ աշխարհի կեղեքյալների բանակներում, թող կարդա այս ուշագրավ գեղագործությունը: Ցանկալի է այն թարգմանել հայերեն և էկրանավորել ոչ պակաս վարպետությամբ, քան Կուլիջանովն է մարմնավորել երիտասարդ Մարքսի կյանքն իր սքանչելի նկարում:

Գրքում զետեղված փաստաթղթերն ու նյութերը քաղված են ԱՄՆ-ի արխիվներից, կոմունիստական ու բանվորական մամուլի էջերից, այլ հրատարակություններից, որոնք ռուսերեն հրապարակվում են առաջին անգամ: Դրանք պերճախոս պատմում են այն մասին, թե Ամերիկայում մարդիկ ինչպես են ընկալել սովետական երկրում կատարված դարակազմիկ իրադարձությունները:

Հոկտեմբերի հաղթությամբ հաստատված առաջին սոցիալիստական բանվորագյուղացիական պետության գոյավորմամբ,— գրել է Վ. Ի. Լենինը,— նոր դարաշրջանի աշխատավորական զանգվածները ձեռնարկեցին տևական պայքար՝ ժողովուրդներին իմպերիալիզմից ազատագրելու, նրանց միջև եղած կռիվները դադարեցնելու, հանուն սոցիալիզմի հաղթանակի կապիտալի իշխանությունը խորտակելու: Հոկտեմբերի վիթխարի ազդեցությունը ողջ աշխարհի ժողովուրդների հասարակական կյանքի վրա հսկայական թափով ալեկոծեց միջազգային հեղափոխական, բանվորական, կոմունիստական շարժումը, ազգային-ազատագրական օրավուր բորբոքվող ընդվզումները: ԱՄՆ-ի բանվոր դասակարգը, աշխատավոր ֆերմերները, պրոգրեսիվ մտավորականությունը հոծ զանգվածներով ողջունեցին ռուսաստանյան բանավորների ու աշխատավոր գյուղացիության աննախընթաց հաղթանակը: Անմոռանալի է և խիստ բնորոշ, որ սրտագին մաղթանքներ հղելով հեղափոխական Ռուսաստանին, նրանք միաժամանակ նաև գործնականապես օգնեցին, երբ միջազգային իմպերիալիզմը, ներառյալ և ամերիկյանը, փորձեց «ռուսաստանյան հեղափոխությունը խեղդել օրորոցում»:

Վերջին երկու տասնամյակներում վարձու ստրկության հայրենիքը չի կարողանում խճճված իր կծիկը քանդել: Ահա թե ինչու Գ. Քիսինջերն ստիպված է խոստովանել, թե «ընթացիկ ճգնաժամի ծանրագույն հետևանքը (1974—1975 թթ.) ոչ թե տնտեսական է իր պրոբլեմներով, այլ մարդկային զանգվածների այլասերումն է իրենց հասարակության մըղմամբ: Դա ողջ արևմտյան աշխարհն ընդգըրկած դեմոկրատիայի ճգնաժամն է, որը լուրջ մարտակոչ է իրենց պարագլուխների հանդեպ»: Պակաս տագնապալի չէ նույն Քիսինջերի երկխոսությունը (1978 թ.) սենատոր Պ. Մոյնիխենի հետ: Երկուսն էլ հանգել են նույն ախտորոշման... «Վիետնամում կրած վիթխարի պարտությունից հետո ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության հիերարխիան, որը երկրորդ համաշխարհային պատերազմից հետո վարում էր երկրի արտաքին քաղաքականությունը, ինքնատիրապետման յուրակերպ կորուստ ապրեց»: ԱՄՆ-ի հայտնի գիտնական Դ. Բելլը ևս գրել է, որ Ամերիկայում իշխող էլիթը կորցրել է ինքնատիրապետումը: Մերձակա 10—20 տարիներում պետք է սպասել քաղաքական կարգի ճգնաժամի խորացում և արևմուտքին հատուկ կուսակցական սիստեմի փլուզում:

Այժմ արդեն բնորոշ է Ռեյգանի հետևությունը: Մենք տակավին մոլորվում ենք խուլ անտառում, ասել է նա, ու մեզ առջևում ծանր ժամանակներ են սպասում:

Նախորդ պրեզիդենտ Ջ. Քարտերը 1978 թ. խոստովանել է. «Մենք ծանր տասնամյակ ապրեցինք՝ ողբերգական պատերազմ արտասահմանում և խոր պառակտում՝ տանը: Միլիոնավոր անգործներ և մեծագույն ինֆլյացիա քաղաքացիական պատերազմից սկսած, ապօրինի ներխուժում տներում և հեռախոսային զրույցների գաղտնի լսում, պետական նախկին կառավարման նկատմամբ քաղաքացիների հավատի խախտում: Ամերիկացիների մեծ մասը չի հավատում, որ գալիք հինգ տարիները լավ կլինեն, քան նախորդ հնգամյակը: Մեր ժողովրդի նույնիսկ երկու երրորդը չի քվեարկում: Նվազում է ամերիկյան բանվորների աշխատանքային արտադրողականությունը: Աճում է անվստահությունը պետական իշխանության նկատմամբ: ԱՄՆ-ի քաղաքացիների ու կառավարության միջև նման խզում չի եղել, ինչպես հիմա»:

Այս ամենը ևս անկման վկայություններ են:

Սխալված կլինենք, եթե պատկերացնենք, որ Հոկտեմբերի առինքնող ճշմարտության սիմֆոնիայի հոգեցունց «Հերոսականը» դյուրությամբ թափանցեց ամերիկյան ժողովրդի սրտի խորքերը. բուրժուական ստին ապավինած մարդկանց հավատի դարավոր պանթեոնն արդեն աղտոտված էր: Ահա թե ինչու երիցս իրավ է գրքի հեղինակը, շեշտելով, թե որպիսի՜ ազնվագույն և անգնահատելի ինտերնացիոնալիստական ջանքեր թափեցին Ջոն Ռիդն ու նրա կինը՝ Լուիզա Բրայանտը, Ռիս Վիլյամսը, Ցուշին Դեբսը, Էլլա Ռիվ Բլուրը, Արտ Ծիլդսը, Ռոբերտ Մայնորը, Էլիզաբեթ Ֆլինը, Ուիլյամ Ֆոստերը, Ուիլյամ Հեյվուդը, Իզրաիլ Ամտերը, Ռոուզ Պաստոր Ստոուկսը, Լուի Էնգդալը, Պոլ Ռոբսոնը, Կորլիս Լամոնտը, Ջեսիկա Սմիթը,

Յուջին Դեբսը, Հենրի Ուինստոնը, Գես Հոլը և շատերը ոչ միայն հանուն Ռուսաստանի ու ԱՄՆ-ի, այլև բոլոր երկրների բանվորական շարժման առաջընթացի:

Աշխարհին հայտնի սոցիալիստ Յուջին Դեբսը հպարտորեն ազդարարել է, որ ինքը ոտքից գլուխ բոլշևիկ է: Տալլավին 1922 թ. գրած հոդվածում նշել է. «Ռուսական հեղափոխությունը պատմության մեջ կմնա որպես մարդկության մեծագույն հասում»: Իսկ ականավոր սոցիալիստուհի Ռոուզ Պ. Ստոուկսը, խորապես հավատալով սովետական երկրի ապագային, 1918 թ. գրել է. Ռուսաստանում վառված ազատության ջահը կլուսավորի ողջ աշխարհը, ու կապիտալիզմի մութ գիշերը կցնդի:

Ամերիկյան բանվորական ու կոմունիստական շարժման երևելի գործիչ Ուիլյամ Ֆոստերն անդրադառնալով Հոկտեմբերյան հեղափոխության ընթացքին՝ նշել է, որ այդ հեղափոխությունն **արմատապես փոխեց** միջազգային դրությունը, անդառնալիորեն երկփեղկեց իմպերիալիստական աշխարհի շենքը և ուղի հարթեց ժողովուրդների ուժգնացող դեմոկրատական շարժման համար: Այն վիթխարի չափով խթանեց համաշխարհային սոցիալիզմի արմատավորմանը, ընդգրկելով աշխարհի բնակչության մոտ մեկ երրորդը:

Անհերքելի է, որ ՍՍՀՄ-ի հաղթանակներին վերաբերող փաստաթղթերն անօրինակ ճշգրտությամբ հաստատում են հեղափոխության հարուցած բոլոր տեղաշարժերի ստեղծագործական խոր բնույթը: 1920 թ. ապրիլի 25-ին ԱՄՆ-ի կոմկուսի Կենտկոմի կոչում ասված է՝ «Կեցցե՛ն սովետները»: «Ռուսաստանի բանվորների աքանչելի հասումների շնորհիվ արդեն սկսվել է միջազգային կապիտալիզմի գահավիժումը»: Բարձր գնահատելով սոցիալիզմի կառուցման վիթխարի հաջողությունները ՍՍՀՄ-ում, արծարծելով մեծ Հոկտեմբերի գլխավոր միտումը՝ ԱՄՆ-ի կոմկուսի ազգային նախագահ Հենրի Ուինստոնն ամենայն հստակությամբ շեշտեց, որ պատմության այդ նոր ուղղությունն անդառնալի է, անմահ Լենինի հանճարը ապացուցեց, որ կարելի է վերջ տալ կապիտալիստական շահագործմանը, ազգային կեղեքումներին և օտարերկրյա իշխանությանը:

Այս եզրակացության անժխտելի ապացույցներից է այն կարճատև ու բուռն պայքարը, որպիսին մղեցին ԱՄՆ-ի բանվորները և առաջավոր բազում աշխատավորներ, մաքառելով (1918—1924 թթ.) ինտերվենցիայի դեմ և հանուն սովետների ճանաչման: Ի դերև ելան Ամերիկայի և Անգլիայի ճիգերը ժամանակավոր կառավարության ուժով կասեցնելու սոցիալիստական հեղափոխության առաջընթացը: Իմպերիալիզմը չդիմացավ հեղափոխության խորտակիչ հարվածներին: Բոլորը գիտեն,— գրել է Վ. Ի. Լենինը,— որ միայն Անտանտի օգնության շնորհիվ մեր դեմ ելան սպիտակգվարդիականներն արևմուտքում, հարավում, արևելքում:

«Նյու-Յորք իվնինգ Քոլ» սոցիալիստական լրագիրը 1918 թ. օգոստոսի 1-ին գրել է. «ԱՄՆ-ի զորքերն ակտիվ մասնակցեցին սովետական իշխանության ճնշմանը Մուրմանսկում, Արխանգելսկում և Հեռավոր Արևելքում»:

ԱՄՆ-ի բանվորները բազմիցս ցույցերով պահանջեցին կառավարությունից ետ կանչել ամերիկյան զորքերը սովետական տերիտորիայից, ճանաչել Սովետական Միությունը: Հնչում էր բազմաթիվ պրոգրեսիվ արհմիութենական կազմակերպությունների ձայնը՝ «Ձեռքներդ հեռո՛ւ Սովետական Ռուսաստանից»: Իսկ 1923 թ. ՍՍՀՄ այցելած մի խումբ կոնգրեսմեններ ու սենատորներ պնդեցին, որ ԱՄՆ-ը սկսի առևտրական հարաբերությունները սովետների երկրի հետ, շեշտելով, որ ՍՍՀՄ-ը հաստատուն պետություն է, որի հետ նորմալ հարաբերությունների վերականգնումը օգտակար է ո՛չ միայն ԱՄՆ-ին ու ՍՍՀՄ-ին, այլև ողջ աշխարհին:

Սովետական կարգերի ամրապնդմանը զուգընթաց, ԱՄՆ-ի ռեակցիոն բուրժուական մամուլը ջանք չէր խնայում վարկաբեկելու լենինյան հանճարեղ գործի հաղթանակի վեհությունն ու հավերժականությունը: ԱՄՆ-ի սոցիալիստական ու բանվորական մամուլի ականավոր գործիչ Յուջին Դեբսը, լսելով Լենինի անժամանակ մահվան բոթը, 1924 թ. հայտարարեց. «Ես Լենինին համարում եմ մեծագույն մտածող... Նա մի գլխով բարձր է ուզածդ պետական գործչից... Նրա տեղը պատմության մեջ սահմանված է: Գալիք սերունդների հիշողության մեջ նա կմնա իբրև մեծագույն պետական գործիչ, որպես պայծառ հերոսական անձնավորություն, իբրև աշխատավոր ժողովրդի իրավունքների ու ազատության համար մարտնչող»: Բանվորական կուսակցության ԿԳԿ-ի և երիտասարդ բանվորների շատ հավաքներում հնչեց աշխատավորների ձգտումը մարմնավորող կոչը— Լենինի հիշատակը հարգենք լենինիզմի պրոպագանդմամբ:

Ամերիկյան կոմունիստական շարժման գործիչ Ջեյմս Ջեկսոնը գրել է. Մեր դարն անպայման կնույնանա Լենինի անվան հետ իբրև լենինյան դար, որովհետև մարդկության ողջ պատմության ընթացքում ոչ մի մարդ Լենինի պես չի կանգնել մեծ ու փոթորկալի, ողջ աշխարհը խորապես վերափոխող իրադարձությունների ղեկի մոտ:

Բանվորական ու կոմունիստական շարժման գործիչները սովորել ու շարունակում են սովորել Լենինից: Նրա ուսմունքը ուղենիշ է ամենքի համար: Ես ըմբռնեցի,— գրել է Հենրի Ուինստոնը, որ բանվոր դասակարգի ու իմ ժողովրդի հաղթանակը կլինի միայն մարքս-լենինյան տեսությամբ առաջնորդվող կոմունիստական կուսակցության գոյության դեպքում:

Լենինյան գաղափարների ներգործությունն ամերիկյան բանվորական ու կոմունիստական շարժման վրա՝ ակներև է: Ահա թե ինչու ԱՄՆ-ի կոմկուսի գլխավոր քարտուղար Գես Հոլը շեշտում է, որ մարքսիզմ-լենինիզմը հեղափոխության ուղեցույց աստղն է: Մարդկությունը Լենինին պարտ է նրանով, որ նրանց առջև բացեց հեղափոխական այնպիսի հասարակարգի անցման ուղիներ, ուր չկա թշվառություն, ռասիզմ, մարդկային անձի բթացում, ուր երբեք պատերազմ չի լինի: Ամբողջ աշխարհը գիտե, որ Լենինի և կուսակցության անդուլ ջանքերով միայն հնարավոր դարձավ Բրեստի խաղաղության պայմանագրի կնքումը, որի շնորհիվ երկիրը կարողացավ հանգիստ շունչ քաշել: Սակայն շուտով քաղաքացիական կռվի ու արտասահմանյան ինտերվենցիայի պատճառով այդ խաղաղ դադարը խափանվեց: Երկրի տնտեսությունը հասավ փլուզման: Սովետական ժողովուրդը կոմկուսի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ քայքայված տնտեսության վերականգնմանը:

1921 թ. Ուիլյամ Ֆոստերը գալով ՍՍՀՄ, գրել է. «Ռուսաստան ուղևորվելու շնորհիվ իմ հավատը ռուսական հեղափոխության հանդեպ անչափ ամրապնդվեց: Այժմ ես վստահ եմ, որ այն կիրագործի իր մեծ խնդիրը և **Ռուսաստանում ռեակցիան այլևս չի հաղթանակի:** Այսօր գլխավոր պրոբլեմը տնտեսականն է: Ողջ աշխարհի արդյունաբերական փորձագետները գտնում են, որ դա կոմունիստներին լուծել չի հաջողվի...»: Իրականությունը ցրեց մտքի այդ խավարը, որին ականատես եղավ ամբողջ աշխարհը: Նոր տնտեսության կառուցմամբ նրանք կերտեցին նոր հասարակարգ: Սա է ռեալ իրողությունը: Լենինի ճշմարիտ ցուցումով նրանք Ռուսաստանը դարձրին աշխարհի հզորագույն ինդուստրիալ, կոլեկտիվ սոցիալիստական ու կուլտուրայի հարատև վերընթաց ապրող սովետական երկիր: Սա անհերքելի է:

Կապիտալի խոշոր երկրների աջակցությամբ, սոցիալիզմի բուռն վերելքի տարիներին ֆաշիստական Գերմանիան հարձակվեց մեր երկրի վրա: Ֆաշիզմի դեմ մղված դաժան պատերազմում ՍՍՀՄ-ն ունեցավ 20 միլիոն մարդկային զոհ և 2 տրիլիոն 600 միլիարդ ռուբլու (նախապատերազմյան գներով) նյութական կորուստներ: Ամերիկյան հրապարակախոս Ուիլյամ Մենդելը 1947 թ. գրել է, որ Սովետական Միության էկոնոմիկայի վերականգնման տեմպերը հետպատերազմյան հնգամյակում նշանակալի չափով գերազանցում են բոլոր երկրների տնտեսական զարգացման տեմպերին: Իր մասշտաբով դա ցնցող տպավորություն է թողնում հասկացողի վրա: Հիրավի, մեր երկրի թշնամիները չեն կարող հերքել, որ ՍՍՀՄ-ի հաղթանակը ֆաշիզմի դեմ մղած կռվում արմատական փոփոխություններ հարուցեց ողջ աշխարհում, բարձրացավ սովետական պետության միջազգային հեղինակությունը, խորացավ կապիտալիզմի համընդհանուր ճգնաժամը:

Գիտության ու տեխնիկայի բնագավառում ՍՍՀՄ-ի սքանչելի հասումներից մեկի՝ երկրի արհեստական արբանյակի արձակման մասին, Ուիլյամ Զ. Ֆոստերը 1957 թ. հոկտեմբերի 8-ին նկատել է, որ ՍՍՀՄ-ում երկրի արհեստական արբանյակի արձակումը բոլորի կարծիքով գիտական հսկայական նշանակություն ունեցող իրադարձություն է, որը գիտական հասումների նոր դարաշրջան է բացում: Սա ևս տեխնիկական և այլ առումով սոցիալիստական սիստեմի առավելության հոյակապ ապացույցն է կապիտալիզմի նկատմամբ: Ողջ աշխարհի պրոգրեսիվ մարդիկ ողջունում են այդ զարմանահրաշ իրողությունը:

Քսան տարի առաջ Էլիզաբեթ Հերլի Ֆլինը «Ողջույն ՍՍՀՄ-ին» խորագրով հոդվածում նշել է. «Նոր հասարակությունն իր իսկ ապրելակերպին համեմատ նոր մարդ է ստեղծում՝ սոցիալիստական ֆորմացիայի մարդ: Ես ողջունում եմ այդ սքանչելի մարդկանց իրենց մեծ տոնի առթիվ, մարդիկ, որոնք հպարտ են, բայց ոչ պարծենկոտ, պրոլետարական խոր ինտերնացիոնալիզմի զգացմունքով տոգորված հայրենասերներ, համբերատար, զայրույթին ոչ անձնատուր, այլ բոլոր ժողովուրդներին հասկանալ ջանացող»:

Իրավ է Գես Հոլը, ասելով. Երկու սիստեմների գլխավոր տարբերությունն այն է, որ կապիտալիզմը շարժվում է դեպի գերմեծ կարողություններ և **նվազ սպառումներ**, այսինքն՝ **թշվառության և հարստության առավել շատ բևեռայնացում.** մինչդեռ սոցիալիզմն ընթանում է դեպի կարողության ավելացում՝ հանուն առատության **ամենքի համար:** Մի սիստեմն ավելացնում է արտադրականությունները՝ **քչերի շահույթների** աճման համար, իսկ երկրորդը՝ **ամենքին բավարարելու համար:**

ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռեյգանի ձեռնածությունները դրա անհերքելի ապացույցն են այսօր, երբ աշխատավորներից կորզած հարյուրավոր միլիարդ դոլարները տրամադրում է կապիտալիստներին, որպեսզի մարդկության ոչնչացման համար նոր զենքեր ու թունավոր նյութեր արտադրվեն: Քսաներորդ դարի հա-

կամարդկային գազանությունները կապիտալիզմի էությունից են բխում:

Ուշագրավ է այն իրողությունը, որ ԱՄՆ-ի շատ պրոգրեսիվ գիտնականներ, ժուռնալիստներ և այլ գործիչներ հաճախակի հանդես են գալիս բուրժուական կարգերի երկրպագուների ու ջատագովների կեղծարարությունների մերկացմամբ: Օրինակ, պատմագետ Ուիլյամ Պոմրոյը գրել է. «Կապիտալիստական պրոպագանդան ճգնում է խեղաթյուրել այն ամենը, ինչ վերաբերում է Սովետական Միությանը, այն պարզ պատճառով, որ այն ամենաառաջավոր և ամենահզոր էկոնոմիկան ունի սոցիալիստական բոլոր երկրների սիստեմում»: Տնտեսագետ Դևիդ Լեյքմանը «Նյու-Ուորլդ ռևյու» ամսագրում նշել է. ...Վաղուց առաջին տեղը գրավելով հիդրոէներգետիկայում, ՍՍՀՄ-ը վերջերս դարձավ պողպատի ու նավթի խոշորագույն արտադրողը, զարգացրեց առաջնակարգ էլեկտրոնային և մեքենաշինական արդյունաբերությունն ու տեխնոլոգիան, հասավ էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի արտադրության ծաղկման. կարճ ասած, տեխնիկական ու տնտեսական հիմքերը դրեց կոսմիկական հետազոտությունների, մի բնագավառ, որի պիոներն է ինքը, և որը կարող է սովետական բոլոր հասումների խորհրդանիշը լինել: Եվ ամենակարևորը՝ սոցիալիստական էկոնոմիկայի այդ նվաճումներին չեն ուղեկցել բացասական այնպիսի գործոններ, որպիսիք են անգործությունն ու ինֆլյացիան, միայնակ ծերության սարսափը:

Պրոգրեսիվ ամերիկացիների կարծիքով սովետական երկրի ամենագլխավոր հասումը **հոգածությունն է ժողովրդի բարօրության համար,** բոլոր նրանց համար, ովքեր չգիտեն, թե ինչ է գործազրկությունը: Սովետական սիստեմը լիովին նպաստում է մարդու հոգևոր աճին: Նրանք ասում են, որ ձեր երկրում 1928 թվականից ոչ մի անգործ մարդ չկա, մի բան, որը մեզ համար տեսական երազանք է:

Ոգևորված մեր երկրի հոգևոր կյանքի հասումներով, Ջորջ Ֆրիմենը գրել է. «Սովետական երկրում վերջին 15 տարիներին կատարված կուլտուրական հեղափոխությունը չի կարելի այլ կերպ կոչել, քան **ամբողջ ժողովրդի վերածնունդ**: Ոչ միայն անօրինակ վերափոխություններ են կատարվել գիտելիքներում, 160 միլիոն մարդկանց հասկացություններում և ապրելակերպում, այլև ստեղծվել են կուլտուրական նոր արժույթներ: Կուլտուրական այդ հեղափոխության կենտրոնն ու խորհրդանիշը բանվորն է, որը ձգտելով նոր խնդիրներ լուծել, նոր մակարդակի է բարձրացնում գյուղացուն ևս»:

Սովետական իշխանությունը երաժշտության ամենաերևելի մեկենասն է աշխարհում: Ո՛չ մի պետություն արվեստի այդպիսի բարեկամ չէ, ո՛չ մի երկրում կուլտուրան այնպես չի խրախուսվում, ինչպես ՍՍՀՄ-ում: Ես երբեք չեմ հանդիպել նման կուլտուրական դեմոկրատիայի, և այն երջանկացնում է,— գրել է հայտնի երգչուհի Էմմա Ռեդելը:

1971 թ. սևամորթ ամերիկացի Ջորջ Մերֆին, այցելելով մեր հայրենիքը, եզրակացրել է. «Սովետական Միությունում իմ տեսածները նախ և առաջ ինձ սովորեցրին, որ ազգային հարցը, ռասայի հարցը կլուծվի սոսկ այն դեպքում, երբ մեր երկրի կամ ուզածդ կապիտալիստական երկրի ազգային փոքրամասնությունները կգիտակցեն, որ և ոչ մի ազգային փոքրամասնություն չի կարող ազատագրվել՝ առանց բանվոր դասակարգի ու բոլոր ազգերի և ռասայի մարդկանց հետ միավորվելու: Ահա այս պարագայում միայն կհաղթեն ազատությունը, արդարությունը և խաղաղությունը»:

Բնորոշ է, որ նույն միտքն է արծարծել մեր երկրի հավատարիմ բարեկամ Ջեսիկա Սմիթն իր «Սովետական Միությունը հիսնամյակի օրը» խորագրով հոդվածում: Այնտեղ կարդում ենք. Լուսաբանելով սովետական ազգային քաղաքականությունը և այդ քաղաքականության գործնական կիրառումն իր բոլոր պրոբլեմներով, դժվարություններով ու փայլուն հասումներով հանդերձ, մենք հույս ունենք այդպիսով իսկ օգնել մեր երկրի ժողովրդին սևերի և մյուս ազգային փոքրամասնությունների ազգային կեղեքման դեմ մղած պայքարում: Հիրավի, ՍՍՀՄ ժողովուրդների խաղաղատենչության ու բարեկամության ձգտումներն ամրակայված, օրինականացված ու մարմնավորված են ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ: Դա ամենադեմոկրատականն է աշխարհում:

Սովետական Միության բազմաբնույթ հզորությունն աշխարհին հայտնի դարձավ հատկապես Մեծ հայրենականի տարիներին, երբ ջախջախվեցին արյունախում ֆաշիզմի հորդաները, երբ սովետական հաղթական բանակը մարդկությանը փրկեց ֆաշիստական բորենու գազանաբարո արշավանքներից: Այս առումով բնորոշ է ԱՄՆ-ի կառավարական միսիայի անդամ Ուիլյամ Բետի տպավորությունը: 1941 թ. Մոսկվայում եղած ժամանակ նա գրել է. Մեկնելով Մոսկվայից, ես ցանկանում էի միայն մի հարցի պատասխանը ստանալ՝ Ռուսաստանը հուսալի, բանիմաց դաշնակի՞ց է, արդյոք, որի հետ պետք է աշխատակցել և ըստ հնարավորին զինակցել ռազմական տեխնիկայով: Եվ ես ստացա այս հարցի չափազանց դրական պատասխանը: Ամերիկյան ժողովուրդը ողջունեց ԱՄՆ-ի օգնությունը ՍՍՀՄ-ին:

Հարկ է նշել, որ տակավին պատերազմից առաջ ԱՄՆ-ում բավականին տարածված էին



թյուր պատկերացումներ ու հերյուրանքներ ՍՍՀՄ-ի հասցեին: Սակայն Հայրենական պատերազմի աշխարհացունց որոտները շուտով հերքեցին կապիտալիստական պրոպագանդայի գրպարտանքները: Ահա թե 1942 թ. ինչ է գրել սովետական ժողովրդի ջերմ բարեկամ Ռիս Վիլյամսը. արժույթների այդ վերագնահատումը, իհարկե, կատարվեց միայն կարմիր բանակի շնորհիվ: Ցրելով ֆաշիստների անպարտելիության առասպելը, այն ցրեց նաև Սովետական Միության ու նրա ժողովուրդների մասին մի շարք այլ առասպելներ: Բայց ամենագլխավոր առասպելը, որ ցրեց կարմիր բանակը, վերաբերում է միայն իրեն, դա նրա թուլության և կռվելու անկարողության առասպելն էր... Պատերազմի ընթացքում եղած շրջադարձը, կարմիր բանակի հակահարձակման անցնելը Մոսկվայի դարպասների մոտ, գեներալ Մակարտուրը բնորոշեց իբրև «պատմության մեջ իր մասշտաբներով ու վեհությամբ չընտեսնված ամենավիթխարի նվաճում»:

Տակավին 1948 թ. ԱՄՆ-ի ազգային անվտանգության խորհուրդը որոշել էր «Քաղաքական, ռազմական ու հոգեբանական առումով թուլացնել Սովետական Միությունը և թողնել նրան այդ վիճակում»: Այս նենգադավությամբ ամերիկյան պարագլուխները երազել էին զոդվել գերմանական ֆաշիզմի տականքների հետ: Նրանք մեկ այլ պլանի համաձայն, մեր հայրենիքը նվաճելու միտումով, նախատեսել էին առանձնացնել մոտ մեկ միլիոն ցամաքային զորք, նրանց տրամադրելով հզոր ավիամիավորումներ ու տրանսպորտային միջոցներ: Նախատեսված է եղել օկուպանտներին տեղավորել՝ Մոսկվայում երկու դիվիզիա, իսկ մեկական՝ Լենինգրադում, Մինսկում, Կիևում, Օդեսայում, Սվերդլովսկում, Տաշքենդում, Օմսկում, Խաբարովսկում, Վլադիվոստոկում և մյուս քաղաքներում: Իսկ ԱՄՆ-ի ավիակիրները լողալու էին Սև ու Բալթիկ ծովերում:

Իմպերիալիզմի գահավիժման ակնբախ ապացույց եղավ նրա պարտությունը Կորեայում. Վիետնամում, Լաոսում, Կամպուչիայում և այլուր: Գլխակորույս վայրէջքը դրդեց Սպիտակ տանը 1980 թ. օգոստոսին № 59 դիրեկտիվում ազդարարել իր, այսպես կոչված, «միջուկային նոր ստրատեգիան», ըստ որի՝ ընդունելի է միջուկային զենքով պատերազմելը: Սույն վճռի միտումը մեկն է՝ ռազմուժերի գերազանցության հասնելով, ի չիք դարձնել ողջ աշխարհի ցանկալի խաղաղությունը: Հույսի հենարանը դարձավ նեյտրոնային «սահմանափակ» զենքը՝ որպես համակործանարար: Պենտագոնը ինտերվենցիոնիզմը որդեգրեց որպես համաշխարհային հեգեմոնիայի հասնելու միակ միջոց:

Փաստերով հաստատված է, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ն անհապաղ սկսեց պատրաստվել ՍՍՀՄ-ի դեմ ջերմամիջուկային պատերազմի: Եվ դա ցայսօր մնում է ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ելակետը: Ու «Ֆլիտվուդ» կոչված պլանի համաձայն ամերիկյան ռազմուժերը ՍՍՀՄ-ի վրա նետելու էին (ընդհանուր առմամբ) 200 ատոմային և քառորդ միլիոն սովորական ռումբեր: Օդային ռմբակոծման հետևանքով ՍՍՀՄ-ը առաջին փուլում պետք է կորցներ արդյունաբերական պոտենցիալի 30—40 տոկոսը, 2,7 միլիոն մարդկային զոհեր, իսկ այնուհետև՝ 4 միլիոն զոհեր: Ամերիկյան պլանի համաձայն ՍՍՀՄ-ի դեմ կռվելու էին 20 միլիոն զինված ուժեր: 1949 թ. ԱՄՆ-ի ծրագրած խաչակրաց արշավանք կոչվող կռվի պլանով (ՆԱՏՕ-ի և այլ երկրների բոլոր ուժերով), ՍՍՀՄ-ի վրա պետք է նետեին 300 ատոմային և քառորդ միլիոն սովորական ռումբեր: Դրան հաջորդելու էր ՆԱՏՕ-ի 164 դիվիզիաների հարձակումը:

Սակայն հասարակական երկու սիստեմների ուժերի փոփոխությունը դասավորվեց ոչ հօգուտ իմպերիալիզմի: Կյանքը ցույց տվեց իմպերիալիզմի պլանների ավանտյուրիստական էությունը և այն, որ նա ի վիճակի չէ սոցիալիստական և ազգային-ազատագրական հեղափոխություններին դիմագրավել:

Այսօր ևս, երբ սովետական ղեկավարությունը ջանք չի խնայում, որպեսզի իսպառ վերանա պատերազմի վտանգը և չքանան մարդակործան զենքերը, աշխարհի աշխատավորները գիտակցում են, որ ՍՍՀՄ բոլոր ձեռնարկումները խաղաղության պաշտպանության համար, դա նաև իրենց կյանքի պաշտպանությունն է:

Սակայն այս հարցում մագնատների ու միլիարդատերերի ժառանգներն իրենց դասակարգային ագահության տենչը դրսևորել են նաև պատերազմի առնչությամբ: Օրինակ, «Նյու-Յորք թայմս» լրագրում Հարրի Տրումենը 1941 թ. հունիսի 24-ին գրել է. Եթե մենք նկատենք, որ Գերմանիան է հաղթում, ապա պետք է, որ օգնենք Ռուսաստանին, իսկ եթե հաղթելու լինի Ռուսաստանը, ապա անհրաժեշտ է, որ օգնենք Գերմանիային: Այսպիսով, թող որքան հնարավոր է նրանք միմյանց շատ սպանեն: Այս է ամերիկյան արդի որոշ ղեկավարների այսօրվա դավանանքը:

Երբեք չպետք է մոռանալ, որ դեռևս 1919 թ., պատասխանելով «Չիկագո Դեյլի նյուս» լրագրի թղթակցի հարցին, Վ. Ի. Լենինն ասել է. «Մենք վճռականապես կողմնակից ենք Ամերիկայի, բոլոր երկրների, բայց **հատկապես** Ամերիկայի հետ տնտեսական պայմանագիր կնքելուն»: Մի այլ առիթով նշել է. «Թող ամերիկյան կապիտալիստները մեզ ձեռք չտա՛ն:

Մենք նրանց ձեռք չենք տա՛: Մենք նույնիսկ պատրաստ ենք ոսկով հատուցելու նրանց՝ տրանսպորտի և արտադրության օգտակար մեքենաների, գործիքների և այլ բաների համար: Եվ ո՛չ միայն ոսկով, այլև հումքով»: Չնայած այս բանական և օգտակար առաջարկին, միայն 1933 թ. նոյեմբերի 10-ին պրեզիդենտ Ֆ. Դ. Ռուզվելտը ԿԳԿ նախագահ Մ. Ի. Կալինինին հղած ուղերձում ցանկություն հայտնեց վերջ տալ երկու պետությունների միջև եղած աննորմալ հարաբերություններին: Սովետաամերիկյան հարաբերությունները հատկապես զարգացան երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, երբ ստեղծվեց հակահիտլերյան կոալիցիան:

Սակայն պատմության ընթացքը փոխեց իր հունը: Ատոմային ռումբ նետելով Հիրոսիմայի ու Նագասակիի վրա՝ ամերիկյան իմպերիալիզմի պարագլուխները որոնում էին այդպես վարվել և ՍՍՀՄ-ի հետ: Դրա դեմ ծառացած ԱՄՆ-ի պրոգրեսիվ հասարակայնությունը դատապարտեց ռազմամոլ շրջանների այդ հանցագործ մտահղացումը:

Գնդապետ Ռայմոնդ Ռոբինսը 1947 թ. նոյեմբերին գրեց. խավարի բոլոր ուժերը համախմբվեցին միջազգային երրորդ պատերազմ սանձազերծելու և ատոմային ռումբը սովետական տղամարդկանց, կանանց ու երեխաների վրա նետելու նպատակով: Ամերիկյան ժողովուրդն իր վճռական խոսքը պետք է ասի, որպեսզի խափանի այդ պլանները և հարկադրի մեր ղեկավարներին վերադառնալ Ռուզվելտի կիրառած քաղաքական կուրսին՝ Սովետական Միության հետ բարեկամության քաղաքականությանը, որը խաղաղության և մեր սեփական պլաններն Ամերիկայում իրականացնելու հարցում մեր միակ հույսն է:

ԱՄՆ-ի ականավոր հասարակական գործիչ Ջեսիկա Սմիթը «Նյու-Ուորլդ ռևյու» ամսագրում շեշտել է. Մենք մեծ պարտք ունենք Սովետական Միության հանդեպ խաղաղության պաշտպանության անդաղրում նախաձեռնության համար, սկսած Լենինի՝ 1917 թ. ժողովուրդներին ուղղած խաղաղության կոչից մինչև Հելսինկիի պայմանագրի ստորագրումը Լ. Ի. Բրեժնևի գրչով: ՍՄԿԿ հռչակած իդեալները մոտ են բոլոր ժողովուրդներին, այդ թվում նաև ամերիկացիներին: Սովետական ժողովրդի խոր համոզմամբ՝ խաղաղությունն ու սոցիալիզմն անտրոհելի են:

ԱՄՆ-ի Բոստոնի համալսարանի պրոֆեսոր, խաղաղության ջատագով Մարկ Սոլոմոնը գրել է. Եթե պետք լիներ ապացուցել, որ ՍՄԿԿ պատմական XXV համագումարի ուսումնասիրությունն ու վերլուծությունը, դրա տառի ու ոգու լուսաբանումը կենսականորեն անհրաժեշտ են ԱՄՆ-ի ժողովուրդներին, սա զարմանք կհարուցեր, եթե ոչ՝ թշնամանք: Բայց և այնպես դա ճշմարիտ է և ժամանակի ընթացքում կդառնա առավել հրամայական անհրաժեշտություն: Հակասովետիզմը և հակակոմունիզմը,— շարունակում է նա,— մնում են ռեակցիայի գլխավոր զենքը... Ի պատիվ ամերիկացիների մեծ մասի, կարելի է ասել, որ նրանք չեն հրաժարվել խաղաղության և ողջ աշխարհի բարգավաճման իդեալից, որը հիմնըված է պետությունների համագործակցության և աշխատակցության վրա: ԱՄՆ-ի պրոգրեսիվ ուժերի համար հիրավի կարևոր խնդիր է ամերիկյան ժողովրդին հասկացնել ճշմարտությունը: Գիտենալ ճշմարտությունը ՍՍՀՄ-ի, սոցիալիստական դեմոկրատիայի վերաբերյալ, համոզվել, որ այնտեղ նյութական ողջ հարստությունը պատկանում է **ժողովրդին, ոչ թե մի խումբ միլիոնատերերի ու միլիարդատերերի,** նշանակում է հույս ունենալ այն բանի վրա, որ Ամերիկայի աշխատավորները ևս կարող են իրենց բախտի տերը դառնալ, լինել ազատ քաղաքացիներ:

Մենք հետաքրքրական ժամանակներում ենք ապրում,— շեշտում է դոկտոր Կարոլին Ֆ. Լոբանը,— իմպերիալիզմի մայրամուտին զուգընթաց աճում են սոցիալիստական աշխարհի ուժերը: **Սոցիալիզմն այլևս փորձարկում չէ՛.** դա մի պարզ ալտերնատիվ չէ մոնոպոլիստական իմպերիալիզմին: **Դա XX դարի առաջատար պատմական միտումն է:** Իսկ Գես Հոլի համոզմամբ մեծ Հոկտեմբերի հարթած ուղին պատմական միանգամայն նոր ուղի է: ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղարն այդ հոդվածում նշում է. Վաթսուն տարիները, որոնք հաջորդել են **«Տասն օր, որ ցնցեց աշխարհը»** գրքին, հաստատում են, որ նոր սոցիալիստական պետության՝ Սովետական Միության, ծնունդը համաշխարհային պատմության մեջ սովորական շրջադարձ չի եղել: Այն **եղել է մարդկային և հասարակական հարաբերությունների, արտադրության, գիտության նկատմամբ նոր հարաբերությունների սկիզբը: Այն նոր պատմության, նոր դարաշրջանի սկիզբն է:**

Աշխարհը ցարդ չի տեսել ռուսականի պես խոր հասարակական հեղաշրջում, գրել են ամերիկյան մամուլի բազմաթիվ օրգաններ:

Հույժ հետաքրքրական են Ջեսիկա Սմիթի հուշերը Լենինի ժամանակաշրջանի Ռուսաստանի վերաբերյալ: Ես եղել եմ նրանց շրջանում, ով լսել է Ջոն Ռիդի և Ալբերտ Ռիս Վիլյամսի ոսկե խոսքերը Լենինի մասին, հեղափոխության և սոցիալիզմի արշալույսի մասին: Հեղափոխության մասին լուրը և մեր կառավարության բացահայտ հակասովետական գործունեությունը հարկադրեցին բանվոր դասակարգի ներկայացուցիչներին և ինտելիգենցիային ոտքի ելնել պաշտպանելու աշխատավորների երիտասարդ պետությունը: **«Ձեռքներդ հեռո՛ւ Ռուսաստանից, դադարեցնե՛լ ամերիկյան ռազմական ինտերվենցիան ու բլոկադան»:**

Հիրավի, միայն երախտագիտության զգացում են հարուցում այս գրքում ամփոփված անաչառ ամերիկացիների գնահատանքն ու հայացքները Հոկտեմբերի, մեր երկրի հասումների մասին: Եվ այսօր, փոթորկվող մեր մոլորակում ոչ մի չար ուժ չի կարող կեղծիքով ու հերյուրանքով ապակողմնորոշել մարդկանց, նրանց ոգեզրկել Հոկտեմբերի հայրենիքի գերող հմայքից:

## ԽՈՍՔ ԸՆԹԵՐՑՈՂԻՆ

Մեծ Հոկտեմբերը երկնեց հեղափոխության երգչին՝ Եղիշե Չարենցին, որը փառաբանեց աշխատանքը, աշխատանքի մարդուն, մեր աշխատանքի թագավորությունը: Իր սիրած Պուշկինին թարգմանելիս, նա թղթին է հանձնել այս խորիմաստ լավատեսական տողերը.

*Ժամն ըղձական արդ հասավ, ավարտված է*
*երկար աշխատանքը:*
*Ի՞նչ է թախիծն էլ անհայտ սիրտս կրծում*
*անդադար:*
*Գո՞ւցե վաստակս ավարտած՝ ես կանգնել եմ,*
*ինչպես բեռնակիրը՝*
*Վա՛րձն իր արդեն ստացած, ա՛յլ վաստակի*
*անընտել:*
*Կամ տքնությա՞նս եմ ցավում, գիշերվա*
*լռակյաց ուղեկցի՞ն իմ,*
*Որ մտերիմն էր իմ տան, քույրը Այգի ոսկեղեն:*

Այս խորիմաստ վեցյակը կարծես գրված է բոլոր նրանց մասին, ովքեր հար տքնել են ու մաքառել իրենց դավանած վսեմ գաղափարների կենսագործման համար: Հեղինակի սույն տողերի հիմքը համամարդկային խթան հանդիսացող սրբազան աշխատանքին մատուցած օվսաննան է:

Անշուշտ, բնավ պատահական չէ, որ Չարենցն իր կարճատև կենաց վերջին տարիներին է թարգմանել սիրած պոետի՝ իմաստնությունից ճղակտոր այդ մարդկային վեցյակը: Թերևս կամենալով սրբագործել աշխատանքի մարքսիստական ճշմարիտ ըմբռնումը, Չարենցը ևս մեզ թողել է աշխատանքի իր հոյակապ փիլիսոփայությունը, որն այսօր մեզ շա՜տ է պետք:

*Աշխատի՛ր, տոկա՛ անդադար, ստեղծի՛ր*
*անդուլ— դա կամուրջ է.*
*Դրանո՛վ ես շինում դու աշխարքը, դրանո՛վ*
*քանդում— դա կամուրջ է.*
*Դրանով սերմանում ես կյանքեր, մեռնելով՝*
*հառնում դրանում.*
*Հուրհուրա խանդո՛վ, իմաստո՛ւն, ու խնդա՛*
*խնդուն— դա կամուրջ է:*

Արդ, ահա, ես արդեն մոտենում եմ ութսունին. տքնածս տարիներից 26-ը տևական լարվածությամբ բանել եմ «Լենինյան ուղիով» ամսագրում, խորապես համոզված, որ ես ևս ակտիվ մասնակցում եմ նոր աշխարհի որքան դժվարին, առավել հմայիչ այս մեծ արարին՝ կոմունիստական աշխարհի կերտմանը: Գոհ եմ, որ պատմական այդ վերելքին քայլել եմ աներեր, ետ չեմ նայել, տքնել եմ անվերջ սովորելով, ուսուցել՝ ըստ կարողությանս: Հիանալի զբաղմունք է մարդկային զանգվածներին մտովին սատար լինել, մինչև լենինիզմի գաղափարների բարձունքին հասնելը:

Կյանքում բնավ ինձ բեմի վրա չեմ զգացել, մեկ այլ անձնավորության դերում չեմ եղել: Ուսուցել եմ շատերին՝ ոչինչ չխնայել մեր արդար գործի հաղթության համար: Այս ամենը հատուկ է եղել նաև իմ գաղափարակիցներին՝ ազնիվ կոմունիստներին:

Խանդաղատանքով եմ վերընթերցում Երևանի պետական երրորդ մանկատան մեր դաստիարակին՝ Եղիշե Չարենցին, որը, ընդհատակյա կոմունիստ Արամ Գրիգորյանի հետ ձեռք ձեռքի, մեզ կոմունիզմ է ուսուցել: Չարենցը միշտ մեզ հետ է մնում և իր ստեղծագործություններով վառ պահում իրեն հատուկ նվիրվածությունը լենինյան գաղափարներին: Մի՞թե կարելի է մոռանալ նրա հոգևոր գանձերի շտեմարանը, որով սերունդներ են հին աշխարհի դեմ գրոհել. ինչպե՞ս չհիշել 1926 թվականին գրած նրա ռուբայաթների շարքը.

*Դեռ երեկ քո միտքը խավար էր,— իմաստուն*
*ես արդեն հիմա դու.*
*Դու տեսար վիթխարի այս արարը,—*
*իմաստուն ես արդեն հիմա դու*
*Դու տեսար պատմության խոհանոցը, մխացիր*
*ճենճերում դու նրա—*
*Եվ գիտես, թե ո՛վ է խոհարարը... Իմաստուն*
*ես արդեն հիմա դու:*

Չարենցն ինձ կորով ու հույզ է ներարկում, և միշտ բավականությամբ եմ կարդում նոր կյանքի արարմանը նվիրված նրա երկերը: Բայց քանի ապրում եմ, ջանում եմ ետ չմնալ մեծ պայքարի երթից:

ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ԱՌԵՎՏՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ՝ ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

**Բ. Ա. ՍԱՐԳՍՅԱՆ**
*Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղսովետի գործկոմի նախագահի տեղակալ*

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ կյանքում առևտուրը կատարում է կարևոր սոցիալական ու տնտեսական խնդիրներ: Այն ակտիվորեն նպաստում է իրականացնելու կուսակցության տնտեսական ստրատեգիայի գերագույն նպատակը՝ անշեղորեն բարձրացնելու ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակը: Առևտուրը աշխատանքի նյութական խթանման համակարգի անհրաժեշտ օղակ է, դրա արտադրողականության աճի էական գործոն:*

*Կուսակցության XXVI համագումարը կարևորագույն խնդիր համարեց բազմապիսի ապրանքների և սպասարկումների՝ բնակչության պահանջարկի առավել լրիվ բավարարումը: Պարենային պրոբլեմի հետևողական լուծման հիման վրա խնդիր է դրված ապահովել առավել սննդարար մթերքների սպառման աճի հաշվին բնակչության սննդի հետագա բարելավումը: Ավելի ու ավելի լրիվ կբավարարվի կուլտուր-կենցաղային ու տնտեսական առարկաների և ոչ պարենային մյուս ապրանքների պահանջարկը, կընդլայնվի ու կնորացվի ապրանքների տեսականին, կբարձրանա դրանց որակը, կավելանա պահանջարկ վայելող նոր, մոդայիկ, ինչպես նաև ոչ թանկարժեք լավորակ ապրանքների վաճառքը: Խնդիր է դրվում ավելի ակտիվորեն ներազդել բնակչության խելամիտ պահանջմունքների և գեղագիտական ճաշակի ձևավորման վրա:*

*Պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը 1985 թվականին երկրում կհասնի 345 մլրդ ռուբլու (1980 թվականին՝ 268,5 մլրդ): Հարկավոր է, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումում, ամեն ինչ անել, որպեսզի պահանջարկ վայելող արտադրանքը լինի ավելի շատ, որպեսզի բոլոր ձեռնարկությունները սովետական մարդկանց համար արտադրեն ճաշակով և բազմապիսի ապրանքներ:*

*Ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներով և հաշվի առնելով ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման խնդրի իրականացման գործում սովետական առևտրի մեծ նշանակությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը վերջերս որոշում ընդունեցին «Տասնմեկերորդ հնգամյակում առևտրի հետագա զարգացման և բնակչության առևտրական սպասարկման բարելավման միջոցառումների մասին»:*

*Ինչպես ողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում հետևողականորեն իրականացվում է ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի հետագա վերելքի կուսակցության կուրսը: Տասնմեկերորդ հնգամյակում նա-*



*խատեսվում է հանրապետության աշխատավորներին ավելի լրիվ չափով ապահովել ժողովրդական սպառման ապրանքներով:*

*Սովետական մարդու, նրա կարիքների և պահանջմունքների նկատմամբ հոգատարությունը կուսակցության տնտեսական քաղաքականության առանցքն է: Այդ կարևորագույն խնդրի հաջող լուծման գործում առանձնապես մեծ է առևտրի դերը: Այսօր առևտուրն ու բնակչության սպասարկման մյուս ճյուղերը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոն են: Այս ոլորտի աշխատողները, ամենօրյա շփման մեջ գտնվելով բնակչության հետ, իրենց հանրօգուտ գործով լավ տրամադրություն են ստեղծում աշխատավորության շրջանում, իսկ լավ տրամադրությունը աշխատանքի արտադրողականության ու արդյունավետության բարձրացման գրավական է:*

*Երևան քաղաքի առևտրի և հասարակական սննդի աշխատողները տասներորդ հնգամյակում կատարեցին ու գերակատարեցին ապրանքաշրջանառության պլանները, իրենց ավանդը ներդրեցին մայրաքաղաքի աշխատավորության ընդհանուր հաջողությունների մեջ:*

*Տասներորդ հնգամյակում մայրաքաղաքի պետական և սպառողական կոոպերացիայի կազմակերպությունների մանրածախ ապրանքաշրջանառության ծավալն աճեց 407 մլն ռուբլով կամ 51 տոկոսով և 1980 թվականին անցավ մեկ միլիարդ ռուբլուց: Հնգամյակում պլանից ավելի վաճառվեց մոտ 120 մլն ռուբլու ապրանք: Բնակչության մեկ շնչի հաշվով ապրանքաշրջանառությունն աճեց 32 տոկոսով և 859 ռուբլուց հասավ 1.130 ռուբլու:*

*Իրականացնելով ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, քաղաքի առևտրական կոլեկտիվները տասներորդ հնգամյակի ապրանքաշրջանառության պլանը կատարեցին 101,9 տոկոսով, հասարակական սննդի կազմակերպությունները՝ 100,2 տոկոսով: Հնգամյակի պետական առաջադրանքները հաջողությամբ կատարելու և բնակչության սպասարկման գործում աչքի ընկնող ծառայությունների համար առևտրի վարչության ցանցի 33 և հասարակական սննդի վարչության ցանցի 14 աշխատողներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով:*

*Ընթացիկ հնգամյակն առևտրական կազմակերպությունները սկսեցին հաջողությամբ: 1981 թ. մանրածախ ապրանքաշրջանառության ծավալն աճեց 6,2 տոկոսով:*

*Չնայած առկա հաջողություններին, առևտրի կազմակերպման բոլոր հարցերը չէ, որ լուծված են: Բավական է նշել, որ ընթացիկ հնգամյակի առաջին տարում ոչ բոլոր կազմակերպությունները կատարեցին ապրանքաշրջանառության պլանները: Անհրաժեշտ է, որ առևտրի և հասարակական սննդի վարչությունները, ինչպես հարկն է, զբաղվեն պլանները չկատարող կազմակերպությունների ու ձեռնարկությունների հարցերով, բացահայտեն պլանների թերակատարման պատճառները և կոնկրետ միջոցներ ձեռնարկեն ետ մնացող կազմակերպություններ և ձեռնարկություններ չունենալու համար:*

*Ապրանքաշրջանառության պլանի կատարումը շատ բանով պայմանավորված է առևտրի կազմակերպմամբ, ապրանքաշարժի համակարգի կատարելագործմամբ, կառավարման կառուցվածքով և պրակտիկայում առաջավոր փորձի լայն ներդրմամբ: Շատ դեպքերում նույն հնարավորություններ ունեցող առևտրական կազմակերպությունների աշխատանքի արդյունքները տարբեր են լինում: Այսպես, առևտրական մակերեսների պակասի պայմաններում դրանք քաղաքի ոչ բոլոր վարչական շրջաններում են բավարար արդյունավետությամբ օգտագործվում: Եթե Լենինյան շրջանի սննդառի խանութներում մեկ քմ-ին համապատասխանում է 9,1 հազար ռուբլու ապրանքաշրջանառություն, ապա Սովետական շրջանում՝ հազիվ 6 հազար ռուբլու, իսկ 26 կոմիսարների անվան շրջանում՝ 6,9 հազար ռուբլու: Նման վիճակ է տիրում նաև ոչ պարենային ապրանքների որոշ առևտրական կազմակերպություններում:*

*Մանրածախ ապրանքաշրջանառության պլանի կատարումը շատ բանով պայմանավորված է ապրանքային ռեսուրսների առկայությամբ, շուկայական ֆոնդերի իրացմամբ, արդյունաբերության աշխատանքով:*

կացուցիչ մասն են։ Հարցի լուծմանը զգալի չափով կնպաստի կենտրոնական փողոցներում նկուղների և կիսանկուղների օգտագործումը առևտրական օբյեկտներ ստեղծելու նպատակով, ինչպես նաև բնակելի շենքերի առաջին հարկից սպասարկման ոլորտի հետ չառնչվող կազմակերպությունների և հիմնարկությունների տեղափոխումը և դրանց տարածքները առևտրին տրամադրելը։ Բնորոշ օրինակներ կարելի է բերել Լենինի պողոտայից, Մոսկովյան, Կնունյանցի, Քոչարի, Օրբելի եղբայրների և այլ փողոցներից, որոնց վրա գտնվող տարբեր բնույթի կազմակերպությունները, զբաղեցնելով ոչ բնակելի տարածությունները, դրանք հարմարեցրել են իրենց պահանջներին և այլանդակել ոչ միայն առանձին շենքերի, այլև ամբողջ փողոցների ճարտարապետական տեսքը։

Առևտրական օբյեկտների պլանավորման ու կառուցման նկատմամբ անտարբեր վերաբերմունքի առումով բնորոշ է Սովետական շրջանի «Ավան» բնակելի զանգվածի օրինակը։ Այդ զանգվածը, որն իր բնակչությամբ այսօր արդեն գերազանցում է 1920 թ. Երևանը, շահագործման հանձնվելուց հետո մոտ երկու տարի զուրկ էր որևէ սպասարկման օբյեկտից։ Միայն մեծ ուշացումով գործարկվեց ունիվերսամը։ Ու թեև այսօր ունիվերսամից բացի այստեղ գործում են նաև արդյունաբերական ու պարենային այլ խանութներ, զանգվածը առևտրական մակերեսներով ապահովվածությամբ դեռ շատ հեռու է գործող նորմատիվներից։

Չպետք է մոռանալ, որ միկրոշրջանի հասարակական ֆունկցիաների սահմանափակումն անխուսափելիորեն անդրադառնում է նաև նրա ճարտարապետական տեսքի վրա, որը զգալի չափով պայմանավորված է բնակելի շենքերի առաջին հարկերում տեղադրվող օբյեկտների բնույթով, դրանց ձևավորմամբ, փողոցների շարժունակությամբ։

Ավանի կառուցապատման այս արատավոր պրակտիկան հետագայում շարունակվեց Շահումյանի շրջանի Լուկաշինի, Օրջոնիկիձեի շրջանի Էրեբունի բնակելի զանգվածներում և բոլորովին վերջերս կրկնվեց Սովետական շրջանի Դուրյան և Առինջ—2 թաղամասերում։

Ներկայումս նյութական բարիքների չորս հինգերորդը երկրի ազգաբնակչությունն ստանում է առևտրի միջոցով։ Ահա թե ինչու շուկան բարձրորակ ապրանքներով հագեցնելու գործում մեծ դեր է պատկանում առևտրին։ Վերջինս սովորական պասսիվ միջնորդ չէ արտադրողի և սպառողի միջև, այն ակտիվորեն ներգործում է թե՛ արտադրության և թե՛ սպառման վրա։ Ուստի առևտրի աշխատողների առաջնահերթ խնդիրն է՝ բնակչությանն ապահովել այսօրվա պահանջարկը բավարարող բարձրորակ ապրանքներով։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության պլանավորման հիմքում պետք է դրվեն սպառողների պահանջմունքները, որոնք ըստ էության արտադրության ծավալի ու տեսականու կանխորոշման ելակետային նախադրյալներ են։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը, բնակչության համար ապրանքների արտադրությունը և սպասարկման ոլորտի զարգացումը համարելով առաջնահերթ գործ, ասել է. «Խանութ, ճաշարան, լվացքատուն, քիմմաքրման կետ՝ այստեղ մարդիկ լինում են ամեն օր։ Ի՞նչ կարող են նրանք գնել։ Ինչպե՞ս են նրանց ընդունում։ Ինչպե՞ս են նրանց հետ խոսում, ինչքա՞ն ժամանակ են նրանք կորցնում ամեն տեսակ կենցաղային հոգսերի համար։ Մարդիկ մեր աշխատանքի մասին մեծ չափով դատում են նրանով, թե ինչպես են լուծվում այդ հարցերը։ Դատում են խիստ պահանջկոտությամբ։ Եվ դա, ընկերներ, հարկավոր է հիշել» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 79—80)։ Կուսակցության այս պահանջը մեր ամենօրյա գործունեության ծրագիրն է և մեր խնդիրն է մշտապես հոգալ առևտրի և հասարակական սննդի օբյեկտների աշխատանքի բարելավման, ինչպես նաև բնակչության համակողմանի սպասարկման կուլտուրայի բարձրացման մասին։

---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՇՈՒՐՋ

**Մ. Գ. ՎԱՍԻԼՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ նյութական բարիքները բաշխվում են հասարակության յուրաքանչյուր անդամի ծախսած աշխատանքի համապատասխան։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Սոցիալիզմի օրոք բաշխման գլխավոր չափանիշը կարող է լինել միայն աշխատանքը՝ նրա քանակն ու որակը։ ...Նյութական ու բարոյական խթանների մեր սիստեմը պետք է միշտ և ամենուրեք ապահովի յուրաքանչյուրի աշխատանքային ներդրման արդարացի և օբյեկտիվ գնահատականը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 95)։

Կոմունիզմի կառուցման առաջին փուլում ըստ աշխատանքի բաշխումը բացատրվում է նախ նրանով, որ արտադրաուժերի զարգացման մակարդակը դեռևս չի ապահովում նյութական բարիքների առատություն այնպիսի չափերով, որպեսզի հնարավոր լինի կիրառել ըստ պահանջմունքների բաշխումը։ Երկրորդ, աշխատանքը հասարակության բոլոր անդամների համար դեռևս չի դարձել կենսական պահանջ, սովորություն, ուստի հասարակությունն աշխատանքային գործունեության մեջ մարդկանց ներգրավում է նյութական շահագրգռվածության միջոցով։ Երրորդ, տակավին էական տարբերություններ կան մտավոր և ֆիզիկական, պարզ և բարդ աշխատանքների միջև։ Միևնույն աշխատաժամանակի ընթացքում որակյալ աշխատողներն ավելի մեծ նյութական կամ հոգևոր արժույթներ են ստեղծում, քան ցածր որակավորում ունեցողները։ Այդ առնչությամբ Վ. Ի. Լենինը նշել է. «Մինչև այն ժամանակ, երբ կգա կոմունիզմի «բարձրագույն» փուլը, սոցիալիստներն ամենախիստ վերահսկողություն են պահանջում հասարակության ու պետության կողմից աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ...» (Երկեր, հ. 25, էջ 611—612)։

Ըստ աշխատանքի բաշխման նպատակն է՝ բարձրացնել նյութական շահագրգռվածությունն արտադրության վերջնական արդյունքների նկատմամբ, խթանել արտադրողականության աճը, աշխատողների որակավորման բարձրացումը, արտադրամիջոցների և աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործումը։ Հետևաբար, աշխատավարձն ունի երկակի ֆունկցիա. այն մարդկանց գոյության միջոց է, աշխատողների պահանջմունքների բավարարման աղբյուր, ինչպես նաև արտադրության զարգացման տնտեսական խթան։

Լայն առումով աշխատավարձի սահմանումը հանգում է արտադրապրոցեսում գործադրված աշխատանքի քանակի և որակի գնահատման մեթոդների

մշակմանն ու իրագործմանը, աշխատանքի արդյունքների ու դրա վարձատրության միջև կապի զանազան եղանակների որոշմանն ու կիրառմանը։ Այն մի բարդ տնտեսական մեխանիզմ է՝ կազմված մի շարք փոխշաղկապված տարրերից, որոնցից յուրաքանչյուրը կոնկրետ ֆունկցիա ունի բաշխման հարաբերություններում ու նյութական խթանման սիստեմում։ Այդ տարրերն են՝ աշխատանքի նորմավորումը, տարիֆային համակարգը, աշխատավարձի ձևերն ու համակարգերը և աշխատավարձի ֆոնդը։

Տարիֆային համակարգի միջոցով պետությունը ժամանակի միավորի համար սահմանում է վարձատրության կենտրոնացված չափեր՝ կատարվող աշխատանքի բարդությանն ու պայմաններին, ճյուղի ժողովրդատնտեսական նշանակությանը համապատասխան։ Ըստ որում տարիֆային դրույքները աշխատանքի վարձատրության սիստեմում օգտագործվում են աշխատավարձի ձևերի և համակարգերի միջոցով։ Սակայն, քանի որ տարիֆային դրույքները աշխատանքի վարձատրության կազմակերպման վճռական տարրն են, այդ պատճառով վարձատրության ցանկացած ձևը կիրառելիս աշխատավարձի չափերը որոշվում են ըստ տարիֆային դրույքների մակարդակի։

Ըստ աշխատանքի քանակի և որակի վարձատրությունն իրականացնելու համար անհրաժեշտ է նախապես սահմանել, թե մարդուց աշխատանքային ինչպիսի ծախսեր են պահանջվում տվյալ աշխատանքը կատարելու համար։ Այդ ֆունկցիան իրականացվում է աշխատավարձի կազմակերպման երկրորդ կարևոր տարրի՝ աշխատանքի նորմավորման միջոցով, որը հնարավորություն է ընձեռում սահմանելու որոշակի աշխատանք կատարելու համար անհրաժեշտ ջանքերի ծախսումները։ Այլ խոսքով, աշխատանքի նորմավորմամբ հնարավոր է որոշել բանողի աշխատաչափը, որը գործնականում սահմանվում է ժամանակի և արտադրանքի նորմաների հիման վրա։

Աշխատանքի չափին (նորմային) պետք է համապատասխանի նրա վարձատրության չափը (նորման)։ Որպես վարձատրության չափ, գործնականում կիրառվում են բանվորների տարիֆային դրույքները, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների տարիֆային պաշտոնական ռոճիկները, հավելավճարներն ու պարգևները։ Աշխատանքի և վարձատրության չափերի միջև սահմանվում է որոշակի առնչություն, որն իրագործվում է վարձատրության ձևերի և համակարգերի միջոցով։ Այսպիսով, համապատասխանություն է ստեղծվում նաև աշխատանքի արդյունքների և դրա վարձատրության մակարդակի միջև, որը նյութապես շահագրգռում է աշխատողներին ինչպես աշխատանքի անհատական, այնպես էլ կոլեկտիվ արդյունքներում։

Աշխատանքային ծախսումները չափվում են աշխատաժամանակի միջոցով, ինչպես նաև պատրաստված արտադրանքի (կատարված օպերացիաների) քանակով։ Դրան համապատասխան էլ, այն բանվորների համար, որոնց աշխատանքը հնարավոր չէ նորմավորել, իսկ աշխատաարդյունքները ենթակա չեն քանակական հաշվառման, կիրառվում է աշխատավարձի ժամանակավարձային ձևը։

Բանվորների մեծամասնության աշխատանքն ինչպես քանակական, այնպես և որակական ցուցանիշներով հնարավոր է նորմավորել և հաշվառել։ Այդ դեպքում կիրառվում է աշխատավարձի գործավարձային ձևը։

Աշխատավարձի այս կամ այն ձևի կամ համակարգի ընտրությունը չի կարող լինել կամայական։ Յուրաքանչյուր դեպքում հաշվի են առնվում արտադրության կազմակերպական-տեխնիկական առանձնահատկությունները և ընտրվում աշխատանքի վարձատրության այնպիսի եղանակ, որը հնարավորություն ընձեռի ուղղակի կապ ստեղծելու աշխատաարդյունքների և աշխատավարձի մակարդակի միջև, ու խթանի աշխատանքի արտադրողականության աճը։ Միայն այդ դեպքում աշխատանքի վարձատրության այս կամ այն եղանակի կիրառումը կարող է տնտեսապես արդարացվել։

Աշխատանքի վարձատրության ձևերի և համակարգերի ճիշտ ընտրությունը



կարևոր նշանակություն ունի արտադրակոլեկտիվների տնտեսական գործունեության արդյունավետության բարձրացման գործում բանվորների նյութական շահագրգռվածությունն ապահովելու համար։

Տնտեսավարման նոր պայմաններում աշխատավարձի եղանակների ընտրությունը գտնվում է ձեռնարկությունների իրավասության ներքո։ Այդ եղանակների կիրառման ընթացքում մի շարք կարևոր, օբյեկտիվ հանգամանքների անտեսումը թուլացնում է աշխատողների նյութական շահագրգռվածությունը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ գործարքային վարձատրության կիրառումն արդյունավետ է այն դեպքում, երբ աշխատանքի արտադրողականության մակարդակը էապես պայմանավորված է բանվորի անհատական ջանքերով և, առաջին հերթին, նրա աշխատանքի ինտենսիվությամբ ու հմտությամբ։ Ելնելով դրանից, վարձատրության այդ եղանակը նպատակահարմար է կիրառել հետևյալ դեպքերում. երբ աշխատանքի կամ արտադրանքի քանակական ցուցանիշները ճիշտ են արտացոլում բանվորների աշխատանքային ծախսումները, երբ բանվորները ռեալ հնարավորություն ունեն ավելացնելու արտադրանքի թողարկումը տվյալ բանվորական տեղում, երբ գոյություն ունի տվյալ արտադրատեսակների թողարկման արտադրական անհրաժեշտություն, երբ գործարքային վարձատրության կիրառումը վտանգ չի ստեղծում արտադրանքի որակի իջեցման, աշխատանքի տեխնոլոգիական ռեժիմների խախտման, հումքի, նյութերի և էներգիայի գերածախսի համար։

Հայտնի է, որ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ մինչև այժմ գերակշռել է աշխատանքի վարձատրության գործավարձային ձևը։ Այսպես, ՍՍՀՄ արդյունաբերության մեջ գործավարձով աշխատող բանվորների տեսակարար կշիռը 1926 թ. կազմել է 60 տոկոս, 1936 թ.՝ 76,1, իսկ 1956 թ. այն հասել է ամենաբարձր մակարդակին՝ 77,5 տոկոսի։ Հետագա ժամանակաշրջանում այն կրճատվեց և 1972 թ. իջավ 56,8 տոկոսի։ Մեր հանրապետության արդյունաբերության մեջ 1962 թ. այն կազմել է 67,9 տոկոս, 1965 թ.՝ 63,5, 1969 թ.՝ 63,3, իսկ 1974 թ.՝ 64,7 տոկոս։

Ինչպես տեսնում ենք, ՍՍՀՄ արդյունաբերության մեջ գործավարձով աշխատող բանվորների տեսակարար կշիռը 1956—1972 թթ. կրճատվել է 20,7 տոկոսով, իսկ ժամանակավարձով աշխատող բանվորներինը՝ 22,5 տոկոսից աճել է 43,2 տոկոսի։ Մեր հանրապետությունում այդ տվյալները համապատասխանաբար կազմում են՝ 3,2, 32,1 և 35,3 տոկոս։

Այսպիսով, սկսած 50-ական թվականներից նկատելի են վարձատրության գործարքային ձևի կրճատման և ժամանակավարձային ձևի ավելացման զգալի միտումներ։ Ավելին, առանձին արդյունաբերական ճյուղերում վարձատրության ժամանակավարձային ձևը բացարձակ գերակշռություն ունի։ Օրինակ, 1972 թ. ՍՍՀՄ էլեկտրաէներգետիկայում այն կազմել է 98,4 տոկոս, նավթի արդյունահանման մեջ՝ 86,9, իսկ քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության մեջ՝ 62,7 տոկոս (տե՛ս Оплата труда при социализме: вопросы теории и практики. М., «Экономика», 1976, стр. 90)։

Աշխատանքի վարձատրության ձևերի կիրառման նշված տեղաշարժերը արտացոլում են արդյունաբերական արտադրության մեջ տեղի ունեցող արմատական փոփոխությունները, որոնք առաջին հերթին կապված են տեխնիկական առաջընթացի հետ։ Արտադրապրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը, հոսքային և կոնվեյերային մեթոդների ընդլայնումը փոփոխում են ո՛չ միայն աշխատանքի կազմակերպման ձևերը, այլև դրա բնույթն ու բովանդակությունը։ Այդ պայմաններում բանվորները հիմնականում կատարում են այնպիսի ֆունկցիաներ, ինչպիսիք են տեխնոլոգիական պրոցեսների ընթացքի հսկողությունը, սարքավորումների, մեքենաների կարգավորումը և նորոգումը, տեխնոլոգիական ռեժիմների պահպանումը և այլն։ Նման պայմաններում բացառվում է բանվորների աշխատանքի ազդեցությունն արտադրության ծավալի մեծության վրա,

ուստի և նեղանում է գործավարձային ձևի կիրառման ոլորտը և ընդլայնվում է ժամանակավարձային ձևի կիրառումը։

Գիտատեխնիկական առաջընթացի ներգործությունն աշխատանքի վարձատրության ձևերի կիրառման վրա դրսևորվում է երկու ձևով։ Մի կողմից այն կրճատում է գործարքային վարձատրության կիրառման ոլորտը և ընդլայնում ժամանակավարձային ձևը, մյուս կողմից՝ ենթադրում է խոշոր ագրեգատների, մեքենաների, հոսքային գծերի համատեղ սպասարկում բանվորների խմբի կամ բրիգադի կողմից՝ արտադրանքի աճի վրա բանվորների ներգործության պայմաններում։ Այս դեպքում, սովորաբար, կիրառվում է կոլեկտիվ վարձատրության ձևը, որը լայնորեն տարածվել է այն ճյուղերում, որոնց բնորոշ է աշխատանքի կոլեկտիվ կազմակերպումը։

Պրակտիկան ցույց է տալիս, որ կոլեկտիվ գործավարձային ձևը մի շարք առավելություններ ունի անհատական գործավարձի նկատմամբ։ Այդ ձևը խթանում է բանվորների մասնագիտությունների համատեղումը, աշխատողների թվաքանակի կրճատումը, շահագրգռում է բանվորներին՝ բարձրացնելու մասնագիտական որակավորումը և, վերջին հաշվով, աշխատանքի արտադրողականությունն ու որակը։ Կոլեկտիվ գործարքային համակարգը բնորոշ է նաև նրանով, որ բրիգադի յուրաքանչյուր անդամի աշխատավարձի մակարդակը պայմանավորվում է ողջ բրիգադի աշխատանքի վերջնական արդյունքներով։ Ըստ որում գոյություն ունի կոլեկտիվ գործարքային վարձատրության երկու տարատեսակ՝ կոլեկտիվ գնահատումներով և անհատական գնահատումներով։ Երկու դեպքում էլ խթանվում է արտադրանքի ծավալի աճը, սակայն առաջինի կիրառումը խթանում է նաև մասնագիտությունների համատեղումը, իսկ երկրորդինը՝ աշխատանքի որոշակի տեսակում բանվորների մասնագիտացումը։

Մասնագետների կարծիքով, կոլեկտիվ (բրիգադային) վարձատրությունը անհատական գործարքից ժամանակավարձին անցնելու համակարգ է (տե՛ս Труд и заработная плата в СССР, М., «Экономика», 1975, стр. 289)։ Գործարքային և ժամանակային վարձատրության ձևերի կիրառման հարաբերակցության փոփոխությունները հօգուտ վերջինիս պահանջում են կատարելագործել վարձատրության ժամանակավարձային ձևը, որոնել աշխատանքի արդյունքների գնահատման և վարձատրության ու այդ արդյունքների միջև անմիջական կապերի ստեղծման նոր արդյունավետ եղանակներ և մեթոդներ՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում ժամանակավարձի խթանիչ դերն ուժեղացնելու նպատակով։ Իհարկե, այդ չի նշանակում, թե գործավարձային ձևը պետք է անուշադրության մատնել։ Ըստ իրենց տնտեսական էության, վարձատրության ժամանակավարձային և գործավարձային ձևերի միջև սկզբունքային տարբերություններ չկան։

Աշխատանքի վարձատրության ժամանակավարձային ձևի կատարելագործման տեսակետից հետաքրքրական է ՍՍՀՄ 50-ամյակի անվան Վոլգյան ավտոմոբիլային գործարանի փորձը, որտեղ ավտոմեքենաների հավաքման հոսքային գծերի բանվորների վարձատրությունն իրականացվում է կոլեկտիվ աշխատանքի կազմակերպման հիման վրա՝ ժամանակավարձով։ Այստեղ բանվորների աշխատավարձը բաղկացած է երեք մասից։ Առաջին, վարձատրություն աշխատաժամանակի համար՝ ըստ տարիֆային դրույքների, որն իրականացվում է անկախ արտադրական նորմաների կատարման աստիճանից։ Դրան ավելացվում են վճարումներ պրոֆեսիոնալ վարպետության և աշխատանքի պայմանների համար։ Վարձատրության առաջին մասը, որն իրականացվում է «աշխատանքի նորմայի համար՝ տարիֆային դրույք» սկզբունքով, կազմում է բանվորների աշխատավարձի մոտ 60 տոկոսը։

Վոլգյան ավտոգործարանի բանվորների աշխատավարձի երկրորդ բաղկացուցիչ մասը գոյանում է նորմավորված առաջադրանքների կատարման համար տրվող հավելավճարներից։ Բանվորների աշխատավարձի մեջ այդ վճարումները, որոնք կազմում են տարիֆային դրույքի մոտ 20 տոկոսը, կատարվում են բրիգադների ամսական պլանային առաջադրանքների կատարումն ու



գերակատարումը նյութապես խթանելու նպատակով։ Պետք է նկատել, որ աշխատավարձի հավելավճարները տրվում են ոչ թե արտադրանքի կամ ժամանակի նորմաների կատարման, այլ նորմավորված առաջադրանքների (պլանի) կատարման դեպքում։

Պրակտիկան ցույց է տալիս, որ աշխատանքի նորմավորման գործում դեռևս կան լուրջ թերություններ։ Դրանց մեծ մասը տեխնիկապես հիմնավորված չէ կամ խիստ հնացած է։ Բացի դրանից, անփոփոխ տարիֆային դրույքների կիրառման պայմաններում նորմաների վերանայումը հարուցում է բանվորների աշխատավարձի իջեցում, աշխատավորների շահագրգռվածության նվազում և այլն։ Ահա թե ինչու Վոլգյան ավտոգործարանում աշխատանքի նորմաները փոխարինվեցին նորմավորված (պլանավորված) առաջադրանքներով, որը զգալի դրական քայլ է պետական պլանի դերի ուժեղացման, աշխատավարձի ճիշտ կազմակերպման բնագավառում։ Բանվորների աշխատավարձի երրորդ բաղկացուցիչ մասը պարգևն է, որը վճարվում է արտադրանքի աշխատատարության կրճատման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Պարգևի առավելագույն չափը կազմում է 20 տոկոս, եթե փաստացի աշխատատարությունը հավասար (ցածր) է նախագծայինին։

Ինչպես տեսնում ենք, ավտոձեռնարկության բանվորների վարձատրությունն իրականացվում է՝ աշխատավարձը շերտավորելով ըստ աշխատաժամանակի, պրոֆեսիոնալ վարպետության, աշխատանքային պայմանների, նորմավորված առաջադրանքների կատարման աստիճանի, աշխատատարության իջեցման կամ աշխատանքի արտադրողականության բարձրացման և այլն։ Վերջին հաշվով, այստեղ փորձ է արվել ուղղակի կապ ստեղծել արտադրանորմաների կատարման մակարդակի և դրա վարձատրության չափերի միջև և դրանով իսկ բարձրացնել բանվորների շահագրգռվածությունը աշխատանքի որակի և արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով, որը գործնականում լրիվ արդարացվել է։ Ահա թե ինչու անհրաժեշտ է բանվորների վարձատրության Վոլգյան եղանակը լայնորեն տարածել նաև մեր հանրապետության մեքենաշինության ոլորտում։

Արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատանքի վարձատրությունն ընդգրկում է վճարումներ ըստ պաշտոնական ռոճիկների և վճարումներ, որոնք տրվում են պարգևատրումների ձևով։

Ըստ պաշտոնական դրույքների վարձատրությունն ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատավարձի կայուն մասն է, որի մեծությունը պայմանավորված է գրաված պաշտոնով և աշխատած ժամանակով։ Վարձատրության այդ մասն այժմ կազմում է աշխատողի ընդհանուր աշխատավարձի մոտ 75—80 տոկոսը։

Ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների վարձատրությունն իրականացվում է պաշտոնական ռոճիկների ճյուղային սխեմաների հիման վրա՝ հաշվի առնելով աշխատողի գրաված պաշտոնը, պարտականությունները, աշխատանքի բարդությունը և ծավալը, աշխատողի որակավորման մակարդակը, առաջադրված հարցերի լուծման ինքնուրույնության աստիճանը, նրա գիտելիքներն ու փորձը (աշխատողի որակավորման համապատասխանությունը մասնագետների որակավորման տեղեկատուի բնութագրերի պահանջներին)։ Պաշտոնական դրույքների սխեմաներն ընդգրկում են տվյալ ճյուղում գոյություն ունեցող պաշտոնների անվանացանկը, ամսական դրույքների չափերը, որոնք շերտավորվում են ըստ ձեռնարկությունների խմբերի, և այն աշխատողների դրույքները, որոնք ունեն միևնույն պաշտոնական անվանումը։

Այժմ յուրաքանչյուր արդյունաբերական ճյուղում գործում է պաշտոնական դրույքների երկու սխեմա։ Առաջին սխեմայի հիման վրա գնահատվում և վարձատրվում է ղեկավար ու ինժեներատեխնիկական աշխատողների աշխատանքը, իսկ երկրորդի հիման վրա՝ ծառայողների և կրտսեր սպասարկող անձնակազմի աշխատանքը։ Ըստ առաջին սխեմայի վարձատրվում են այն ինժե-

ներատեխնիկական աշխատողները, որոնց աշխատանքի բնույթը պայմանավորված է արտադրության մասշտաբներով և բարդությամբ, իսկ երկրորդ սխեմայով՝ նրանք, որոնց աշխատանքը նման պայմանավորվածություն չունի: Իր հերթին, առաջին խմբի մասնագետների դրույքները սահմանելու ժամանակ ինժեներատեխնիկական աշխատողները բաժանվում են երկու ենթախմբի. ձեռնարկության կամ միավորման ղեկավարներ (դիրեկտոր, նրա տեղակալներ, գլխավոր մասնագետներ, կառավարման ապարատի աշխատողներ) և ներգործարանային ստորաբաժանումների ղեկավարներ (վարպետներ, արտադրամասի ու տեղամասի պետեր և այլն):

Ձեռնարկությունների և միավորումների ֆունկցիոնալ ծառայությունների ղեկավարների պաշտոնական դրույքները սահմանվում են ըստ ձեռնարկության (միավորման) կատեգորիայի, իսկ արտադրամասի և տեղամասերի պետերի դրույքները՝ արտադրամասերի ու տեղամասերի կատեգորիայի: Կատեգորիաների խմբավորումը կատարվում է ըստ այնպիսի ցուցանիշների, ինչպիսիք են՝ թողարկվող արտադրանքի ծավալն ու բարդությունը, արտադրության տեսակը, տեխնիկական հագեցվածության մակարդակը (հիմնական ֆոնդերի արժեքը, տեխնոլոգիական պրոցեսների և կիրառվող սարքավորումների բարդությունը): Մի շարք ճյուղերում հաշվի են առնվում նաև աշխատողների թվաքանակն ու ճյուղի մի շարք առանձնահատկությունները:

Ըստ ձեռնարկությունների (միավորումների) կատեգորիաների ղեկավար աշխատողների պաշտոնական դրույքների տարբերությունները զգալիորեն մեծ են: Այսպես, բարձրագույն կատեգորիային պատկանող ձեռնարկությունների ղեկավարների դրույքները 60—75 տոկոսով բարձր են ամենացածր կատեգորիայի ձեռնարկությունների համեմատությամբ:

Ինժեներատեխնիկական աշխատողների մյուս խումբը (ավագ ինժեներներ, ինժեներներ, ավագ տեխնիկներ, տեխնիկներ և լաբորանտներ) վարձատրվում են միասնական դրույքներով, որոնք սահմանվում են արդյունաբերական ճյուղի համար՝ անկախ ձեռնարկությունների (միավորումների) կատեգորիայից: Սակայն հաշվի է առնվում թողարկվող արտադրանքի բարդությունն այնպիսի մասնագետների աշխատանքի վարձատրության համակարգում, ինչպիսիք են տնտեսագետները, նորմավորողները, ինժեներները և այլն: Այսպես, մեքենաշինական ձեռնարկություններում, որոնք թողարկում են հատկապես բարդ արտադրանք, ավագ նորմավորողների համար պաշտոնական դրույքը սահմանված է 140—165 ռուբլի, իսկ տվյալ ճյուղի մյուս ձեռնարկություններում՝ 130—155 ռուբլի:

Ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների պաշտոնային դրույքները ձեռնարկություններում (միավորումներում) դիրեկտորի կողմից սահմանվելու ժամանակ հաշվի են առնվում նաև նշված կատեգորիայի աշխատողների որակավորումն ու փորձը, գործարար հատկությունները, տեսական գիտելիքները և այլն: Այդ նպատակով յուրաքանչյուր պաշտոնի համար ճյուղային սխեմաներում սահմանվում են պաշտոնային դրույքի առավելագույն և նվազագույն չափերը, որոնց միջև եղած տարբերությունն ըստ արդյունաբերական ճյուղերի կազմում է 10—20 տոկոս:

Վերջին տասնամյակում աշխատողների վարձատրության համակարգում կատարված փոփոխությունները գործնականում տարածվեցին ժողովրդական տնտեսության արտադրական և ոչ արտադրական ճյուղերի բոլոր բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատավարձի վրա: Էական փոփոխություններ կատարվեցին աշխատանքի վարձատրության մակարդակներում և հարաբերակցության մեջ՝ ըստ ճյուղերի, աշխատողների կատեգորիաների ու խմբերի, ինչպես նաև աշխատավարձի չափերի և դրա արդյունքների միջև գոյություն ունեցող կապերի ձևերում: Այդ միջոցառումների իրականացման շնորհիվ զգալիորեն կատարելագործվեց աշխատավարձի կազմակերպման համակարգը: Այսպես, նկատելիորեն ավելացել է այն աշխատողների տեսակարար կշիռը, որոնց աշխատանքը նորմավորվում է: Վերջին



հինգ տարում ժամանակավարձով աշխատող բանվորների ընդհանուր թվաքանակի մեջ նորմավորված աշխատանք ունեցող բանվորների բաժինը գրեթե կրկնապատկվել է՝ 38-ից հասնելով 70 տոկոսի, իսկ ինժեներներինն ու ծառայողներինը՝ 20-ից 63 տոկոսի:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսվեցին աշխատանքի վարձատրության և նյութական խթանման հետագա կատարելագործման նպատակով մի շարք միջոցառումներ: ՍՍՀՄ աշխատանքի և սոցիալական հարցերի պետական կոմիտեին իրավունք է վերապահված, ՀԱՄԿԽ-ի հետ համաձայնեցնելով, մինիստրություններին և գերատեսչություններին թույլատրել արդյունաբերության առանձին ճյուղերի արտադրամիավորումներում և ձեռնարկություններում տեխնիկապես հիմնավորված առաջավոր նորմաներով աշխատելու դեպքում կիրառել մինչև 20 տոկոսով բարձրացված վարձաչափեր: Սկսած 1980 թվականից ձեռնարկություններն ու միավորումները իրավունք են ստացել աշխատանքի տեխնիկապես հիմնավորված նորմաների արմատավորման և ժամանակին դրանց վերանայման նախաձեռնությունը խթանելու համար բանվորներին միանվագ վարձատրել այդ նորմաների վերանայումից ստացվող խնայողության հաշվին: Զգալի միջոցառումներ են իրականացվել աշխատավարձի և աշխատանքի արդյունքների միջև կապը սերտացնելու նպատակով:

Այսպես, բարձրացել է պարգևի տեսակարար կշիռը աշխատավարձի ընդհանուր գումարում. ներկայումս այն կազմում է տարիֆային դրույքների (պաշտոնական ռոճիկների) մեկ չորրորդից մինչև երկու երրորդը:

Աշխատանքի արտադրողականության աճի արագացման գործում արտադրական կոլեկտիվների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով արտադրամիավորումներին (ձեռնարկություններին) իրավունք է վերապահված աշխատավարձի պլանային ֆոնդի նկատմամբ փաստացի ֆոնդի խնայողության հաշվին բանվորներին և ծառայողներին տալ հավելավճարներ: Կուսակցության և կառավարության նոր որոշմամբ (1979 թ. հուլիս) զգալի փոփոխություններ են կատարվում նաև արտադրական կոլեկտիվների աշխատավարձի ֆոնդի պլանավորման բնագավառում:

Չնայած վերը նշված կարևոր միջոցառումների իրականացմանը, հիմնական աշխատավարձը դեռևս ըստ ամենայնի չի խթանում արտադրության արդյունավետության բարձրացմանը, քանի որ վարձատրության կազմակերպման այժմյան մեխանիզմը լիովին չի համապատասխանում զարգացած սոցիալիզմի պահանջներին: Կատարելագործման խիստ կարիք է զգում, առաջին հերթին, աշխատանքի նորմավորումը: Այսօրվա դրությամբ ժամանակավարձով վճարվող բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների մոտ մեկ երրորդի համար բացակայում են աշխատանքի նորմաները, թեև այդ աշխատողների թվաքանակն ու տեսակարար կշիռն անընդհատ մեծանում են: Տեխնիկական առաջընթացի ժամանակակից պայմաններում խիստ հնացել են ձեռնարկություններում գործող աշխատանքի նորմաները, որի հետևանքով այդ նորմաների կատարման մակարդակը կազմում է 120—130, իսկ օժանդակ աշխատանքներում՝ 130—150 տոկոս:

Հետևաբար, արդի պայմաններում անհատական աշխատանքի արտադրողականության աճի խթանումը, որն իրականացվում է արտադրանքի նորմաների գերակատարումը խրախուսելու միջոցով, ավելի ու ավելի է սպառում իրեն՝ վարձատրության գործարքային ձևի հարաբերական կրճատման կապակցությամբ: Ավելին, գործավարձային ձևը հաճախ արգելակում է արտադրանքի նորմավորման կատարելագործումն ու աշխատողների ստեղծագործական հնարավորությունների լրիվ օգտագործումը, քանի որ անփոփոխ տարիֆային դրույքների կիրառման պայմաններում հնացած նորմաների վերանայումը աշխատավարձի իջեցում է հարուցում: Այստեղից անհրաժեշտություն է ծագում միասնական տարիֆային դրույքների հետ միասին օգտագործել շերտավորված տարիֆային դրույքներ՝ բարձր անհատական արդյունքները խթանելու նպատակով: Այդ միջոցառումների հիմնական նպատակն է խթանել աշխատանքի

արտադրողականության աճը, բարելավել աշխատանքային ռեսուրսների օգտագործումը։

Նշված միջոցառումների գործնական իրականացման համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է բարձրացված տարիֆային դրույքների և ռոճիկների փոխադրել արտադրամիավորումների այն մասնաճյուղերը, որոնք աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ փոխհատուցում են դրա համար անհրաժեշտ միջոցները՝ աշխատավարձի ֆոնդի տնտեսման հաշվին։ Դրանով իսկ հնարավորություն կստեղծվի կատարել աշխատողների, այսպես կոչված, «վերատարիֆավորում», որի դեպքում գործող տարիֆային դրույքները և ռոճիկները կծառայեն որպես աշխատավարձի երաշխավորված նվազագույն մակարդակներ, իսկ բարձրացվող դրույքներն ու ռոճիկները կշերտավորվեն ըստ աշխատողների որակավորման աստիճանի և մյուս գործոնների։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին որոշմամբ մեծ դեր է հատկացվում պլանավորման բարելավմանը և ամենից առաջ հնգամյա պլանի դերի բարձրացմանը։ Բնականաբար, արտադրական կոլեկտիվների տնտեսական գործունեության բոլոր կողմերը, այդ թվում և աշխատավարձի ֆոնդը պլանավորվելու են հնգամյակի առումով՝ բաշխվելով ըստ տարիների։ Այստեղից էլ հետևում է տարիֆային դրույքներն ու ռոճիկները յուրաքանչյուր հնգամյակում ու հնգամյա պլանի տվյալ տարում վերանայելու նպատակահարմարությունը։ Ընդ որում տարիֆային դրույքների և ռոճիկների ամենամյա բարձրացումը կարող է իրականացվել ձեռնարկություններին և միավորումներին պլանավորվող աշխատավարձի ֆոնդի աճի սահմաններում, աշխատավարձի միջին մեծության չափով՝ առնչելով հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։

Նշված առաջարկությունների գործնական իրականացումը կնպաստի աշխատողների նյութական շահագրգռվածության ուժեղացմանը՝ արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման բնագավառում։

---

# ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ


**Ա. Խ. ՆԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու
**Վ. Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ**


ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ արդյունավետության բարձ-
րացումը մեծապես պայմանավորված է ինտենսիվաց-
ման հիման վրա արտադրության տեխնիկատնտեսական մակարդակի աճով։
Ինտենսիվացման նախապայմանը մեքենաշինական այն ֆոնդաստեղծ ճյուղերն
են, որոնք առավելագույնս նպաստում են գիտատեխնիկական առաջընթացի
արագացմանը։ Հանրապետության մեքենաշինության մեջ կենտրոնացված է
գիտատեխնիկական ու արտադրական մեծ պոտենցիալ, և դա որոշակի դեր է
խաղում արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման
պրոբլեմների լուծման գործում։

ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց, որ անհրաժեշտ է «հաստատա-
կամորեն բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը նրա
համակողմանի ինտենսիվացման հիման վրա, բարելավել արտադրանքի և
սպասարկումների որակը բոլոր ճյուղերում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյու-
թերը, էջ 227)։

Արտադրության առաջընթացի ինտենսիվ գործոնների կիրառումը ենթա-
դրում է էկոնոմիկայի զարգացման յուրաքանչյուր փուլում արտադրության ավ-
տոմատացման անհրաժեշտ միջոցների ստեղծում, գործող ձեռնարկություննե-
րի տեխնիկական մակարդակի բարձրացում՝ հայրենական և արտասահ-
մանյան լավագույն ստանդարտների աստիճանի, նյութական և աշխատանքա-
յին ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործում։ Մինչդեռ իրականում ոչ
միշտ է մեքենաշինական արտադրության առանձին տեղամասերի ինտենսի-
վացումն ու վերազինումն ուղեկցվում մյուս տեղամասերում իրականացվող
համանման պրոցեսներով, և վերջիններս շարունակում են գործել հնացած տեխ-
նիկական, տեխնոլոգիական և կազմակերպական հիմունքներով։ Դա հանգեց-
նում է արտադրական ռեսուրսների և դրանց պոտենցիալի անբավարար օգ-
տագործմանը։ Առանձնապես բացասաբար է դա անդրադառնում սև մետաղ-
ների օգտագործման գործակցի և թողարկվող արտադրանքի տեխնիկական մա-
կարդակի բարձրացման, իրերի կառուցվածքատեխնոլոգիական և շահագործո-
ղական հատկանիշների բարելավման վրա։

Ինտենսիվացումը ենթադրում է նաև նյութերի մշակման առավել պրոգրե-
սիվ մեթոդների կիրառում, կենդանի աշխատանքի և սարքավորումների օգտա-
գործման բարելավում, ուստի հարկ է այն տարբերել արտադրության արդյու-
նավետությունից։ Ընդ որում կարևոր է նկատի ունենալ, որ ինտենսիվացման
նյութական նախադրյալները, թողարկվող և ներդրվող հաստոցների ու սարքա-
վորումների տեխնիկական պարամետրերը միշտ չէ, որ նպաստում են արտա-
դրության արդյունավետության բարձրացմանը և միավոր արտադրանքի թո-
ղարկման համար արտադրական ծախսումների կրճատմանը։ Ուստի միավոր հզորության հաշվով ար-
տադրանքի թողարկման ցուցանիշը կարող է լինել ցածր։ Դրա հետևանքով ծա-

սակներ։ Դա նշանակում է, որ արտադրանքի մոդեռնացման և նոր արտադրատեսակների յուրացման նպատակով ներդրվող միջոցառումներում նորությունն աննշան է, որը չի նպաստում արտադրանքի տեխնիկական ցուցանիշների բարելավմանը։

Իսկ ինչպե՞ս է բնութագրվում միջոցառումների ներդրման ծախսերի արդյունավետությունը։ Անցած հնգամյակում նոր տեխնիկայի ներդրման համար ծախսերն ավելացել են կրկնակի չափով, մինչդեռ պայմանականորեն ազատված բանվորների թիվը, լրացուցիչ շահույթը և տարեկան տնտեսական արդյունքը համապատասխանաբար աճել են 1,2, 1,5 և 1,3 անգամ։ Ընդ որում ծախսված մեկ ռուբլու դիմաց շահույթը նույնիսկ նվազել է 9 կոպեկով, որի հետևանքով ծախսերի հատուցման ժամկետը ավելացել է 0,7 տարով։

Առանձին ցուցանիշների նվազեցման պատճառներից մեկը այդ ծախսերի արդյունավետության փոփոխությունն է։ Այսպես, հաստոցաշինության և ռադիոէլեկտրոնիկայի մեջ մեկ ռուբլի ծախսի հաշվով շահույթը նվազել է 51 և 40 կոպեկով։ Եվ դա այն դեպքում, երբ 1980 թ. այդ ենթաճյուղերի բաժինը ծախսերի ընդհանուր ծավալում եղել է 46,1 տոկոս, լրացուցիչ շահույթում՝ 29,9 և տարեկան տնտեսական արդյունքում՝ 43,8 տոկոս։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության և նավթաքիմիական մեքենաշինության մեջ ծախսված մեկ ռուբլու դիմաց շահույթը աճել է 45 կոպեկով, որի շնորհիվ ծախսերի հատուցման ժամկետը կրճատվել է 3,3 տարով։ Այս տվյալներից հետևում է, որ նոր տեխնիկայի համար ծախսերի ճյուղային տեղաշարժերը բավարար լիարժեքությամբ չեն նպաստում մեքենաշինության լրացուցիչ շահույթի ավելացմանը։ Այդ է պատճառը, որ առանձին միավորումներում նոր տեխնիկայի ներդրման վնասները հատուցվում են ապրանքային արտադրանքի իրացումից ստացվող շահույթի հաշվին։ Դրա հետևանքով, մշակված մի շարք միջոցառումներ սեփական միջոցների անբավարարության պատճառով չեն ներդրվում։ Այդ մասին է վկայում նոր տեխնիկայի ներդրման ծախսերի կառուցվածքի վերլուծությունը։ Դրանք գոյանում են հետևյալ աղբյուրներից. կենտրոնացված միջոցների հատկացումներից (10 տոկոս), արտադրության զարգացման ֆոնդից (17), նոր տեխնիկայի ներդրման ֆոնդից (33), գիտության և տեխնիկայի զարգացման ֆոնդից (26 տոկոս)։ Ինչպես տեսնում ենք, ծախսերի 76 տոկոսը գոյանում է ձեռնարկության սեփական միջոցներից, որը և լիովին չի ապահովում նոր տեխնիկայի ներդրման, ինչպես նաև մետաղի տնտեսման միջոցառումների մշակման և ներդրման պահանջները։

Հետևաբար, ճյուղի ձեռնարկությունների տեխնիկական կատարելագործման տեմպերի արագացումը պահանջում է, նախ, շահույթի բաշխման սիստեմի կատարելագործման միջոցով լուծել ձեռնարկությունների ինքնաֆինանսավորման պրոբլեմը։ Ապա, բարձրացնել ձեռնարկության տեխնիկական զարգացման ֆոնդին կատարվող մասհանումների նորմատիվների չափը։ Եվ, վերջապես, տեխնիկական կատարելագործման պլանները մշակելիս հաշվի առնել յուրաքանչյուր միջոցառման նորույթը, որն ապահովում է արտադրության ինտենսիվացումը։

Ինտենսիվացման կարևոր ցուցանիշ է դառնում հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացումը։ Դրանց օգտագործման ուղղությունների և բնույթի հետևանքով ֆոնդահատույցման ցուցանիշը կարող է նվազել։ Այդ ցուցանիշի դինամիկայի ուսումնասիրությունը վկայում է, որ դրա վրա ներգործում են ինչպես արտադրության մի շարք տեխնիկատնտեսական և սոցիալական գործոնները, այնպես էլ սարքավորումների օգտագործման ինտենսիվությունը։ Այստեղից հետևում է, որ ճյուղի զարգացման առանձին փուլերում ֆոնդահատույցի դանդաղումը կամ նվազումը չի կարելի բնութագրել որպես տնտեսական բացասական երևույթ։ Անհրաժեշտ է նկատի ունենալ այնպիսի ցուցանիշների փոփոխությունները, ինչպես թողարկվող միավոր արտադրանքի համար նյութական և աշխատանքային տեսակարար ծախսերի կրճատումը, տեխնիկական և շահագործողական հատկանիշների բարելավման շնորհիվ թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացումը, մեքենաների



հուսալիությունը և հարատևությունը, ինչպես նաև առաջադեմ տեխնոլոգիական սարքավորումների կիրառումը, աշխատանքի ծանր և վնասակար պայմանների բարելավումը, արտադրության ավտոմատացման և ձեռքի աշխատանքի մեքենայացման մակարդակի բարձրացումը։ Նշված առավելությունների բացակայության դեպքում ֆոնդահատույցման նվազեցման կամ տեմպերի դանդաղեցման պատճառները հարկ է որոնել ոչ թե նոր հաստոցների և սարքավորումների օգտագործման, այլ դրանց ստեղծման պրոցեսում։ Այսինքն՝ հանրային արտադրության մեջ մեքենաների ու սարքավորումների տվյալ տեսակների կիրառման տնտեսական նպատակահարմարությունը բխում է հենց դրանց կառուցվածքից և հատկանիշներից, ուստի ներդրված կամ ներդրվող նոր տեխնիկան դեռևս անհրաժեշտ չափով չի նպաստում մետաղի օգտագործման գործակցի բարձրացմանը, արտադրական մյուս ծախսերի կրճատմանը, թողարկվող արտադրանքի տեխնիկական հատկանիշների բարելավմանը։ Արտադրության միևնույն պայմաններում ինտենսիվացումը պայմանավորված է նաև հիմնական ֆոնդերի օգտագործմամբ։ Վերլուծությունը վկայում է, որ սարքավորումների նվազ ծանրաբեռնվածության հետևանքով (0,6—0,7) ճյուղում ֆոնդահատույցն աճում է ցածր տեմպերով, որը չի համապատասխանում ձեռնարկությունների հաստոցային պարկի շահագործման արդի պահանջներին։ Դա հիմնականում բացատրվում է նրանով, որ սարքավորումների հերթափոխայնության գործակիցը չի արտացոլում հաստոցների և մեքենաների, ինչպես և արտադրահզորությունների օգտագործման իրական մակարդակը։ Եթե նշված ճյուղում 1975 թ. մեկ ռուբլու հիմնական ֆոնդի հաշվով ստացվում էր 1,73 ռուբլու արտադրանք, այդ թվում՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերությունում՝ 1,91, հաստոցաշինության մեջ՝ 1,2, սարքաշինությունում՝ 3,82, ավտոմեքենաշինությունում՝ 1,05, ապա այդ ցուցանիշները 1980 թ. կազմեցին համապատասխանաբար՝ 1,75, 1,97, 1,15, 3,86 և 1,05։ Ֆոնդահատույցի ծայրահեղ ցածր տեմպերը սարքավորումների ակտիվ մասի նվազ ծանրաբեռնվածության և հերթափոխայնության միավոր գործակցին համապատասխանող ցածր արտադրողականության արգասիք են։

Ճյուղում արտադրության ինտենսիվացման վերլուծությունը վկայում է նրա ցածր տեմպերի մասին, քանի որ ֆոնդերի ակտիվ մասի և գործարկված հզորությունների աճի պայմաններում մետաղի օգտագործման գործակիցը շարունակում է մնալ ցածր, իսկ տնտեսական գործող լծակները չեն նպաստում արտադրառեսուրսների պոտենցիալի լրիվ օգտագործմանը։ Կարևոր է նաև տնտեսական լծակների ինտենսիվացումը։ Արտադրության ինտեգրացման պրոցեսում միջճյուղային և ներճյուղային կապերի ընդլայնումը և խորացումը տնտեսական լուրջ պրոբլեմ է։ Տնտեսական լծակների ինտենսիվացումը ոչ միայն նյութական և աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման խթան է, այլև նյութական արտադրության տեխնոլոգիական ողջ շղթայի տնտեսական աճի տեմպերի հետ տնտեսական մեխանիզմի համապատասխանություն։

Գիտատեխնիկական առաջընթացի ազդեցությամբ կատարելագործվում է ճյուղի ինֆրակառուցվածքը, որն իրականացվում է արտադրության տեխնիկատնտեսական մակարդակի հիմնական բաղադրամասերի զուգակցմամբ։ Իսկ դրանց օպտիմալ կիրառումը ենթադրում է արտադրության արդյունավետության և արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման պահանջներին համապատասխանող՝ տնտեսավարման նոր մեթոդների մշակում և ներդրում։

Այդ մեթոդները կօգնեն ընտրելու արդյունավետության բարձրացման խնդիրների լուծման լավագույն տարբերակները և կենդանի ու մեքենայական աշխատանքի փոխադարձ փոխարինելիության լավագույն չափանիշները։ Այդ գնահատականը պետք է բխի գիտատեխնիկական նպատակով կատարված ծախսերի և դրանց արդյունավետության ցուցանիշների համադրումից։ Ծախսերի մեջ հարկ է ներառնել նոր մեքենաների ստեղծման, թողարկվող արտադրանքի մոդեռնացման, առաջավոր տեխնոլոգիայի, նոր նյութերի և աշխատանքի կազմակերպման, նոր մեթոդների ներդրման նպատակով կատարված հատկացում-

ները։ Արտադրական ծախսերի արդյունավետությունը պայմանավորված է դրանց նորմավորման բարելավմամբ, նվազագույն ծախսումների հաշվարկման նոր մեթոդների կիրառմամբ, արտադրության կազմակերպման կատարելագործմամբ։

Նոր մեքենաների ստեղծման ծախսերը և դրանց պարամետրերի աճը գերազանցում է նույն մեքենաների օգտագործման աստիճանը։ Ուստի թողարկվող նոր մեքենաների կառուցվածքի բարելավումը, դրանց առավելագույն օգտագործումը, մեքենաշինության ճյուղերի և ձեռնարկությունների միջև տեխնիկայի բաշխման սիստեմի կատարելագործումը, սարքավորումների օգտագործման ռեժիմի պայմանների միատեսակացումը դառնում են հրատապ պրոբլեմներ։

Հանրապետության մեքենաշինության կառուցվածքի կատարելագործման շնորհիվ էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական և սարքաշինական արդյունաբերության մեջ նոր մեքենաների նմուշների թիվն աճել է 3—5 անգամ։ Ընդ որում որոշակի տեղաշարժեր են կատարվել կենդանի և առարկայացած աշխատանքի հարաբերության միջև։ Եթե 1960—1970 թթ. դրանց տեսակարար կշիռն ընդհանուր ծախսումներում համապատասխանաբար 40 և 60 տոկոս էր, ապա այժմ այն հասել է 20 և 80 տոկոսի։ Արդյունաբերության և մեքենաշինության արտադրանքի ընդհանուր ծավալում նյութական ծախսումների բաժինը համարյա չի նվազում և համապատասխանաբար կազմում է 64 և 54 տոկոս, որի հետևանքով ճյուղի նյութական տեսակարար ծախսումների մեջ սև գլանվածքի բաժինը վերջին տարիներին չափազանց դանդաղ է նվազում։

Հայտնի է, որ անցած հնգամյակում լուրջ դժվարություններ կային մետաղի տնտեսման առաջադրանքները կատարելու գործում հատկապես այն ձեռնարկություններում, որոնց արտադրանքի վաղեմության ժամկետն անցնում է ութ տարուց։ Քանի որ մինչև հինգ տարի վաղեմություն ունեցող արտադրանք թողարկող ձեռնարկություններում առկա են մեքենաների կառուցվածքի բարելավման և մետաղի խնայողության առավել մեծ հնարավորություններ, ուստի հարկավոր է մետաղի խնայողության պլանը տարբերակել ձեռնարկությունների տարբեր խմբերի համար։ Կարելի է նաև հաշվի առնել նոր արտադրատեսակների իրացման ժամկետների կրճատման հնարավորությունը, որը կնպաստի նյութական և աշխատանքային ծախսումների կրճատմանը՝ հենց իրացման պրոցեսում կորուստների նվազեցման հաշվին։ Ըստ մեր կատարած ուսումնասիրությունների, հանրապետության մեքենաշինության մեջ մետաղների տնտեսման առաջադրանքի թերակատարումը բացատրվում է այն բանով, որ ներդրված նոր տեխնիկական և տեխնոլոգիական պրոցեսները չեն ապահովում մեքենաների դետալների պատրաստման համար մետաղի ծախսումների նորմաների նվազեցումը։ Դա հատկապես վերաբերում է ձուլվածքամամլիչային սարքավորումներին, ծանր և կարուսելային հաստոցներին։ Դրան զուգընթաց, մի շարք ձեռնարկություններում թողարկվում են հնացած մեքենաներ և սարքավորումներ, որը լրջորեն խոչընդոտում է դրանց կառուցվածքի, տեխնոլոգիական պրոցեսների և տեխնիկական հատկանիշների հետագա բարելավմանը։ Շատ ձեռնարկություններ ստիպված են օգտագործել սև և գունավոր մետաղների ոչ պրոֆիլային գլանվածք։ Այս ամենի հետևանքով մետաղի օգտագործման գործակիցը չի գերազանցում 0,6-ին։ Պահանջվող մակարդակի վրա չի գտնվում մետաղի գլանվածքի ծախսումների նորմավորումը, ընդ որում չհիմնավորված բարձր նորմաներ են գոյանում ձեռնարկությունների մեծ մասում և վերջին տարիներին դրանք աննշան չափերով են նվազում։ Չուգունե ձուլվածքի և սև մետաղների ծախսումների բարձրացված նորմաների պայմաններում դրանց օգտագործման գործակիցը նույնպես բարձր է գեներատորների (0,9 և 0,55), խոշոր էլեկտրական մեքենաների (0,8 և 0,71), վերափոխակերպիչների և տրանսֆորմատորների (0,8 և 0,66, 0,85 և 0,88) արտադրությունում։

Մետաղի տնտեսման և մեքենաշինությունում դրա օգտագործման գործակիցը բարձրացնելու համար անհրաժեշտ է ներդնել հաստոցների սկզբունքորեն



նոր մոդելներ և դետալների մշակման առաջավոր մեթոդներ ինչպես ձուլվածքամամլիչային, այնպես էլ մեխանիկական արտադրություններում։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ XXVI համագումարում Ն. Ա. Տիխոնովը նշեց, որ «Հիմնական ֆոնդերը դանդաղ են նորացվում գործող ձեռնարկություններում և բացի դրանից, մի շարք դեպքերում նոր գործարկվող սարքավորումները իրենց տեխնիկատնտեսական պարամետրերով քիչ բանով են տարբերվում արդեն գործողներից, իսկ արժեքով ավելի բարձր են» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 178)։

Հայրենական և արտասահմանյան փորձը վկայում է, որ մետաղի տնտեսման մեծ ռեզերվներ կան մեխանիկական արտադրությունում, որտեղ մետաղի օգտագործման գործակիցը 0,5 է, ձուլվածքամամլիչային արտադրության 0,9-ի փոխարեն։ Հետևաբար, մետաղի տնտեսման հիմնական միջոցներից մեկը մեխանիկական մշակման ծավալի բեռնաթափումն է և դրա փոխարեն ձուլվածքամամլիչային արտադրության ծավալի մեծացումը։ Խնայողության կարևոր ռեզերվներ են համարակալված գլանվածքի մատակարարումների նկատմամբ հսկողության ուժեղացումը, ոչ պրոֆիլային գլանվածքի օգտագործման դադարեցումը, մետաղների ծախսումների նորմավորման համակարգի կատարելագործումը, մետաղի մշակման տեխնիկական պայմանների և ռեժիմի խստիվ պահպանումը։ Նպատակահարմար է խորացնել և ընդլայնել ունիվերսալ հատուկ հարմարանքների, շտամպների, մատրիցաների կիրառման մասշտաբները, որը կնպաստի ինչպես խնայողությանը, այնպես էլ հիմնական ֆոնդերի օգտագործման գործակցի բարձրացմանը։

Ինտենսիվացումն ուժեղացնելու համար պահանջվում է իրականացնել մի շարք միջոցառումներ, որոնք առնչվում են արտադրական հզորությունների զուգորդման հետ՝ հաշվի առնելով հատուկ և մասնագիտացված, ինչպես նաև թվածրագրային կառավարմամբ հաստոցների և ավտոմատ գծերի ծանրաբեռնվածության մեծացումը։ Այստեղ պետք է ավելացնել նաև արտադրահզորությունների որոշման մեթոդիկայի կատարելագործումը, ներառելով նաև օժանդակ այն արտադրամասերի հզորությունները, որոնք անմիջականորեն առնչվում են հիմնական արտադրության հետ։ Ընդ որում հաշվարկները հարկ է կատարել հերթափոխության, ինչպես նաև սարքավորումների ծանրաբեռնվածության գործակիցների և աշխատանքային նորմաների լարվածության աստիճանի հիման վրա։

Այս խնդիրների լուծումը պահանջում է արտադրահզորությունների տարրերի արտադրողականությունը հավասարակշռել թողարկվող արտադրանքի աշխատատարության կառուցվածքի հետ, որը հնարավորություն կընձեռի վերացնելու ձեռնարկության սարքավորումների և աշխատուժի տարեկան աշխատանքային ֆոնդերի միջև եղած անհամամասնությունը։

Այսպիսով, ճյուղի արտադրության ինտենսիվացումն ունի մի շարք փոխկապակցված փուլեր։ Դրանք ընթանում են տեխնիկայի վերարտադրության պայմաններում, որն իրականացվում է բնաիրային և արժեքային ձևերով։ Այդպիսի վերարտադրությունը և արտադրության ինտենսիվացումը կատարվում է ինչպես համանման, այնպես էլ նոր տեխնիկայի ներդրմամբ։ Արդեն հասունացել է ճյուղի ինտենսիվացման բարձրացման հիմնական ուղղությունների ընտրության հարցը, նկատի ունենալով նախ և առաջ թողարկվող արտադրանքի կազմի և հաստոցային պարկի արմատական նորացումը։ Այդ ուղղությունները մինչև այժմ բնութագրվել են համանման տեխնիկայի թողարկմամբ և օգտագործմամբ, համեմատաբար ցածրարժեք նոր տեխնիկայի ներդրմամբ, բարձր արտադրողական տեխնիկայի օգտագործումը պակաս ծավալով և արժեքով։ Այդ ամենն իրականացվել է գործող ձեռնարկությունների ընդլայնման, տեխնիկական վերազինման և վերակառուցման պայմաններում։ Փորձը ցույց է տալիս, որ ճյուղի ինտենսիվացման առավել արդյունավետ ձևը արտադրության վերակառուցումն է, որն այժմ առաջատար տեղ ունի տեխնիկայի ընդլայնված վերարտադրության պրոցեսում։ Վերարտադրության այս ձևին նախապատվու-

թյուն տալը հիմնավորվում է նրանով, որ տվյալ դեպքում շինմոնտաժային աշխատանքի ծավալը չի գերազանցում կապիտալ ներդրումների 20—25 տոկոսին։

Ուստի հանրապետությունում մեքենաշինության մեջ արտադրության տեխնիկատնտեսական մակարդակի բարձրացման խնդիրները լուծելու համար անհրաժեշտ է կատարելագործել արտադրության վերակառուցման համակարգը, նկատի ունենալով առանձին ձեռնարկությունների միջև սկզբունքորեն նոր տեսակի մեքենաների բաշխումն ու իրացումը՝ չխախտելով այդ ձեռնարկությունների հիմնական արտադրության տեխնիկական ընդհանրությունն ու պրոֆիլը։ Ընդ որում նպատակահարմար է գործող ձեռնարկությունների հիման վրա կազմավորել արտադրական և գիտաարտադրական նոր միավորումներ ու կոմպլեքսներ։ Այդ միջոցառումների իրականացումը, անշուշտ, կնպաստի թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացմանը, ավտոմատ և կոմպլեքսային-ավտոմատ հարահոս գծերի ներդրմանը։ Դա կնպաստի նաև հաստոցային պարկի և արտադրանքի տեսականու նորացման տեմպերի արագացմանը, համաշխարհային ստանդարտին համապատասխանող նոր արտադրատեսակների իրացման ժամկետների կրճատմանը։

Նշված խնդիրների լուծման և արտադրության ինտենսիվացման բարձրացման համար համապատասխան պայմանների ստեղծման նպատակով սկզբունքային նշանակություն ունի նոր տեխնիկայի մշակման, արտադրության և ներդրման խթանման համակարգում տնտեսական լծակների գործողության կատարելագործումը։ Այսպիսով, ինտենսիվացումը, որպես արտադրության տեխնիկատնտեսական մակարդակը բնութագրող ցուցանիշների համակարգ, կազմավորվում է տեխնիկայի վերարտադրության պայմաններում և իրականացվում կոնստրուկտորական-տեխնոլոգիական այնպիսի միջոցառումներով, որոնց տնտեսական չափանիշը պետք է համարել արտադրության ինտենսիվացման արդյունավետության բարձրացումը, հետևապես հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների լուծման նյութական նախադրյալների ստեղծումը։

---

# ԲՆԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Կ. Ա. ԹՈՐՈՍՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու
**Ծ. Ի. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

*ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ տնտեսական կատեգորիա է, որի դրսևորման էական գործոններից է աշխարհագրական միջավայրը։ Բնությունը և հասարակությունն անբաժանելի են, դրանց միջև ծավալվող կապերը նորանոր խնդիրներ են դնում նյութական արժեքների արտադրության առջև։ Ավելանում են էներգիայի ստացման ու փոխանցման, հումքի արդյունահանման, բնական ռեսուրսների հավասարակշռվածությունն ապահովելու ծախսերը։ Օգտակար հանածոների արդյունահանման պայմանների բարդացման հետևանքով զգալիորեն մեծանում է արտադրանքի ինքնարժեքը։ Այսպես, 1968—1976 թթ. նավթի ինքնարժեքն ավելացել է 40 տոկոսով, գազինը՝ 2 անգամ, երկաթինը՝ 36 տոկոսով, փայտանյութինը՝ 32 տոկոսով։*

*80-ական թվականները կբնորոշվեն ժողովրդական տնտեսության զարգացումը բարդացնող մի շարք նոր գործոններով։ Դրանց թվում՝ աշխատանքային ռեսուրսների աճի կրճատումը, Արևելքի ու Հյուսիսի յուրացման, ինչպես նաև շրջակա միջավայրի պահպանության համար ծախսումների անխուսափելի աճը (տե՛ս* ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 60—61)։*

*Մարդկանց գոյության համար անհրաժեշտ սպառողական արժեքների վերլուծությունը հաստատում է, որ նյութական հարստության աղբյուր է ո՛չ միայն աշխատանքը, այլ նաև բնությունը։ Դեռևս չի հաղթահարված այն հակագիտական տեսակետը, ըստ որի հարստության միակ աղբյուրը համարվում է աշխատանքը։ Ժամանակին Կ. Մարքսը նկատել է. «Բնությունը նույնչափ աղբյուր է սպառողական արժեքների (իսկ չէ որ հենց դրանցից է կազմված նյութական հարստությունը), որչափ և աշխատանքը»* (К. Маркс и Ф. Энгельс. Соч., изд. 2-е, т. 19, стр. 13):

*Նկատի ունենալով շրջակա միջավայրի և բնական ռեսուրսների կարևոր դերը, կուսակցությունը գտնում է, որ «Սովետական գիտնականների տեսադաշտից չպետք է դուրս մնան շրջակա միջավայրի և ազգաբնակչության՝ վերջին ժամանակներս սրված պրոբլեմները» (*ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 109)։ Այդ պրոբլեմների հրատապությունը կապված է «այն բանի հետ, որ խոսքը վերաբերվում է անվերականգնելի հարստություններին։ Դրանց ճիշտ, խնայողական օգտագործման համար մենք պատասխանատվություն ենք կրում ո՛չ միայն ներկա սերնդի, այլև գալիք սերունդների հանդեպ։ Եվ դա ոչ ոք իրավունք չունի մոռանալու» (*ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 67)։*

*Բնական հարստությունների առկայությունը, դրանց ծավալը և սպառողական հատկությունները նյութական արտադրության կարևորագույն նախադրյալներն են, որոնցով զգալիորեն պայմանավորված է արտադրաուժերի զար-*

գացումը հասարակության կյանքում: Սակայն հասարակությունը չի կարող գոյություն ունենալ և զարգանալ միայն բնության պարգևած նյութական բարիքներով: Իր պահանջմունքները բավարարելու նպատակով մարդը պատրաստում է նաև այնպիսի իրեր, որոնք չկան բնության մեջ: Մեզ շրջապատող բնական արժեքները, որոնք բավարարում են արտադրական և անձնական պահանջմունքները, հասարակության գոյության անհրաժեշտ պայմաններն են: Դրանք են՝ հողը, բուսական և կենդանական աշխարհը, ջրային ռեսուրսները, բարենպաստ բնակլիմայական պայմանները, երկրի մթնոլորտի առանձին տարրերը, օգտակար հանածոները և այլն: Այս ռեսուրսների նշանակությունը հասարակական հարստության վերարտադրության գործում շատ մեծ է հատկապես զարգացման արդի փուլում: Դրանք առնչվում են ժողովրդական տնտեսության պլանավորման պրակտիկայի հետ, կարևոր նշանակություն ունեն տնտեսական և այլ բնույթի հարցերը լուծելիս: Նյութական հարստության դերը գնահատելիս հարկ է նկատի առնել, որ բնությունը մարդկային գործունեության մշտական պայմանն է, կենսամիջոցների հայթայթման նպատակով հասարակության ներգործման օբյեկտ, արտադրական և անձնական սպառման համար՝ ելակետային նյութական հիմք:

Այս առնչությամբ անհրաժեշտ է ուսումնասիրել և խմբավորել բնական հարստությունների կառուցվածքը: Այդ հարստությունները կարելի է դասակարգել հետևյալ կերպ. չհետախուզված, հետախուզված-պոտենցիալ, հետախուզված-ակտիվային և ակտիվային: Այսպիսի խմբավորումը հաստատում է, որ հասարակության բնական հիմքը բնավ չի սահմանափակվում երկրի կենսաբանական կամ աշխարհագրական ոլորտների շրջանակներում:

Չհետախուզված բնական հարստություն կարելի է համարել այն բնատուր անթիվ նյութերը, իրերն ու առարկաները, որոնց մարդը դեռևս չի ճանաչել կամ ճանաչել է, բայց գիտությունը դեռևս չի ապացուցել դրանց արտադրական օգտակարությունը:

Մարդկային մտածողության զարգացմանը զուգընթաց գիտությանն անհայտ նոր նյութական օբյեկտները ո՛չ միայն բացահայտվում են, այլև մշտապես ենթարկվում են աշխատանքի ներգործության, վերափոխվում: Իրոք, բնության մեջ գոյություն ունեն անսահման քանակությամբ զանազան առարկաներ, որոնք առանց մարդու միջամտության մի ձևից անընդհատ փոխարկվում են մի այլ ձևի:

Գիտությունը, բացահայտելով անեղր բնության օրենքները, միտում է վեր հանելու բնական հարստությունները և դրանք ծառայեցնելու մարդկանց շահերին: Այս իմաստով գիտությունն ինքը դառնում է կարևոր արտադրաուժ: Մարդը գիտության միջոցով հայտնաբերում է իրերի օգտակար հատկությունները, ի հայտ բերելով արտադրական նշանակություն ունեցող լրացուցիչ ռեսուրսներ, նորանոր բնական հարստություններ: Այս առումով հատկանշական են արդի տիեզերական հետազոտությունները, որոնց նպատակն է արտադրական և այլ կարիքների համար օգտագործել երկրամերձ շրջանները, լուծել բնության պահպանման մի շարք հրատապ պրոբլեմներ: Գենետիկան իր հերթին ձգտում է հասնել բույսերի ժառանգականության այնպիսի փոփոխության, որը կարող է ինտենսիվացնել թթվածնի վերականգնումը, նպաստել սննդամթերքի արտադրության ավելացմանը: Եթե, ասենք, լուսնային ապառները դեռևս չհայտնագործված հարստության օբյեկտ են, ապա մոտ ապագայում դրանք կարող են վերածվել հետախուզված-պոտենցիալ հարստության:

Բնական է, որ ոչ բոլոր հայտնագործված հարստություններն են անմիջապես օգտագործելի: Այն հայտնագործված բնական ռեսուրսները, որոնք դեռևս արտադրության մեջ չեն օգտագործվում, վերջինիս նկատմամբ գտնվում են պոտենցիալ վիճակում: Ուստի բնության այն նյութերի ամբողջությունը, որն ընդունվում է որպես աշխատանքի առարկա կամ միջոց, սակայն դեռևս այդպիսիք չի հանդիսանում, հայտնագործված պոտենցիալ հարստություն է: Այն ընդգրկում է հետազոտման հետ առնչվող որոշակի հասարակական ծախքեր, որոնք ելակետային են հասարակական հարստության կազմավորման համար:



Վերոհիշյալ հարստությունը արդյունահանման և մշակման նպատակով հետախուզված-ակտիվային հարստության վերափոխելու համար անհրաժեշտ է նոր միջոցներ ներդնել: Ուստի բնական հարստությունը որքան մոտ է արտադրությանը, այնքան մեծ են դրա վրա կատարվող հասարակական ծախքերը:

Չհայտնաբերված հարստությունն անսահմանորեն ավելի շատ է հետախուզվածի համեմատ: Վերջինս հասարակական նոր ծախքերի շնորհիվ վերածվում է հետախուզված-ակտիվային հարստության: Եթե հետախուզված-պոտենցիալ հարստությունը բնորոշում է հասարակական հարստության ելակետային սահմանը, ապա հետախուզված-ակտիվային հարստությունը արտադրության պրոցեսի անբաժանելի մասն է: Հետևաբար, բնական հարստությունը նյութական բարիքների արտադրության մշտական նախապայմանն է: Որքան առատ են հայտնաբերված բնական ռեսուրսների աղբյուրները, այնքան մեծ են աշխատանքով ստեղծված հարստության նյութական մասի ավելացման հնարավորությունները:

Բնական հարստության տարբեր խմբերի միջև գոյություն ունի ներքին դիալեկտիկական կապ: Հետախուզված պոտենցիալ և հետախուզված-ակտիվային հարստությունների միջև եղած այդ կապում չպետք է անտեսել բարոյական մաշվածության խնդիրը: Հետախուզված պոտենցիալ հարստությունը կարող է բարոյապես մաշվել, եթե նրա յուրացումը և մշակումը չափից ավելի ձգձգվում է: Այդպես կարող է պատահել, օրինակ, միանգամայն նոր տեխնոլոգիաներ մշակելիս ու ներդնելիս, երբ հայտնաբերվում է համեմատաբար էժան փոխարինող կամ հետախուզված-պոտենցիալ հարստության մշակումն անհնար է դառնում, ասենք՝ արտադրության նոր տեխնոլոգիային չհամապատասխանելու պատճառով: Այս դեպքում այն նորից վերածվում է չհայտնագործված հարստության: Նման պայմաններում կատարված ծախսումները փաստորեն դառնում են կորսված:

Հարստության ակտիվային մասի սահմանման համար ամբողջ բնական հարստությունը կարելի է բաժանել երկու մեծ խմբերի՝ անմիջական կենսական նշանակություն ունեցող և աշխատանքի միջոց հանդես եկող բնական հարստություն: Կ. Մարքսը գրել է. «Արտաքին բնական պայմանները տնտեսապես տրոհվում են երկու մեծ խմբի— կենսամիջոցի բնական հարստության, հետևապես հողի բերրիության, ջրերի ձկնառատության և այլն, և աշխատամիջոցների բնական հարստության, ինչպես գործող ջրվեժները, նավարկելի գետերը, անտառը, մետաղները, ածուխը և այլն» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., изд. 2-е, т. 23, стр. 521):

Հասարակության զարգացման սկզբնական փուլերում մեծ նշանակություն ուներ անմիջական կենսամիջոց ներկայացնող բնական հարստությունը, իսկ զարգացման արդի էտապում, երբ մարդկանց պահանջմունքների մակարդակը բարձրացել է և արտադրաուժերի զարգացումը հսկայական վերելք է ապրել, առաջին պլան է մղվել աշխատանքի միջոցներ, առարկաներ ներկայացնող բնական հարստությունը: Սակայն դա չի նշանակում, թե նվազել է անմիջական կենսամիջոցների բնական հարստության դերը: Դրանք միմյանց լրացնում են, բայց չեն փոխարինում:

Այսպիսով, ակտիվային բնական հարստությունը մարդկանց մշտապես անհրաժեշտ նյութական բարիքների այն համախումբն է, որը պատրաստի տեսքով բնությունից տրված է օգտագործման համար (օդը, բնական լույսը, ջուրը, բերքատու հողերը, ձկան պաշարները և այլն):

Հազարամյակներ շարունակ մարդիկ բնական հարստություններն աստիճանաբար վերափոխում են իրենց կուլտուր-տնտեսական կյանքի համար անհրաժեշտ միջոցների: Այսպիսի վերափոխումը ոչ այլ ինչ է, եթե ոչ աշխատուժի ծախսման պրոցես՝ աշխատանքի պրոցես: Արտադրաուժերի զարգացման որոշակի աստիճանում մարդն իր աշխատանքով կարողացել է արտադրել ավելի շատ կենսամիջոցներ, քան իր պահանջմունքներն են: Այս իրողության ապացույցը հավելյալ աշխատաժամանակում ստեղծված հավելյալ արդյունքն է:

«...Անցյալ աշխատանքը, որը պարունակվում է աշխատուժի մեջ, և այն կենդանի աշխատանքը, որը նա կարող է կատարել, այդ աշխատանքի պահպանման օրական ծախքերը և նրա օրական ծախսումը— երկու միանգամայն տարբեր մեծություններ են... Աշխատուժի արժեքը փոքր է այդ ուժի գործադրման պրոցեսում ստեղծվող արժեքից» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., изд. 2-е, т. 23, стр. 204):

Ելնելով աշխատուժի այս յուրահատկությունից, կարելի էր ենթադրել, որ դարեր շարունակ մարդիկ պետք է ապահովված լինեին անհրաժեշտ կենսամիջոցներով: Սակայն մինչսոցիալիստական շահագործողական հասարակարգերում շահագործման եղանակով ստեղծված հարստությունը յուրացրել են միայն տիրող դասակարգերը: Հետևաբար, վճռական նշանակություն ունի ոչ թե արտադրության ծավալը կամ բնական հարստության առատությունը, այլ դրանց իրացման բնույթը, այսինքն՝ արտադրության եղանակը: Տնտեսության մասնավոր եղանակի պայմաններում մարդկանց հնկայական զանգվածը, զրկված լինելով արտադրության միջոցներից, դատապարտված է անողոք շահագործման: Նման պայմաններում աշխատավոր մարդը չի կարող օգտվել ոչ միայն իր իսկ աշխատանքի արդյունքներից, այլև բնական ակտիվ հարստության համապատասխան բաժնից:

Վերլուծելով կապիտալիստական հասարակարգում աշխատանքային օրվա տևողությունը, Կ. Մարքսը գրել է. «Նա (կապիտալը— Կ. Թ., Շ. Հ.) խլում է մարմնի աճման, զարգացման ու առողջ պահպանման համար անհրաժեշտ ժամանակը: Նա հափշտակում է այն ժամանակը, որը բանվորին անհրաժեշտ է թարմ օդից և արևի լույսից օգտվելու համար... Կապիտալին չի հուզում աշխատուժի կյանքի տևողությունը: Նրան հետաքրքրում է աշխատուժի այն մաքսիմումը, որը կարելի է աշխատանքային օրվա ընթացքում գործողության մեջ դնել: Նա այս նպատակին հասնում է աշխատուժի կյանքը կարճացնելով...» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 23, стр.275): Այս իրողությունը տարբեր ձևերով գոյություն է ունեցել նաև կապիտալիզմին նախորդած շահագործողական հասարակարգերում:

Ակտիվ բնական հարստության օգտագործումն անհրաժեշտ է յուրաքանչյուր մարդու: Որպեսզի հասարակությունը գոյություն ունենա, հարկավոր է ունենալ նաև աշխատանքի արդյունք, հարստություն, որի մի մասը ակտիվ բնական հարստության հետ միասին մարդիկ օգտագործում են որպես կենսամիջոց:

Բնական հարստության առատության ու անսպառության դեպքում ևս մարդկության մի մասը կարող է սովի մատնվել, եթե վերջնականապես չվերացվի մասնավոր սեփականության վրա հիմնված արտադրահարաբերությունների համակարգը: Բնության պահպանումը, նրա ռեսուրսների հնարավոր վերականգնումը հասարակության զարգացման ներկա փուլում՝ գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում դարձել են առավել հրատապ:

Մոնոպոլիստական կապիտալը, շահույթի ետևից ընկնելով, գիշատիչ կերպով շահագործում է բնական ռեսուրսները: Մեր մոլորակի բնական հարստությունների սպառման վտանգը մարդկանց հարկադրում է մտածել նաև ապագա սերունդների մասին: Սակայն մասնավոր սեփականության տերապետության պայմաններում բնական ռեսուրսների պլանաչափ օգտագործումը բացառվում է: Հաստատվում է Կ. Մարքսի միտքն այն մասին, որ «...կուլտուրան, եթե այն զարգանում է տարերայնորեն և ոչ թե ուղղորդվում է գիտակցաբար..., իրենից հետո թողնում է դատարկություն» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 32, стр. 45): Իսկ կապիտալն իր ինքնաճման շահից բացի ուրիշ շահ չի ճանաչում:

Այսօր բուրժուական մի շարք տեսաբաններ տագնապում են, թե մարդկային քաղաքակրթությունն անհաշտ պայքարի է ելել բնության դեմ, շրջակա միջավայրի հնարավորությունների դեմ: Եվ հաճախ արտահայտվում են ո՛չ միայն հոռետեսորեն, այլև մարդատյաց տեսություններ են առաջ քաշում: Բայց ինչպես ասել է Լ. Ի. Բրեժնևը, «կարելի է և պետք է... վեհացնել բնու-



թյունը, բնությանն օգնել առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը: Կա մի այսպիսի հասարակ, բոլորիս հայտնի արտահայտություն՝ «ծաղկող երկիր»: Այդպես են անվանում այն հողերը, որտեղ մարդկանց գիտելիքները, փորձը, նրանց կապվածությունը, սերը բնության հանդեպ, հիրավի, հրաշքներ են գործում: Դա մեր սոցիալիստական ուղին է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 79):

Բնության նկատմամբ կապիտալիստական աշխարհի գիշատչական վերաբերմունքը կարող է հանգեցնել և արդեն հանգեցնում է ծանր հետևանքների: Մարդը ծնվում է բնության մեջ և այն իրեն է ենթարկում իր բանականության ուժով, աշխատանքի հասարակական կազմակերպման շնորհիվ: Բայց նա ձեռնամուխ է լինում բնության իրական պահպանությանն այն ժամանակ, երբ շահագործումից ազատվում է ոչ միայն ինքը, այլև աշխատուժը, հետևաբար և առարկայացած աշխատանքը: Ուստի միայն համաշխարհային կոմունիստական քաղաքակրթությունը երկրագնդի վրա կվերացնի ինչպես հասարակական հարստության, այնպես էլ մարդկային հասարակության տարերային վերարտադրությունը: Մարդու կողմից մարդու, ինչպես նաև մարդու կողմից բնության շահագործման բոլոր ձևերը պատմության մեջ կմնան միայն որպես անցյալի փաստեր:

Նոր կյանքի կառուցման փորձը ապացուցում է, որ հասարակությունը շահագրգռված է գիտականորեն հիմնավորված, պլանաչափ ձևով օգտագործելու բնական հարստությունը միայն սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում:

ՍՄԿԿ XXVI համագումարը, հաստատելով երկրի սոցիալ-տնտեսական հետագա զարգացման հիմնական ուղղությունները, նշեց, որ տասնմեկերորդ հնգամյակում գիտության ու տեխնիկայի առաջընթացը մեծ չափով ի սպաս կդրվի սովետական ժողովրդի տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծմանը, հանրային արտադրության ինտենսիվացմանը և արդյունավետության բարձրացմանը, նկատի ունենալով մի շարք հանգամանքներ, որոնց թվում «հողի, կենսաոլորտի, կլիմայի, համաշխարհային օվկիանոսի, ...եղանակի և բնության մյուս երևույթների կանխագուշակման մեթոդների կատարելագործման, շրջակա միջավայրի պահպանության բնագավառում միջոցների արդյունավետության բարձրացման նպատակով էկոլոգիայի զարգացումը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 236):

Վերջին տարիներս ՍՍՀՄ-ում պլանային մարմինները, ճյուղային գերատեսչությունները, գիտական հաստատությունները ավելի մեծ ուշադրություն են նվիրում բնական հարստությունների ռացիոնալ օգտագործման հարցերին: Այդ նպատակով աշխարհագրական գիտությունների համակարգում առանձնացավ ռեսուրսային ուղղությունը, որն ուսումնասիրում և արձանագրում է բնական ռեսուրսներն ըստ որակի և քանակի, ըստ ժողովրդատնտեսական նշանակության:

Բնական հարստության կարևորությունն ու դերը հասարակության զարգացման պրոցեսում փոփոխվում են: Մարդը բուսական և կենդանական աշխարհում ստեղծում է նոր տեսակներ և ցեղեր: Տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման բազայի վրա ծնվում են նոր նյութեր, որոնք մեծ նշանակություն ունեն տնտեսության զարգացման համար: Մարդուն դեռ շատ վաղուց հայտնի երկրի կենսաոլորտը հասարակության գործունեության միակ տարածական բազիսն էր: Այժմ այդ գործունեությունը տարածվում է նաև տիեզերքում:

Հասարակության զարգացմանը զուգընթաց ավելանում է ո՛չ միայն աշխատանքով ստեղծված հարստությունը, այլև բնական հարստությունը: Այսպիսով, բնական հարստությունը կարող է սպառվել միայն հարաբերականորեն, այն էլ նրա գիշատչական օգտագործման դեպքում:

Մեր հասարակարգում բացառվում է բնության նկատմամբ անխնա վերաբերմունքը: Սոցիալիստական վերարտադրությունը ենթադրում է բնական հա-

ըստուցյան պլանաչափ օգտագործում, այն հաշվով, որ բնության հավասարակշռվածությունը չխախտվի։ Եվ պատահական չէ, որ պետությունը հսկայական միջոցներ է տրամադրում բնական ռեսուրսների վերականգնման նպատակին, որի շնորհիվ բնական անտառի կողքին աճում է արհեստականը, հնարավոր է դառնում բարձրացնել լճերի մակարդակը, փոխել գետերի հունը, այգեստանի վերածել անապատները։

Այսպիսով, սոցիալիստական արտադրահարաբերությունների համակարգի օղակները՝ արտադրություն, փոխանակում, բաշխում, կուտակում, սպառում, լրացվում է բնության վերականգնման օղակով։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունն անդուլ հոգատարություն են ցուցաբերում բնական հարստությունների և բնության պահպանության նկատմամբ։ Մեր երկրի բնության հարստացման պատմությունը շատ վառ էջեր է պարունակում։ Միջինասիական հանրապետություններում միլիոնավոր հեկտար անբերրի անապատները վերածվեցին մշակվող հողատարածության։ Հաջողությամբ իրագործվում են միջոցառումները Վոլգա և այլ գետերի ավազանները աղտոտումից պահպանելու համար։ Հայաստանում կառուցվել է Արփա—Սևան 48 կմ երկարությամբ եզակի ջրատարը, իրականացվել են մեծ մասշտաբի բազմաթիվ այլ միջոցառումներ։

Բնության պահպանման ու հարստացման մի նոր փուլ կնշանավորի տասնմեկերորդ հնգամյակը։ Շրջակա միջավայրի պահպանման և վերականգնման նպատակով ընթացիկ հնգամյակում կծախսվեն միլիարդավոր ռուբլիներ։ Լայն մասշտաբներով շարունակվում են հողերի բարելավման աշխատանքները, հատկապես ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտում։ Ոռոգելի կդառնա ավելի քան 4 միլիոն հեկտար հողատարածություն։ Արդյունաբերության մեջ ներդրվում են այնպիսի տեխնոլոգիաներ, որոնք հնարավորություն են ընձեռում արտադրությունը կազմակերպել առանց թափոնների, ջուրն օգտագործել հետադարձ փուլով։ Այս ամենը վկայում է, որ մեր երկրում հետևողականորեն իրականացվում է բնության պահպանմանը նպատակուղղված տնտեսական քաղաքականություն։

Բնական հարստությունների ռացիոնալ օգտագործումը, շրջակա միջավայրի պահպանումը և նպատակասլաց վերափոխումը դարձել են սոցիալիստական հասարակության ողջ տնտեսական գործունեության օրգանական մասը։ Բնական ռեսուրսների հնարավոր վերականգնման ու պահպանման հետ սովետական ժողովրդի հասարակական հարստության պլանաչափ վերարտադրման զուգակցումը համակողմանի բնույթ է ընդունել և դարձել է զարգացած սոցիալիզմի բնորոշ գծերից մեկը։

---



# ԽՈՇՈՐ ՔԱՂԱՔՆԵՐԻ ՊՐՈԲԼԵՄԻ ԱՌԹԻՎ

**Գ. Լ. ԵՊԻՍԿՈՊՈՍՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ որոշումներում կոմունիստական շինարարության կարևորագույն պրոբլեմների թվում մեծ ուշադրություն է հատկացված քաղաքաշինության հասունացած խնդիրներին, քաղաքի ու գյուղի միջև եղած տարբերությունների հաղթահարմանը, դրանց հետագա բարեկարգմանը և նյութաարտադրական, կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցմանը։ Որոշումներում շեշտվում է նաև, որ հարկավոր է հետևողականորեն վարել խոշոր քաղաքների աճը սահմանափակելու, փոքր և միջին քաղաքները զարգացնելու կուրս։

Խոշոր քաղաքների պրոբլեմը, դրանց ներկան ու ապագան այժմ աշխարհի լայն հասարակայնության, երևելի մասնագետ-քաղաքաշինարարների, ճարտարապետների, տնտեսագետների, սոցիոլոգների հարաճուն ուշադրության կենտրոնում են։ Եվ դա պատահական չէ, քանի որ այդ պրոբլեմը շոշափում է մարդու, հասարակության կյանքի բոլոր կողմերը, և դրա հրատապությունն առանձնապես զգացվում է գիտատեխնիկական հեղափոխության, ուրբանիզացիայի հարաճուն մասշտաբների, համընդհանուր էկոլոգիական ճգնաժամի հարուցած սպառնալիքի պայմաններում։

Սովետական գիտնականները, ղեկավարվելով մարքսիստական մեթոդոլոգիայով, վերջին տարիներին զգալի աշխատանք են կատարել ուրբանիզացիայի նոր երևույթներն ու պրոցեսները, սոցիալիստական հասարակարգի պայմաններում քաղաքների զարգացման առանձնահատկություններն ուսումնասիրելու նպատակով։ Սոցիալիզմի հետ են առնչվում նպատակային դրույթները քաղաքաշինական խնդիրները լուծելու, տարածական միջավայրը մարդու, նրա համակողմանի զարգացման օգտին ձևավորելու և կազմակերպելու գործում։

Նշելով սոցիալիստական ուրբանիզացիայի այս կարևոր առավելությունները, որոշ հեղինակներ, դրա հետ մեկտեղ, առաջադրում են ոչ բավարար հիմնավորված ու պարզապես սխալ դրույթներ խոշոր քաղաքների դերի ու դրանց ապագայի մասին, որոնք հակասում են սոցիալական առաջընթացի պահանջներին, կոմունիստական շինարարության հեռանկարներին։ Նրանց կարծիքով, որքան ավելի մեծ է քաղաքը, այնքան ավելի արագ պետք է աճի այն և ընդհանրապես քանի դեռ աճում է բնակչությունը, իբր չի կարելի դադարեցնել խոշոր քաղաքների աճը։

«...Իրենց աճին զուգընթաց,— գրում է, օրինակ, Վ. Ի. Պերեվեդենցևը,— քաղաքները ձեռք են բերում ինքնաբերական զարգացման ու աճի ինչ-որ հատկություններ, այդ աճի ինչ-որ ներքին գործոններ, որոնք այդ աճը դարձնում են ավելի կայուն, և որոնք քիչ կախում ունեն քաղաքից դուրս ընկած գործոններից» (В. И. Переведенцев. Города и время. М., 1975, стр. 16)։ Առաջադրելով այսպիսի ընդհանուր սոցիոլոգիական օրինաչափություն, նա այդ հաստատում է մեր երկրի մեծ քաղաքների, միլիոնանոց քաղաքների թվի աճի վերաբերյալ եղած տվյալներից վերցրած օրինակներով և այդ հիման վրա եզ-

րակացնում. «Քանի աճում է բնակչությունը, չի կարելի դադարեցնել խոշորագույն քաղաքների աճը։ Հարկավոր է գտնել դրանց զարգացման ամենաբարենպաստ ուղիներ» («Литературная газета», 30 апреля, 1975 г.)։ Այլ կերպ ասած՝ պահպանել դրանց հետագա աճը, խրախուսել նորանոր միլիոնանոց քաղաքների երևան գալը, որը, նրա խոսքերով, «շատ բարեբար կներգործի երկրի հետագա տնտեսական և սոցիալական զարգացման վրա, քանի որ միլիոնանոց քաղաքները այդ զարգացման գլխավոր «կիզակետերն» են, գիտատեխնիկական հեղափոխության շարժիչները, որոնք ուժեղ ազդեցություն են ունենում շրջակա շրջանների վրա» (նույն տեղը)։ Այս ամենը արտացոլվել է նաև 1979 թվականի համամիութենական մարդահամարի նախնական արդյունքների նրա վերլուծության մեջ («Литературная газета», 30 октября, 1979 г.)։

Նշենք, որ խոշոր քաղաքները, որպես արդյունաբերական ինդուստրիայի, գիտության, կուլտուրայի կենտրոններ, որպես գիտատեխնիկական հեղափոխության ծավալման բազա, իրոք, առաջատար դեր ունեն և դեռ երկար ժամանակ կունենան սոցիալիստական շինարարության գործում։ Բայց այստեղից ամենևին չի հետևում, որ դրանք անպայման պետք է խոշորանան ու մեծանան իբր ինչ-որ անխուսափելիորեն գործող օբյեկտիվ օրինաչափության հետևանքով։

Հազիվ թե կարելի է համաձայնել նման հետևությունների, որոնք հանգեցնում են դեմոգրաֆիական դետերմինիզմի և ֆատալիզմի։ Այդ հետևություններում ակնհայտորեն երևում է դեմոգրաֆիական պրոցեսների սոցիալական կարգավորիչների, սոցիալիստական հասարակության ու դրա քաղաքների կազմակերպման և գործունեության պլանային հիմունքների դերի ու հնարավորությունների թերագնահատումը, և դա անխուսափելիորեն հանգեցնում է հայեցողական մոտեցման պրակտիկային, խոշոր քաղաքների շարունակվող աճի փաստերի արձանագրման՝ առանց դրանց պատճառների ու ստվերոտ կողմերի պատշաճ վերլուծության, որոնք բարդացնում են մյուս հասունացած սոցիալական պրոբլեմների լուծումը։

Նշելով միլիոնանոց քաղաքների զանազան առավելությունները, չի կարելի չտեսնել նաև դրանց անընդմեջ աճի բացասական հետևանքները, որոնք մեր օրերում դառնում են առավել ակնառու։ Դա ամենից առաջ նրանց շահագործման, նոր շինարարության, կոմունիկացիաների, տրանսպորտային գծերի, անընդմեջ վերակառուցումների թանկությունն է։ Օրինակ, ըստ կատարված հաշվարկների, ՍՍՀՄ-ի քաղաքներում ու քաղաքատիպ ավաններում քաղաքաշինության բոլոր տեսակների վրա մեկ բնակչի հաշվով տարեկան ծախսվում է միջին հաշվով 85 ռուբլի, խոշորագույն մայրաքաղաքներում այդ գումարը տարեկան հասնում է մինչև 150—175 ռուբլու, որը երկու անգամ բարձր է ամբողջ երկրի միջին ծախսումներից։ Երկրի խոշոր քաղաքների առավելագույն զարգացման նման կուրսի շարունակումը լրացուցիչ կպահանջի առնվազն 25—30 միլիարդ ռուբլի։

Ներքաղաքային տրանսպորտի արժեքը, 1.000 բնակչին ընկնող ծախսումներով, 50—100 հազար բնակիչ ունեցող քաղաքներում կազմում է 57,9 հազար ռուբլի, իսկ 100 հազարից ավելի բնակիչ ունեցող քաղաքներում՝ 278 հազար ռուբլի, այսինքն՝ 4,8 անգամ ավելի, իսկ տրանսպորտի շահագործման ծախսերը մեծանում են 2,1 անգամ (տե՛ս Г. М. Лаппо. Рассказы о городах. М., 1972, стр. 106, 107)։ Գերխոշոր քաղաքում տրանսպորտի և մայրուղիների վրա կատարվող ծախսերը, մեկ բնակչի համար վերհաշվարկված, ավելի բարձր են, քան միջին քաղաքում, իսկ մետրոպոլիտենի շինարարության համար այդ ծախսումներն ավելանում են ևս երկու անգամ։ Ճեշտակիորեն աճում են նաև ժամանակի ծախսումները աշխատանքի գնալիս, ուժեղանում է քաղաքային կյանքի, տնտեսության և սպասարկման ոլորտի ռիթմի լարվածությունը, որը թուլացնում է ներգործությունը շրջակա միջավայրի վրա, դա ավելի է սրում էկոլոգիական իրավիճակը։ Այդ ամենն անմիջականորեն ազդում է մարդու կյանքի, առողջության և աշխատանքային գործունեության վրա, ուժեղացնելով հոգեբանաֆիզիոլոգիական ծանրաբեռնվածությունները, սթրեսային երևույթները։ Խոշորագույն քաղաքների անզուսպ աճը դժվարություններ է ստեղծում



նաև նյութական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման բնագավառում, որոշ չափով դանդաղեցնում է փոքր և միջին քաղաքների զարգացումը, քաղաքի և գյուղի միջև եղած տարբերությունների վերացման պրոբլեմի լուծումը։

Անհիմն է նաև այն, որ խոշոր քաղաքների առավելագույն աճի կողմնակիցները վկայակոչում են ներկա գիտատեխնիկական հեղափոխությունը։ Այստեղ ևս թույլ է տրվում միակողմանի մոտեցում, հաշվի չեն առնվում նրա կարևորագույն առանձնահատկություններն ու պահանջները։ Գիտատեխնիկական հեղափոխության հետ է կապված արտադրության տեխնոլոգիական նոր եղանակի ստեղծումը, որը բնութագրվում է կոմպլեքսային ավտոմատացմամբ՝ կիբեռնետիկայի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ռոբոտների կիրառմամբ։ Ապագա գործարաններն ու ֆաբրիկաները կարելի է պատկերացնել «փակի տակ»։ Իսկ դա նշանակում է, որ աշխատուժի պահանջը անմիջական արտադրապրոցեսում հետզհետե ավելի է կրճատվելու, որը անկասկած արգելակիչ դեր կկատարի խոշորագույն քաղաքներում բնակչության հետագա համակենտրոնացման գործում։ Այս տեսակետից մեծ հնարավորություններ են բացում գիտատեխնիկական հեղափոխության շատ այլ նվաճումներ (ատոմային էներգետիկայի զարգացումը, սինթետիկ նյութերը և այլն)։

Այսպիսով, հասարակության զարգացման ռեալ, օբյեկտիվ գործոնները, բնական պայմանները, նյութական արտադրությունը, գիտատեխնիկական առաջընթացը և մարդու շահերն իսկ ամենևին չեն խոսում գերխոշոր քաղաքների հետագա աճի օգտին։

Կապիտալի աշխարհում, որտեղ իշխում են մասնավոր սեփականատիրության օրենքները, մրցակցությունը, մասսայական գործազրկությունը, քաղաքների զարգացումը անխուսափելիորեն ընդունում է տարերային բնույթ։ Այստեղ դրսևորվում են կապիտալիստական կարգին բնորոշ սոցիալ-դասակարգային հակասություններն ու հակամարտությունները։ Դրա հետ մեկտեղ, առանձին քաղաքների ոչ մեծ տարածություններում կուտակվում են բնակչության վիթխարի զանգվածներ, որը այդ քաղաքները փաստորեն պիտանի չի դարձնում կյանքի համար։ Հասնելով կրիտիկական սահմանագծի, դրանցից մի քանիսին սպառնում է կործանման աղետը։ Օրինակ, ինչպես նշում են արևմտյան շատ մասնագետներ, Տոկիոն կանգնած է կատարյալ աղետի առջև։ Փողոցները սեղմված են տրանսպորտային հոսանքների աքցանների մեջ, այլևս հնարավոր չէ դրանք լայնացնել։ Ջուրն ու էլեկտրաէներգիան չեն բավականացնում, հերթերը սովորական երևույթ են։ Քաղաքային իշխանությունները արդարացիորեն երկյուղ են կրում, որ մինչև 1985 թվականը սմոգով ներծծված Ճապոնիայի ուղեղը շնչահեղձությունից կմեռնի ողորմելի մահով։

Նման կարգի նախազգուշացումներ շատ կան նաև Նյու-Յորքի, Լոնդոնի, Փարիզի, Լոս-Անժելոսի և կապիտալիստական աշխարհի մյուս խոշորագույն քաղաքների վերաբերյալ։ Ամերիկացի գիտնական Ու. Բարի գնահատմամբ, ամբողջ քաղաքներ ու քաղաքային շատ թաղամասեր ԱՄՆ-ում «հիվանդ են», «ճգնաժամ են ապրում»։ «Քաղաքների, համենայն դեպըս, քաղաքների թաղամասերի մահացում,— գրում է նա,— արդեն տեղի է ունենում ամբողջ երկրում»։ Իսկ ահա թե Փարիզի մասին ինչ է գրում ֆրանսիացի հայտնի սոցիոլոգ Ֆ. Սեն-Մարկը. «Բետոնե վանդակի մեջ փակված Փարիզի բնակչությունը շնչում է թունավորված օդ։ Ավտոմոբիլները, գործարանները, բնակարանային ջեռուցումը շարունակ մթնոլորտ են ժայթքում փոշու և թունավոր գազերի վիթխարի զանգվածներ... Բոլոր այդ ապականիչները կազմում են «մթնոլորտային տիղմ», և Փարիզը ծածկված է 2 կիլոմետր բարձրությամբ և 20 կիլոմետր շառավղով գազանման կեղտի գմբեթով, որը էկրանի նման խոչընդոտում է արևի ուլտրամանիշակագույն ճառագայթների թափանցմանը... 1952-ից մինչև 1970 թվականը ավտոբուսների արագությունը Փարիզում 14 կմ/ժամից իջել է մինչև 8 կմ/ժամի և հավասարվել է անցյալ դարի ձիակառքի արագությանը, իսկ մի քանի երթուղիներում արագությունը երբեմն չի անցնում հետիոտնի արագությունից... Աբսուրդի դրամա,— բացականչում է նա։ — Վիթխարի միջոցներ ծախսելով մեգալոպոլիսների զարգացման վրա,

Ֆրանսիան քայքայում է իրեն՝ աղքատացման անծայրածիր օջախներ ստեղծելու համար, որոնք դարեվերջին կսկսեն մարել կամ վերածվել անապատների... Եթե քաղաքականությունը ամենամոտ ժամանակ արագ չփոխվի, Փարիզից կմնա միայն անկյանք մի կմախք։ Փարիզը կսպանի Փարիզին» (Ф. Сен-Марк. Социализация природы. М., 1977, стр. 142, 143, 100, 140, 154)։

Կապիտալիստական և զարգացող երկրների բազմաթիվ խոշոր քաղաքների ապրած դժվարությունների ու ողբերգությունների մասին խոսվեց մինչև 2000 թվականը ազգաբնակչության և քաղաքների զարգացման հարցերին նվիրված հատուկ կոնֆերանսում, որը հրավիրվել էր Հռոմում 1980 թվականին՝ ՄԱԿ-ի շրջանակներում։ Կոնֆերանսում բերված տվյալներով, օրինակ, բրազիլական Ռիո դե Ժանեյրո և Սան Պաուլու քաղաքները կմիաձուլվեն ու կկազմեն միասնական քաղաք՝ մոտ 50 միլիոն բնակչով, Մեխիկոն կունենա 30 միլիոնից ավելի բնակիչ և այլն։

Սա մի մեղադրանք է հենց կապիտալիստական սիստեմի հասցեին, որի մեղքով մարդու մեծագույն ստեղծագործությունները, նյութական և հոգևոր կուլտուրայի հասումները շուռ են գալիս իր իսկ՝ մարդու դեմ։ Նրա ստեղծած առարկայական նոր աշխարհում ամեն ինչ օտարվում է, անգամ սեփական տունը։ Որոշ բուրժուական տեսաբաններ, չգտնելով կապիտալիզմի օրոք հսկա քաղաքների պրոբլեմի խելացի լուծում, հարձակվում են ուրբանիզացիայի, գիտատեխնիկական առաջընթացի վրա, քաղաքային կյանքը հայտարարում «անմարդկային», քարոզում գյուղական քաղաքակրթությունը վերածնելու («ռյուրալիզացիայի») օգտին, մյուսները, ընդհակառակը, պաշտպանում են բազմամիլիոնանոց քաղաքային ագլոմերացիաների անսահմանափակ աճը, նոր մեգալոպոլիսների, «գերքաղաքների» ստեղծումը։

Վերջին ժամանակներս Արևմուտքում ակտիվ հետազոտություններ են կատարվում նաև ապագայի քաղաքների, տիեզերական ճարտարապետության, օդային քաղաքների, լուսնային քաղաքների շինարարության բնագավառում, հաշվի առնելով գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները։ Չնայած որ այդպիսի նախագծերից շատերը զարմացնում են իրենց մասշտաբայնությամբ, ստեղծագործական երևակայությամբ ու համարձակությամբ, այնուամենայնիվ, նրանց քաղաքաշինական կոնցեպցիայի վրա ևս ազդում է բուրժուական աշխարհայացքի սահմանափակությունը, թույլ է տրվում ճարտարապետության հնարավորությունների թերագնահատում՝ ժամանակակից կապիտալիստական հասարակարգի սոցիալ-քաղաքական պրոբլեմների ու նրա հակասությունների լուծման գործում։ Այս տեսակետից հիշենք թեկուզ այն, թե ինչով վերջացան համաշխարհային համբավ վայելող ճարտարապետ Լը Կորբյուզիեի ջանքերը՝ կառուցելու իդեալական քաղաք և ճարտարապետության միջոցով վերափոխելու հասարակությունը, ստեղծելու մարդկային հարաբերությունների նոր աշխարհ։ Նա ականատես եղավ, թե ինչպես գեղագիտական նոր իդեալի հիման վրա, սոցիալական արդարության սկզբունքների վրա հենվող իր նախագծած բնակելի կոմպլեքսները, քաղաքները փոփոխվում էին հակառակ իր բողոքներին և ձեռք բերում մասնավոր սեփականատիրական հասարակության համար տիպական գծեր՝ դրա դասակարգային հակասություններով։ Նույն բանը տեղի ունեցավ մեր ժամանակի մեկ ուրիշ խոշորագույն ճարտարապետի՝ Բրազիլիայի նոր մայրաքաղաք Բրազիլիա քաղաքի նախագծի հեղինակ Նիմեյերի հետ։ Նրան չվիճակվեց իրականացնել իր երազանքը՝ կառուցել մի քաղաք, որտեղ բոլորը զերծ լինեին շահագործումից, լինեին երջանիկ ու վստահորեն նայեին իրենց ապագային։ Նրա ստեղծած քաղաքը, իր իսկ՝ Նիմեյերի խոստովանությամբ, շուտով դարձավ սովորական կապիտալիստական քաղաք՝ իր բոլոր արատներով ու անարդարություններով (տե՛ս Л. Корбюзье. Архитектура XX века. М., 1970: Оскар Нимейер. Мой опыт строительства Бразилиа. М., 1963)։

Ժամանակակից բուրժուական քաղաքի սրվող հակասությունները կարող են որպես նոր հաստատում ծառայել գիտական կոմունիզմի հիմնադիրների այն հետևությունների համար, որ կապիտալիզմն անընդունակ է կառավարելու ուրբանիզացիայի պրոցեսները՝ ելնելով ողջ հասարակության և մարդու շահերից։



եվ հասարակական կյանքի այդ կարևոր ոլորտում այն բախվում է արտադրաուժերի ներդաշնակ զարգացման, սոցիալական առաջընթացի օբյեկտիվ պահանջմունքների հետ։ Հասարակության սոցիալիստական կազմակերպման պայմաններում միայն հնարավոր է դառնում քաղաքների աճի պլանաչափ կարգավորումը արտադրաուժերի, իսկ դրանց հետ միասին նաև բնակչության ռացիոնալ ու հավասարաչափ տեղաբաշխման հիման վրա քաղաքի և գյուղի միջև անջրպետի վերջնական հաղթահարումը։ «Միայն այն հասարակությունը,— գրել է Էնգելսը,— որն ընդունակ է հաստատել իր արտադրաուժերի ներդաշնակ զուգակցումը միասնական ընդհանուր պլանով, կարող է արդյունաբերությանը հնարավորություն ընձեռել ամբողջ երկրում տեղաբաշխվելու այնպես, ինչպես դա առավել հարմար է նրա զարգացման ու պահպանման համար, ինչպես նաև արտադրության մյուս տարրերի զարգացման համար... Հակադրության վերացումը քաղաքի և գյուղի միջև ո՛չ միայն հնարավոր է— այն ուղղակի անհրաժեշտություն է դարձել հենց արդյունաբերական արտադրության համար, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրության համար, և, բացի դրանից, այն անհրաժեշտ է հասարակական հիգիենայի համար» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 20, стр. 307)։ Զարգացնելով այդ դրույթը, Լենինը ցույց է տվել սոցիալիզմի օրոք բնակչության տարաբնակեցման նոր ձևի առանձնահատկությունները, որը, նրա խոսքերով, պետք է բնութագրվի «ինչպես գյուղի լքվածության, աշխարհից կտրվածության, վայրենացածության ոչնչացմամբ, այնպես էլ մեծ քաղաքներում հսկայական մասսաների հակաբնական կուտակվածության ոչնչացմամբ» (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 26, էջ 86)։

Ինչպես հայտնի է, սովետական իշխանության առաջին իսկ տարիներից ընդունվեց արդյունաբերությունը ռացիոնալ տեղաբաշխելու և հետամնաց ծայրագավառները ըստ ամենայնի զարգացնելու, իսկ դրա հետ միասին տարաբնակեցման հին ձևերը փոխելու կուրս։ Ստեղծարար մեծ աշխատանքի շնորհիվ հետամնաց շրջանների, «արջերի խուլ անկյունների» փոխարեն ստեղծվել են հարյուրավոր ու հազարավոր նոր ինդուստրիալ կենտրոններ, քաղաքներ, ավաններ։ Փոխվել է նաև հին քաղաքների դեմքը։ Վիթխարի փոփոխություններ են իրականացվել նրանց վերակառուցման ու բարեկարգման գործում։ Գյուղատնտեսության կոլեկտիվացման շնորհիվ վերափոխվել է գյուղը։ Կուլտուրան, լուսավորությունը, տեխնիկան խոր կերպով թափանցել են նրա կյանքի մեջ, նպաստելով գյուղական վայրերի վերակառուցմանը ուրբանիզացման հիման վրա։

Արտահայտելով սովետական հասարակության զարգացման նոր փուլի՝ հասուն սոցիալիզմի փուլի պահանջները, ՍՄԿԿ XXVI համագումարում ընդունված երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում նախատեսվում են իրականացնել նոր խոշոր միջոցառումներ հասունացած քաղաքաշինական խնդիրները լուծելու, փոքր և միջին քաղաքները զարգացնելու, քաղաքի և գյուղի միջև եղած տարբերությունները հաղթահարելու, տարաբնակեցման միասնական համակարգ ստեղծելու նպատակով։ Համաշխարհային ճարտարապետության պրակտիկայում առաջին անգամ մշակվում է տարաբնակեցման գլխավոր սխեմա, որն ընդգրկում է ամբողջ երկրի տարածքը, բոլոր տիպի բնակավայրերը։ Այն հնարավոր է դարձնում ստեղծելու աշխատանքի ու հանգստի լավագույն պայմաններ սովետական մարդկանց համար, ապահովելու բարեկարգման ու հարմարավետության բարձր մակարդակ, որը համապատասխանում է ժամանակակից պահանջներին։ Տարեցտարի աճում են բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության մասշտաբները, ընդ որում առանձնահատուկ ուշադրություն է հատկացվում շինարարության որակի, գյուղերի ու քաղաքների ճարտարապետական-գեղարվեստական պատկերի բարելավմանը։ Ամեն տարի միլիոնավոր սովետական մարդիկ բարելավում են իրենց բնակարանային պայմանները։ Արդեն այժմ քաղաքային բնակչության մոտ 80 տոկոսն ապրում է առանձին բնակարաններում (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 216)։ Նոր, տասնմեկերորդ հնգամյակում առաջադրված է բնակարանային շինարարության մեծ ծրագիր՝ 530—540 միլիոն քառակուսի մետր, ընդ որում նախատեսվում է բնակարանային տարածության

բաշխումը կատարել, որպես կանոն, յուրաքանչյուր ընտանիքի առանձին բնակարան տրամադրելու սկզբունքով։ Իրականացվելու են կարևոր միջոցներ շրջակա միջավայրն առավել պահպանելու ու բարեկարգելու, քաղաքների օդային տարածությունը աղտոտումից զերծ պահելու նպատակով։ Սովետական Միությունում և սոցիալիստական մյուս երկրներում դա դարձել է պետական օրենք։

Սոցիալիզմի օրոք քաղաքների և գյուղերի բնորոշ առանձնահատկություններից է նաև այն, որ դրանց զարգացումը տեղի է ունենում սոցիալիստական մարդասիրական հասարակական հարաբերությունների ողջ սիստեմի հետ անխզելի կապի մեջ՝ հաստատելով նոր ապրելակերպ, որը զերծ է շահագործումից, ճգնաժամերից, սոցիալական և ազգային ճնշումից։

Երկրի բոլոր շրջանների կոմպլեքսային զարգացման, արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխման և համապատասխան տարաբնակեցման ընդհանուր միտումի պայմաններում մեր մի քանի հին քաղաքներ, այնուամենայնիվ, նկատելիորեն աճել են։ Եվ այդ բանը տեղի ունեցավ ամենևին ոչ դեմոգրաֆիական աճի ճակատագրական դրսևորման, այլ պատմական պայմանների առանձնահատկությունների բերումով, երբ անհրաժեշտ էր երկրի ինդուստրացումն իրականացնել բացառիկ կարճ ժամկետներում, արդյունաբերական խոշոր շինարարությունն իրականացնել մեծ մասամբ հին ինդուստրիալ կենտրոններում, բնակեցված շրջաններում, որտեղ պահանջվում էին համեմատաբար ավելի քիչ կապիտալ ներդրումներ, քան նոր շրջանները յուրացնելիս։ Բայց արդեն 1931 թվականին ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ արգելված էր արդյունաբերական ձեռնարկությունների շինարարությունը խոշոր քաղաքներում։ Հետագա տարիներին ընդունվեցին մի շարք համանման որոշումներ ևս։ Սակայն դրանք հաճախ խախտում էին մինիստրությունները, որոնք շարունակում էին խոշոր քաղաքներում կառուցել արդյունաբերական նոր օբյեկտներ։ Մեր որոշ խոշոր քաղաքների չարդարացված աճին նպաստում էին նաև գյուղատնտեսության ղեկավարման գործում անցյալում կատարված լուրջ սխալները, կոլտնտեսություններում նյութական շահագրգռվածության սկզբունքների խախտումները, որը հանգեցնում էր ետ մնացող կոլտնտեսություններից բնակչության մասսայական արտահոսքին։

1979 թվականի համամիութենական մարդահամարի տվյալները վկայում են խոշորագույն քաղաքների բնակչության նշանակալի աճի, միլիոնանոց նոր քաղաքների երևան գալու մասին։ 1970—1978 թվականներին դրանց թիվը 10-ից հասել է 18-ի, և նկատվում է հետագա աճի միտում։

Ուրեմն, ինչո՞վ բացատրել, որ դեռևս չի հաջողվում զսպել ու սահմանափակել խոշորագույն քաղաքների աճը, և մեզ մոտ երևան են գալիս նորանոր միլիոնանոց քաղաքներ։

Պատճառներն առայժմ շատ են։ Դրանցից գլխավորներն են պլանավորող մարմինների վրիպումները, քաղաքակազմիչ գործոնների վրա նրանց ազդեցության գոյություն ունեցող մեխանիզմի անարդյունավետությունը։ Բացասաբար է ազդում նաև այն, որ որոշ տեղական ղեկավարներ հրապուրվում են հսկայամոլությամբ, փորձում են զանազան արհեստական միջոցներով է՛լ ավելի զարկ տալ խոշոր քաղաքների աճին, առանձին մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից արտադրական կարողությունների ու գիտական համալիրների զարգացումը այդ քաղաքներում, վարչատերիտորիալ կառուցվածքի անկատարելիությունը երկրի մի շարք շրջաններում, սպասարկման, առևտրի ու կենցաղի ոլորտի թերությունները միջին և փոքր քաղաքներում, ժամանակակից կոմունալ հարմարությունների բացակայությունը դրանցից մի քանիսում ուժեղացնում են արտագաղթի հոսանքները դեպի խոշոր քաղաքները։ Դրան նպաստում է նաև այն, որ դեռևս լուծված չեն գյուղական վայրերը վերափոխելու, գյուղերը բարեկարգ, քաղաքատիպ ավանների վերածելու հետ կապված շատ խնդիրներ։ Ինչպես շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, հասունացել է անհրաժեշտությունը՝ հաղթահարելու բնակարանային, կուլտուր-կենցաղային, ճանապարհաշինության ետ մնալը գյուղական շատ շրջաններում, որը բացասաբար է ազդում գյուղի վերակառուցման, գյուղատնտեսության զարգացման վրա։



Սոցիալիզմն ստեղծել է բոլոր օբյեկտիվ հնարավորությունները՝ քաղաքների աճը պլանաչափորեն կարգավորելու, այդ քաղաքներում բնակչության վիթխարածավալ զանգվածների հակաբնական կուտակումը հաղթահարելու համար։ Այդ հնարավորությունների իրականացումը պահանջում է ձեռնարկել կոմպլեքսային նոր միջոցներ միլիոնանոց քաղաքների աճը սահմանափակելու և դրանք բեռնաթափելու համար։ Իհարկե, խոսքը զուտ վարչական միջոցառումների, անձնագրային ռեժիմի ուժեղացման, գրանցման սահմանափակման մասին չէ, չնայած մի շարք դեպքերում դա ևս կարող է անհրաժեշտ լինել։ Առաջնահերթը պլանավորման սիստեմի կատարելագործումն է։ Այս տեսակետից նոր հնարավորություններ է ընձեռում «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 2-ի որոշումը։ ՍՄԿԿ XXVI համագումարը կարևորեց արտադրաուժերի տեղաբաշխման հետագա բարելավումը, աշխատանքի տերիտորիալ բաժանումը, բոլոր նյութական ռեսուրսների խնայողությունը, երկրի եվրոպական մասում արտադրական նոր օբյեկտների շինարարության սահմանափակումը։ Հատուկ ուշադրություն է պահանջում տևական ժամանակի համար (50 և 100 տարի) սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման գիտականորեն հիմնավորված պրոգնոզների մշակումը և խոշոր քաղաքների գլխավոր պլանների համապատասխան ճշտումը։ Այստեղ հատկապես անհրաժեշտ է հեռանկարային մոտեցում, սոցիալական զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի հեռանկարի հաշվառում։

Ժամանակն է, որ երկրի դեմոգրաֆիական պրոցեսները խոր ու համակողմանի վերլուծվեն, նոր, գործնական հանձնարարականներ մշակվեն։ Դրանք, անշուշտ, կնպաստեն սոցիալ-տնտեսական զարգացման, այդ թվում քաղաքաշինության հասունացած խնդիրների լավագույն լուծումներին։ Հարկավոր է բնակչության աճի նկատմամբ ապահովել տարբերակված մոտեցում ըստ երկրի ռեգիոնների, ուժեղացնել խրախուսիչ միջոցները բազմազավակ ընտանիքների նկատմամբ Հյուսիսի, Սիբիրի, Հեռավոր Արևելքի շրջաններում։

Ընդհանուր առմամբ պահանջվում է ծավալել կոմպլեքսային լայն հետազոտություններ քաղաքաշինության բնագավառում, որոնել տարաբնակեցման նոր ձևեր, հաղթահարել պրակտիկային վնասող, մասնագետներին ապակողմնորոշող խոշոր քաղաքների պրոբլեմի նկատմամբ եղած սխալ հայացքները։

Առայժմ, ճիշտ է, դժվար է բոլոր մանրամասնություններով կանխատեսել, թե կոնկրետ ինչ փոփոխությունների կենթարկվեն հսկա քաղաքները կոմունիստական հասարակարգում, բայց կարելի է ենթադրել, որ դրանց բարեկարգումը, վերակառուցումը, հետագա աճի սահմանափակումը, ինչպես նաև արտադրաուժերի ու բնակչության հավասարաչափ բաշխման հարաճուն հնարավորությունները, վերջին հաշվով, կհանգեցնեն այդպիսի քաղաքների առանձին մասերի և շրջանների վերացման։ Դա, իհարկե, բարդ ու տևական պրոցես է։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները նախազգուշացնում էին ամեն տեսակ շտապողական ու չմտածված քայլերից, քանի որ մենք այստեղ գործ ունենք այնպիսի մի երևույթի հետ, որը հաստատված է նյութաարտադրական և ամբողջ հասարակական-պատմական զարգացման դարավոր պրոցեսով։ Ուստի խնդիր է ծագում, մի կողմից, ըստ ամենայնի ու մինչև վերջ օգտագործել խոշոր քաղաքների՝ որպես արտադրաուժերի, գիտության ու կուլտուրայի զարգացման կարևոր կենտրոնների, հնարավորությունները կոմունիստական շինարարության նոր խնդիրները լուծելու, սոցիալիստական հասարակության բոլոր անդամների նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու համար, իսկ մյուս կողմից, ինքնահոսի չմատնել նրանց զարգացումն ու հետագա աճը։

Աշխարհի մի շարք հսկա քաղաքների օրինակը, որոնք արտադրության ու բնակչության չափից դուրս մեծ համակենտրոնացման հետևանքով փաստորեն փակուղու մեջ են, լուրջ նախազգուշացում պետք է ծառայի մեզ համար։

# ՎԱՆԱՆԴԵՑԻՆԵՐԸ ԵՎ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՄԻՏՔԸ

**Հ. Ղ. ՄԻՐԶՈՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

**ՎԱՂՈՒՑ Ի ՎԵՐ ԿՈՐՑՐԱԾ** լինելով իր պետականությունը, հայ ժողովուրդը մշտապես փայփայել է այն վերագտնելու հույսը, որը պատմական տարբեր պայմաններում դրսևորվել է տարբեր ձևով, ստացել տարբեր շեշտ ու հնչեղություն: Սկսած XVII դարի կեսերից հայ ժողովրդի այդ դարավոր հույսը, իղձն ու երազանքը վերածվում են իրական ձգտման, և նրա առաջավոր զավակներն սկսում են ուղիներ որոնել դրա իրականացման համար:

Այդ նույն շրջանում Հռոմի կաթոլիկական եկեղեցին, էքսպանսիոնիստական նկատառումներով չարաշահելով մեր ժողովրդի նվիրական զգացումները, քարոզում էր այն սին տեսությունը, որ իբր հայ ժողովուրդն իր ազատությունն ու անկախությունը կորցրել է հռոմեական եկեղեցու «սուրբ գրկից» հեռանալու հետևանքով, ուստի կորցրածը վերագտնելու համար նա պետք է կրկին վերադառնա նույն հռոմեական եկեղեցու գիրկը[1]: Ըստ այդմ էլ մինչև դարավերջը հայ ազատագրական մտքի աչքի ընկնող գործիչները, որոնց թվում և Իսրայել Օրին, անվելով նման պատրանքներով, օտարի լծից հայ ժողովրդի ազատագրման հույսը գերազանցապես կապում էին եվրոպական մեծ ու փոքր տերությունների հետ և, դիմելով այդ պետություններին, նրանք պատրաստակամություն էին հայտնում անհրաժեշտ ռազմական օգնություն ստանալու դեպքում որոշակի զիջումներ կատարել կրոնադավանաբանական հարցերում: Իսկ ոմանք էլ՝ այդ տերություններին ավելի շահագրգռելու նպատակով, իրենց խոստումները նախապես վերածում էին գործի՝ ընդունում կաթոլիկական դավանանք: Սակայն դարավերջին արդեն հայ ազատագրական միտքը երկար դեգերումներից հետո, համոզվելով, որ կաթոլիկական եկեղեցու հորինած այդ պատմափիլիսոփայությունը սին պատրանքներից բացի իրական ոչինչ չի տալիս, հանձին Իսրայել Օրու կտրուկ շրջադարձ կատարեց դեպի Ռուսաստան՝ հայ ժողովրդի ազատագրության հույսը կապելով ռուս մեծ ժողովրդի հետ:

Հայագիտության մեջ վաղուց ապացուցված է, որ XVII դարի ամենամեծ նվաճումը դիմադարձն է հայ ազատագրական մտքի, որի լուսաբանմանն նպատակով ստեղծված է ինչպես գիտական, այնպես էլ գեղարվեստական պատկառելի գրականություն: Սակայն դեռևս կան այդ շրջանի հայ ազատագրական մտքի սակավ ուսումնասիրված կամ պարզապես մութ մնացած առանձին ծալքեր, որոնց լուսաբանումը կարող է էապես հարստացնել մեր պատկերացումները տվյալ հարցի վերաբերյալ ընդհանրապես:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Իսրայել Օրու կատարած պատմական շրջադարձի հետ միաժամանակ և նրան զուգընթաց երևան է գալիս հայ ժողովրդին զինված ազատագրական պայքարի նախապատրաստելու գաղափարը, որը ցարդ վրիպել է մասնագետների ուշադրությունից: Խոսքը վերաբերում է հայ մշակույթի մեծ ռահվիրաներ Թովմաս, Մատթեոս և Ղուկաս Վանանդեցիների՝ հայ ազատագրական մտքի պատմության մեջ խաղացած դերին: Բանն այն է, որ եթե համեմատաբար ուսումնասիրված է վերջիններիս տպագրական գործունեությունը, մասամբ նաև՝ նրանց թողած բնագիտական ու աշխարհագրագիտական ժառանգությունը, ապա գրեթե ոչինչ չի արված նրանց փիլիսոփայական հայացքները և հայ ազատագրական մտքի պատմության մեջ խաղացած դերը լուսաբանելու ասպարեզում: Հետաքրքրական է, որ դեռևս 1965 թ. հունիսի 28-ին Վիեննայի Մխիթարյան միաբանության անդամ Մեսրոպ Գրիգորյանին գրած մի նամակով հոլանդացի գիտնական Սիլվիո վան Ռոյը ցանկացել է իմանալ՝ արդյոք որևէ կապ կա՞ «Իսրայել Օրիի առաքելության և Թովմաս Վանանդեցի եպիսկոպոսի գործունեության» միջև (Մեսրոպ Գրիգորյան, Նոր նյութեր և դիտողություններ հրատարակիչ Վանանդեցվոց մասին, «Հանդես ամսօրյա», 1966, թիվ 1—3, էջ 55): Հոլանդացի գիտնականի առջև այդ հարցը ծառացել է այն պատճառով, որ թե՛ Իսրայել Օրին և թե Թովմաս Վանանդեցին որոշակի հարաբերություններ են ունեցել Ավստրիայի Լեոպոլդ կայսրի հետ և 1697 թ. սեպտեմբերի 5-ին Վանանդեցին Լեոպոլդ կայսրից ստացել է ինչ-որ հանձնարարագիր (տե՛ս նույն տեղը): Պատասխանելով Սիլվիո վան Ռոյի վերոհիշյալ հարցումին, Մ. Գրիգորյանը եզրակացնում է, որ Վանանդեցիների հրատարակած Համատարած աշխարհացույցը, Մովսես Խորենացու Պատմությունը, ինչպես և մյուս գրքերը անկասկած նպաստեցին մեր ցանուցիր և բռնության տակ հեծծող տարաբախտ ժողովրդի մտքի լուսավորությանն ու բարձր ախորժակների արթնացմանը, «Սակայն ուղղակի կերպով՝ Թովմաս և իր աշխատակիցները քաղաքական գործունեություն չեն ծավալած» (նույն տեղը: Ընդգծումը մերն է:— Հ. Մ.):

Միանգամայն համաձայն լինելով հեղինակի այն հարցադրմանը, որ Վանանդեցիների վերը նշված և մյուս հրատարակությունները նպաստել են մեր ժողովրդի մտքի լուսավորմանն ու ազգային ինքնագիտակցության բարձրացմանը, դժվարանում ենք համաձայնել նրա այն կըտրուկ եզրակացության հետ, որ իբր Վանանդիցիները ուղղակիորեն քաղաքական գործունեություն չեն ծավալել: Այդ հարցը դեռ կարոտ է հանգամանալից ուսումնասիրության, որովհետև նրանց հեղինակած ու տպագրած գրքերում հաճախ հանդիպում են բավական սուր քաղաքական հարցադրումներ, որոնք ենթադրել են տալիս, որ նրանք ամենայն հավանականությամբ պետք է զբաղված լինեն նաև քաղաքական գործունեությամբ: Այդ տեսակետից խիստ հետաքրքրական նյութեր է պարունակում Ղուկաս Վանանդեցու Համաձայնութիւն հնգետեսակ ամսոց հռոմայեցւոց, Ազարիայի, հայոց, հրէից և տաճկաց» (Ամստերդամ, 1698) տոմարագիտական գիրքը: Ելնելով ժամանակի տարածված այն մտայնությունից, որ երկնային մոլորակների շարժման, նրանց տեղի, դիրքի ու դասավորության միջոցով հնարավոր է կռահել ո՛չ միայն այդ մոլորակների տակ ծնված մարդկանց բախտն ու ճակատագիրը, հետագա տարիների եղանակը, բնական աղետներն ու արհավիրքները, բերքի առատությունն ու սակավությունը, այլև «գուշակել» ապագա քաղաքական անցքերն ու կարևորագույն իրադարձությունները, Վանանդեցին անձամբ փորձում է կատարել նման «գուշակություններ»՝ ցուցահանելով ո՛չ միայն սոցիալ-քաղաքական մի շարք երևույթների մասին ունեցած իր ըմբռնումներն ու վերաբերմունքը դրանց հանդեպ, այլև հայ ժողովրդի ապագայի վերաբերյալ իր հույսերն ու երազանքները:

Իսկ որ այդ կարգի «գուշակություններն» այսօր կարող են հուսալի աղբյուր ծառայել այս կամ այն պատմաշրջանի առանձին մտածողների, սոցիալական դասի ու դասակարգի, ազգի ու ժողովրդի հասարակական-քաղաքական տրամադրությունները, ակնկալությունները, երազանքներն ու ձգտումները բացահայտելու համար, վեր է ամեն կասկածից: Ահա թե ինչ է գրում այդ մասին ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը. «Հիրավի, միջնադարյան Հայաստանի առավել տարածուն ու շրջուն տրամադրություններն ու ակնկալությունները ստանում էին երբեմն «գուշակությունների», «մարգարեությունների» ու «տեսիլքների» կերպարանք: Նյութեր են դրանք, որ մատակարարում են մեզ վերին աստիճանի հետաքրքրական ու նշանակալից, թեպետև մինչև հիմա սույն դիպվածաբար օգտագործված, վկայությունները» (Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք 1, Երևան, 1957, էջ 15): Ավելորդ չէ հիշել նաև, որ ուտոպիական սոցիալիզմի հիմնադիրներ Թոմաս Մորը և Թոմազո Կամպանելլան ապագա անդասակարգ հասարակարգի մասին իրենց պատկերացումները շարադրելիս իբրև օբյեկտ ընտրել են ոչ թե պատմական որևէ կոնկրետ վայր, այլ երևակայական կղզի կամ քաղաք:

Ինքնին հասկանալի է, որ այդ կարգի նյութերի («գուշակություններ», «մարգարեություններ», «տեսիլքներ» և այլն) արժույթավորությունը պայմանավորված է ամենից առաջ այն բանով, թե ովքեր են եղել նրանց հեղինակները, ինչպիսին է վերջիններիս պատրաստականությունը և, որ ամենակարևորն է, պատմական ի՞նչ պայմաններում, միջավայրում ու հանգամանքներում են ապրել ու գործել նրանք: Քանի որ ներկա դեպքում մենք ցանկանում ենք խոսել Ղուկաս Վանանդեցու կատարած քաղաքական «գուշակությունների» և ընդհանրապես Վանանդեցիների՝ հայ ազատագրական մտքի պատմության մեջ խաղացած դերի մասին, հարկ ենք համարում հիշեցնել, որ նրանք տասնամյակներ շարու-

[1] *Այդ տեսությյան ծավալուն շարադրանքը տե՛ս Կղեմես Գալանոս, Միաբանութիւն սուրբ եկեղեցւոյն հայոց ընդ մեծի սրբոյն եկեղեցւոյն Հռովմայ, հ. 1, Հռոմ, 1650: Հ. 2, մասն Ա. Հռոմ, 1658, մասն Բ. Հռոմ, 1660 (հայերեն և լատիներեն):*

նակ ապրել ու գործել են ժամանակի տնտեսական, քաղաքական ու գիտամշակութային մի այնպիսի կարևորագույն կենտրոնում, ինչպիսին Ամստերդամն էր: Այդ հանգամանքը մեծապես նպաստել է ինչպես նրանց գիտական ու փիլիսոփայական ըմբռնումների, այնպես էլ հասարակական-քաղաքական հայացքների ձևավորմանը, որոշել դրանց բովանդակությունն ու միտումը: Եվ որովհետև XVII դարի երկրորդ կեսի համաշխարհային պատմության ամենակարևոր իրադարձություններից մեկը, եթե ոչ ամենակարևորը, անգլիական բուրժուական հեղափոխությունն էր, որին հարակցվող դեպքերը մասամբ ծավալվում էին Նիդերլանդներում, ուստի Վանանդեցիների հասարակական-քաղաքական հայացքներում հեշտությամբ նշմարվում են այդ հեղափոխության արձագանքներն ու ցոլացումը:

Այժմ տեսնենք, թե քաղաքական ինչ իրադարձություններ է «գուշակում» Ղուկաս Վանանդեցին և ինչպիսին է նրա վերաբերմունքն այդ ամենի հանդեպ:

Առաջինը, որ աչքի է զարնվում Ղուկաս Վանանդեցու քաղաքական «գուշակություններում» հակապատերազմական ոգին է՝ բացահայտ ատելությունը պատերազմի հանդեպ և խաղաղության ձգտումը: Վանանդեցին ատում է պատերազմը, որովհետև վերջինիս ժամանակ հեղվում է մարդկային արյունը և «ի կողմանէ թագաւորին հասանիցին մարդոց սաստիկ նեղութիւնք և տրտմութիւնք» (Համաձայնութիւն հնգետեսակ ամսոց..., էջ 61): Ավելին, ասում է Վանանդեցին, «թագաւորք և իշխանք դիցեն հարկս ծանունս ի վերայ ժողովրդեանն, զի կատարեսցեն զարարս անիրաւս» (նույն տեղը, էջ 62): Ըստ որում, նրա խորին համոզմամբ, «անիրաւ» են ոչ միայն թագավորների ու իշխանների վարած պատերազմները, այլև դրանք մղելու համար նրանք «անիրաւութեամբ դիցեն ռամկաց զծանրակիր հարկս» (նույն տեղը, էջ 78): Վերջապես, ըստ Ղուկաս Վանանդեցու, թագավորներն ու իշխաններն իրենց «զարարս անիրաւս» գործելու նպատակով ժողովուրդների վրա հանիրավի ծանր հարկեր դնելուց բացի արձակում են նաև այլ «հրաման և կարգ անհանոյ ռամկացն» (նույն տեղը, էջ 65): Ղուկաս Վանանդեցին իրավացիորեն նկատում է, որ պատերազմներն ուղղակի վնասներից բացի բերում են նաև անուղղակի վնասներ. խափանվում են երկրագործությունն ու արհեստները, դադարում է առևտուրը, ինչպես նաև երևան են գալիս «աւազակք հզորք և գողք, մինչ զի ճանապարհորդք կասկածանօք ուղևորիցին» (նույն տեղը): Լինում են նաև այնպիսի դեպքեր, ասում են Ղուկաս և Մատթեոս Վանանդեցիները, երբ պատերազմի հետևանքով «փոփոխին իշխանք և թագաւորք, զորոց տեղիս կալնուն յաղթօղքն և փոփոխեն զօրէնս և զիրաւունս, երբեմն՝ և զկրօնս» (Բընաբանութիւն իմաստասիրական կամ տարերաբանութիւն որ է բանն, Ամստերդամ, 1702, էջ 102):

Ի պատիվ Ղուկաս Վանանդեցու պետք է ասել սակայն, որ նա պատերազմներին նայում է ոչ թե միակողմանիորեն, այսինքն՝ թե այն ինչպես է անդրադառնում ժողովրդական զանգվածների վրա, այլ երկկողմանիորեն, այսինքն՝ թե պատերազմների հետևանքով ժողովրդական զանգվածների սոցիալական դրության ծայրաստիճան վատթարացումը հակադարձ ինչ ազդեցություն կարող է ունենալ թագավորների ու իշխանների, կամ այլ խոսքով ասած՝ բոլոր նրանց վրա, ովքեր հանդես են գալիս պատերազմի հրձիգների ու սանձազերծողների անփառունակ դերում: Առաջադրելով այս հարցը, Վանանդեցին իրավամբ գտնում է, որ պատերազմը մի յուրատեսակ երկսայրի սուր է, որը հաճախ կարող է ուղղվել հենց պատերազմ հրահրողների դեմ: Բանն այն է, որ իրենց «զարարս անիրաւս» գործելու նպատակով թագավորների ու իշխանների կողմից ժողովրդական զանգվածների և ամենից առաջ ռամիկների վրա անիրավությամբ դրված ծանր հարկերի հետևանքով կամ որ միևնույնն է՝ «ի պատճառէ կոռից մարդիկ անձկանան և սրտնեղեն յիւրեանց թագաւորէն» (Համաձայնութիւն հնգետեսակ ամսոց..., էջ 76): Մարդկանց այդ անձկացումն ու թագավորից սրտնեղվելը կարող է բացասական հետևանքներ ունենալ հենց թագավորի համար: Ըստ այդմ էլ Ղուկաս Վանանդեցին հնարավոր է համարում նաև «անհնազանդութիւն ռամկաց առ թագաւորն, և կորուստ թագաւորութեան իմիք» (նույն տեղը, էջ 62—63): Այլ կերպ ասած, Վանանդեցին չի բացառում, որ պատերազմների հետևանքով և հենց դրանց շնորհիվ շատերը «ինքեանք անկցին ի նոյն գուբն, զոր այլոց փորեցին» (նույն տեղը, էջ 68):

Իսկ ի՞նչն է պատճառը, ինչո՞ւ պատերազմները հղի են թագավորների ու իշխանների համար նման բացասական հետևանքներով: Այն, որ, ըստ Ղուկաս Վանանդեցու, գոյություն ունի երկու տեսակի մարդկային գերություն, այսպես կոչված՝ տեսանելի և անտեսանելի: Եվ եթե նախապատերազմյան խաղաղ տարիներին նշմարվում է միայն առաջինը, ապա պատերազմների ժամանակ երևարկվում է նաև երկրորդը կամ ինչպես ինքն է ասում՝ «տեսանի անտես գերութիւն մարդոց» (նույն տեղը), որը, ըստ էության, ավելի ծանր է, քան առաջինը: Հենց այդ է պատճառը, որ պատերազմները, ըստ Վանանդեցու, իրենց հետ բերում



են ո՛չ միայն մարդկային կոտորած ու երկրների ավերածություն, ժողովրդական զանգվածների աղքատացում ու թշվառացում, ռամիկների հանիրավի հարկերի ծայրաստիճան մեծացում, այլև, երևան հանելով մարդկային անտեսանելի գերությունը, կարող են տեղիք տալ այն բանի, որ «ռամկական ժողովուրդն ամբոխիցի» որ «բանտք բռնութեամբ բացեալ լինին, և բազումք ի բանտարգելացն ելանիցեն» (նույն տեղը, էջ 74, տե՛ս նաև էջ 65), որ վնասներ գան ոչ միայն ժողովրդին «ի թագավորէն», այլև «թագաւորին ի ժողովրդենէ» (նույն տեղը, էջ 72):

Մեր խորին համոզմամբ վերը բերված և նշված գրքի բազմաթիվ էջերում սփռված համանման շատ այլ քաղաքական «գուշակություններ» Ղուկաս Վանանդեցին կատարել է անգլիական «փառապանծ հեղափոխության» անմիջական տպավորության ներքո, որը դեռ թարմ էր նրա հիշողության մեջ: Չէ՛ որ այս խոսքերը գրելուց ընդամենը մի քանի տարի առաջ իր գործընկերներ ու արյունակից բարեկամներ Թովմաս և Մատթեոս Վանանդեցիների հետ միասին նա ականատես կամ ունկնդիր էր եղել այն բանին, թե ինչպես հակաբռնակալական ուժերի պահանջով 1688 թ. նոյեմբերին Անգլիայի թագավոր էր հռչակվել Հոլանդիայի շտատհալտեր Վիլհելմ III Օրանացին, իսկ նույն թվականի դեկտեմբերին նախկին թագավոր Հակոբ II-ը բռնել էր վտարանդիության ուղին: Որ իսկապես վերոբերյալ քաղաքական «գուշակությունները» Ղուկաս Վանանդեցին կատարել է այդ շրջանում Եվրոպայում ծավալվող հասարակական-քաղաքական կարևորագույն իրադարձությունների ազդեցության ու անմիջական տպավորության տակ, մենք ունենք այլ կռվան ևս. 1695 թ. Վանանդեցիների տպարանի երախայրիքի՝ Քերթողահայր Խորենացու Պատմության, Թովմաս Վանանդեցու հեղինակած խիստ շահեկան առաջաբանում կարդում ենք, որ, իբրև տպարանատեր, նա բարվոք է համարել այն հրատարակել սահմանափակ տպաքանակով «Վասն անձեռնտու գոլոյ տեղւոյս. քանզի յարուցմունք պատերազմաց՝ և հեղմունք անբաւից արեանց, սասանեցուցին զբնաւ և զբոլոր կալուածս Եվրոպայու, որք միշտ հնչեն և գոչեն յունկն լսողաց ամենեցուն» (Ազգաբանութիւն տոհմին Յաբեթեան, Ամստերդամ, 1695, էջ 5ա: Ընդգծումը մերն է— Հ. Մ.):

Միանգամայն տրամաբանական է, որ եթե Վանանդեցիների տպարանի գործունեության վրա կարող էին այդքան բացասաբար անդրադառնալ Եվրոպայում ծավալվող քաղաքական անցքերը, ապա իրենք Վանանդեցիները պետք է որ կրեին այդ շրջանի եվրոպական հասարակական-քաղաքական առաջադեմ մտքի, այդ թվում և անգլիական բուրժուական հեղափոխության գաղափարախոսների ու տեսաբանների հայացքների բարերար ազդեցությունը: Իսկ հայտնի է, որ անգլիական «փառապանծ հեղափոխության» առաջնակարգ գաղափարախոս ու տեսաբան Ջոն Լոկը, որին էլ պատկանում է այդ հեղափոխության սույն որակումը, հենց Հոլանդիայում է 1690 թ. ավարտել Փորձ մարդկային բանականության մասին իր գլխագործոց երկը, ինչպես նաև Պետության մասին աշխատությունը, որտեղ հիմնավորում էր այն կարևոր գաղափարը, թե պետությունը, իբրև հասարակական դաշինքի արդյունք, ինքը նույնպես պետք է ենթարկվի տվյալ երկրում գործող օրենքներին, իսկ հակառակ դեպքում ժողովուրդն իրավունք ունի քանդելու այդ պետության հետ կնքած իր դաշինքը, տապալելու հին պետությունը և հաստատելու նոր պետություն: Չմտածե՞լ, արդյոք, որ երկնային մոլորակների ինչ-ինչ դիրքի ու դասավորության հիման վրա Ղուկաս Վանանդեցու կատարած այն «գուշակությունը», թե «նշանակէ զվնաս ինչ գալ ժողովրդեանն ի թագաւորէն, նմանապէս՝ վնասիլ թագաւորին ի ժողովրդենէ» (Համաձայնութիւն հնգետեսակ ամսոց..., էջ 72: Ընդգծումը մերն է— Հ. Մ.) ուղղակի արձագանքն է Ջոն Լոկի վերոհիշյալ տեսության՝ հարմարեցված հայ ընթերցողի ճաշակին ու իմացական աստիճանին: Ավելին, Ղուկաս Վանանդեցու աշխատություններում զգացվում է ո՛չ միայն Ջոն Լոկի հասարակական-քաղաքական ըմբռնումների, այլև նրա մատերիալիստական սենսուալիզմի, ինչպես և Ֆրենսիս Բեկոնի ազդեցությունը: Այս առումով հետաքրքիր է այն փաստը, որ Ղուկաս Վանանդեցին, ի թիվս մի շարք ականավոր գործիչների, անձնական ծանոթություն է ունեցել Լայբնիցի հետ և մեծ տպավորություն է գործել նրա վրա: Լայբնիցը, որ իր բազմակողմանի գիտելիքներով, գիտական բազմաթիվ հայտնագործություններով ու մտքի համարձակ թռիչքով այսօր էլ շարժում է շատ-շատերի զարմանքը, ուշադրություն է դարձրել Ղուկաս Վանանդեցու ինչ-ինչ մտահղացումների վրա, թեպետև դրանք նա համարել է անիրագործելի:

Հայտնի է նաև, որ այդ տարիներին գրած Նոր փորձ մարդկային բանականության մասին երկում Լայբնիցը վիճարկում էր Լոկի գլխագործոցում առաջադրված սկզբունքները, մասնավորապես նրա ճանաչողության տեսությունը: Ելնելով այս ամենից, կարող ենք ասել, որ Ղուկաս Վանանդեցին Ջոն Լոկի փիլիսոփայության առաջին հետևորդներից է ո՛չ միայն հայ, այլև եվրոպական իրականության մեջ: Բայց ի տարբերություն Լոկի, որը, իբրև անգ-

լիական բուրժուազիայի ու ազնվականության միջև կայացած քաղաքական փոխզիջման տեսաբան, խիստ զգուշանում էր ժողովրդական զանգվածներից և առանձնապես մեծ համակրանք չուներ նրանց հանդեպ, Ղուկաս Վանանդեցին, ինչպես տեսանք վերը, բացահայտ համակրանք է ցուցաբերում ժողովրդական լայն զանգվածների և ամենից առաջ ռամիկների հանդեպ: Այդ է պատճառը, որ մեկ ուրիշ անգամ խոսելով 1709, 1737, 1765 և 1793 թթ. մարտի 21-ին արեգակի ունենալիք դիրքի ու դասավորության մասին, Վանանդեցին եզրակացնում է, որ «ցուցանի լինիլ սաստիկ կռիւս և կոտորուածս. մեռանիլ մեծահամբաւ և հարուստ արանց, բայց տարին լինի քաղցր» (նույն տեղը, էջ 71: Ընդգծումը մերն է— Հ. Մ.): Մեծահամբավ ու հարուստ մարդկանց կոտորածով հանդերձ տարին կարող էր «քաղցր» համարել եթե ոչ ժողովրդական զանգվածների գաղափարախոսը, ապա գոնե նրանց հանդեպ համակրանք ու կարեկցանք ունեցող մտածողը:

Ղուկաս Վանանդեցու հակաբռնակալական ու ժողովրդամետ ոգին ոչ պակաս ցայտուն դրսևորվել է խնդրո առարկա գրքից մեկ ու կես տասնամյակ անց հրապարակված Հայելի աստուածաշունչ հին կտակարանին աշխատության մեջ: Բայց եթե նախորդ դեպքում Վանանդեցին իր սոցիալ-քաղաքական ըմբռնումները արտահայտելու հարմար միջոց էր ընտրել «գուշակությունները», ապա այս անգամ արդեն նա իր հայացքն ուղղում է դեպի պատմական հեռավոր անցյալը: Արձակ ու չափածո ձևով վերապատմելով ամբողջ հին կտակարանը, նա հաճախ աստվածաշնչյան պատմությունները ընդմիջարկում է սեփական մեկնություններով՝ տալով դրանց սոցիալ-քաղաքական շեշտ ու հնչեղություն: Օրինակ, վերապատմելով Բաղամի ու նրա էշի միջադեպը, Վանանդեցին այն եզրափակում է Ընչասէր պաշտօնեայք չափածո ստեղծագործությամբ, որտեղ Բաղամին անվանում է «անօրինեալ», որովհետև սիրում է «վարձս անօրէն» և թեև կոչվում է մարգարե, բայց շեղվում է ճիշտ ճանապարհից՝ նմանվելով այն վարդապետներին, ովքեր զուրկ են դույզն իսկ խղճմտանքից և կաշառքով քողարկում են ճշմարիտը, պաշտպանում սուտն ու կեղծիքը, ովքեր տարվելով մարմնական ցանկություններով, հանգցնում են հոգու ճրագը (տե՛ս Հայելի աստուածաշունչ հին կտակարանին, Ամստերդամ, 1713, էջ 281): Մեկ այլ տեղում արծարծելով այն հարցը, թե ինչու է ժողովուրդը երբեմն դառնում օրինազանց, Ղուկաս Վանանդեցին դրա համար մեղադրում է ոչ թե ժողովրդին, այլ միայն ու միայն իշխաններին: «...Տեսանեմք,— գրում է նա,— զի յանցանք ժողովրդեանն բազմիցս յարուցանեն զիշխանս կեղեքել և նեղել ծանր տագնապանօք զօրինազանց ժողովուրդն կամ անիրաւ պատերազմաւ և կամ անօրէն հարկապահանջութեամբ» (նույն տեղը, էջ 478):

Ղուկաս Վանանդեցին անսքող ատելություն է ցուցաբերում ո՛չ միայն անիրավ պատերազմներով ու անօրեն հարկերով ժողովրդին կեղեքող իշխանների, այլև այն թագավորների հանդեպ, ովքեր օրըստօրե ուժեղացնում են ժողովրդի ճնշումն ու շահագործումը և ժողովրդի արդարացի բողոքներից հետո նրա լուծը թեթևացնելու փոխարեն ավելի են ծանրացնում այն՝ տեղիք տալով ժողովրդական նորանոր հուզումների: Օրինակ, պատմում է, թե ինչպես Սողոմոնի մահից հետո իսրայելական ժողովուրդը դիմում է նրա որդի Ռոբովամ թագավորին՝ թեթևացնելու իր ծանր լուծը: Ռոբովամն այդ մասին մտածելու համար ժողովրդից երեք օր ժամանակ է խնդրում և օգնության կանչում իր խորհրդատուներին: Նրանցից ծերերը, որ եղել էին նաև Սողոմոնի խորհրդատուները, Ռոբովամին խորհուրդ են տալիս, որ ժողովրդին հնազանդ պահելու համար ճիշտ կլիներ անսալ նրա ձայնին ու թեթևացնել հարկերը, որովհետև ավելի լավ է, ասում են նրանք, «սիրով առ ի բարեկամութիւն, բարեհաճութիւն և ի հնազանդութիւն քարշել զնոսա, քան թէ ահիւ և սպառնալեօք» (նույն տեղը, էջ 510): Ընդհակառակը, թագավորի սննդակիցներն ու հասակակիցներն առաջարկում են ավելի մեծացնել առանց այն էլ ծանր հարկերը, դիմել իր հորից ավելի դաժան պատժամիջոցների: Վանանդեցին ցավով ու ափսոսանքով նշում է, որ Ռոբովամը «թողեալ զխորհուրդս ծերոցն, զի... էր կուրացեալ միտք նորա» (նույն տեղը: Ընդգծումը մերն է— Հ. Մ.), հետևում է երիտասարդների խորհուրդներին: Հետևանքը լինում է այն, որ բռնկվում է ժողովրդական ընդվզում, որն ավարտվում է միասնական պետության երկատմամբ ու թուլացմամբ:

Համանման գաղափարներ Ղուկաս Վանանդեցին արտահայտել է նաև 1716 թ. տպագրված Պատկերասէր պատկերատեսաց գրքում: Օրինակ, համեմատելով երկնային ու երկրային թագավորներին, Վանանդեցին գտնում է, որ երկնային թագավորն ունի անսահմանափակ իշխանություն ու կամքի բացարձակ ազատություն, ուստի ոչ ոք չի կարող սահմանափակել նրա կամքն ու իշխանությունը և կամ խափանել նրա մտադրությունները, որովհետև նա «ոչ է որպէս երկրաւոր թագաւորքն, որոց մտածին, և առաջիկայ դիտաւորութիւնն խափանել է կար, և արգելանիլ» (էջ 421): Դժվար չէ տեսնել, որ Ղուկաս Վանանդեցին ակնհայտորեն ընդունում է երկրային թագավորների մտադրություններն ու դիտավորությունները, կամքն ու ցանկությունները սահմանափակելու, անգամ իսկ խափանելու հնարավորությունը: Հարկավ, նման եզրակացության համար XVII—XVIII դարերի սահմանագծում ամենից հուսալի օրինակը տալիս էր անգլիական իրականությունը, որտեղ թագավորի կամքն ու դիտավորությունները, իսկապես, խափանում ու արգելակում էր պառլամենտը:

Որ Ղուկաս Վանանդեցին ու նրա մերձավորագույն բարեկամները պետք է կրած լինեն XVII դարի անգլիական հասարակական-քաղաքական մտքի բարերար ազդեցությունը, մեր կարծիքով, երևում է ո՛չ միայն նրանց արտահայտած վերոշարադրյալ դատողություններից ու իրենց հրատարակած մի շարք գրքերում Անգլիայի մասին սփռված հարուստ տեղեկություններից, որոնք հավաստում են անգլիական իրականությանը Վանանդեցիների իրազեկությունը, այլև այն բանից, որ Թովմաս և Ղուկաս Վանանդեցիները 1707 թ. գարնանը եղել են Լոնդոնում, արժանացել թագուհի Աննայի սիրալիր ընդունելությանը և ստացել նրա նյութական ու բարոյական օժանդակությունը: Իսկ նույն թվականի մայիսի 29-ին Օքսֆորդի Շելդոնյան թատրոնում հանդիսավոր արարողության պայմաններում Թովմաս Վանանդեցուն շնորհվել է Օքսֆորդի համալսարանի աստվածաբանության դոկտորի, իսկ Ղուկաս Վանանդեցուն՝ արվեստից մագիստրոսի պատվավոր տիտղոս: Փաստորեն Թովմաս Վանանդեցին առայժմ հայտնի առաջին հայորդին է, որ եվրոպական համալսարանում արժանացել է նման բարձր գնահատականի (տե՛ս Մ. Գրիգորյան, նշված հոդվածաշարը, «Հանդես ամսօրյա», 1966, թիվ 4—6, էջ 175—178):

Ղուկաս Վանանդեցու հասարակական-քաղաքական ըմբռնումները բնութագրելու առումով հարկ ենք համարում բերել նաև «գողություն» կատեգորիայի նրա սահմանումը: Ըստ Վանանդեցու գողությունը ոչ միայն այն է, երբ մեկը գաղտնի կամ բացահայտ կերպով ավազակաբար հափշտակում է ուրիշի ունեցվածքը, որի համար երբեմն պատժվում է դատավորի կողմից, «այլև ամենայն խորամանկ նենգութիւն, որով ջանայ ոք անիրաւաբար իւրացուցանել պատրուակաւ իւիք, թէ յայտնօրէն կամ ծածկապէս զհոգևոր կամ զմարմնաւոր բարիսն այլոց» (Հայելի աստուածաշունչ հին կտակարանին, էջ 219): Հետևաբար, ասում է նա, ամեն մի սիմոնական, որ վաճառում կամ գնում է հոգևոր պարգևներ, «ամենայն կաշառառուք և վաշխառուք, որք են շահակերք, ամենայն նենգագործ վաճառականք ի կշիռս, չափս, կանգունս, գինս և ի դրամս, և ամենայն յափշտակօղք են և ասին գողք, զի ոչ հատուցանեն և ոչ կամին հատուցանել իւրաքանչիւրոյ զիւրն ըստ կանոնի իրաւանցն» (նույն տեղը):

Դժվար չէ տեսնել, որ եթե նախորդ դեպքերում Վանանդեցին հիմնականում դատապարտում էր ժողովրդական զանգվածներին կեղեքող ֆեոդալական դասակարգի առավել աչքի ընկնող ներկայացուցիչներին՝ թագավորներ, իշխաններ, ընչասեր հոգևորականներ և այլն, ապա այս դեպքում կատարում է լայն ընդհանրացում և գող է համարում բոլոր նրանց, ովքեր որևէ ձևով խախտում ու ոտնահարում են մարդկային իրավունքը՝ անհատույց շահ ստանալու նպատակով: Որքան մեզ հայտնի է, գողության այսօրինակ ըմբռնումն ըստ էության նոր խոսք էր հայ տեսական մտքի պատմության մեջ: Դրանում համոզվելու համար բավական է ասել, որ Վանանդեցու ժամանակակից XVII—XVIII դարերի հայ մշակույթի աչքի ընկնող գործիչ Առաքել Էրզրումցին գողություն ասելով հասկանում էր միայն այն, երբ մեկը «գաղտաբար և անիրաւաբար ի բաց բառնայ զիրս և զինչս այլոց, այնպէս թէ տեարք նոցա բանականապէս ոչ կամին և ոչ հաճին, այլ ընդդիմանան» (Համառօտութիւն բարոյականի աստուածաբանութեան, Վենետիկ, 1709, էջ 122): Ինչպես տեսնում ենք, տարբերությունն ակնհայտ է:

Հավանաբար ընթերցողն արդեն նկատել է, որ մինչև այժմ Ղուկաս Վանանդեցուց բերված «գուշակությունները» ու դատողությունները հիմնականում կրում էին ընդհանուր տեսական բնույթ և, ըստ էության, վերաբերում էին բոլոր ժողովուրդներին: Սակայն նշված աշխատության մեջ կան նաև այնպիսի մտքեր ու տեղիներ, որոնք ուղղված են հայ ժողովրդին՝ նպատակ ունեն նրա մեջ ուժեղացնելու օտարի լծից և ամենից առաջ թուրքական բռնակալությունից ազատագրվելու հույսն ու ձգտումը:

Բանն այն է, որ XVII դարի վերջերին եվրոպական առանձին տերություններ և Հռոմի պապը մտմտում ու փայփայում էին հակաթուրքական խաչակրաց արշավանք կազմակերպելու գաղափարը, որն իր արտահայտությունն ու պաշտպանությունն է գտել նաև 1699 թ. Իսրայել Օրու կազմած պֆալցյան ծրագրում (տե՛ս Ա. Հովհաննիսյան, նշվ. աշխատ., գիրք 2, Երևան, 1959, էջ 348): Ղուկաս Վանանդեցու արտահայտած գաղափարները բխում էին Եվրոպայում տարածուն հակաթուրքական խաչակրաց արշավանք կազմակերպելու մտայնությունից, որը, սակայն, այնքան իրական ու զորեղ չէր, որ հույսեր արթնացներ, թե դաշնակիցները կարող են բազում զինվորների հետ միասին սպանել սուլթանին,

այդ պատճառով էլ վերջինս մնում էր սոսկ որպես բաղձալի ցանկություն: Այդ են վկայում հատկապես նրա դատողություններում «և գուցե» կամ «գուցե ևս» բառակապակցությունները, որոնք բացակայում են Ղուկաս Վանանդեցու այլաբնույթ «գուշակություններում»:

Այս կապակցությամբ ցանկանում ենք ընթերցողի ուշադրությանը ներկայացնել մի քանի այլ փաստեր ու իրողություններ ևս, որոնք կարիք ունեն հետագա ուսումնասիրության: Ամստերդամի թանգարանում պահվող Պետրոս I-ի փորագրական աշխատանքներից մեկում (պատրաստված 1698 թ.) ձեռքին խաչ ունեցող հսկայի տեսքով պատկերված է արդարության գաղափարը: Նրա ոտքերի տակ կապված պառկած է թուրքական սուլթանը՝ ռազմական զենք ու զրահի և թուրքական բանակների դրոշների հետ միասին (մանրամասն տե՛ս М. М. Хачатрян, Карта мира Гукаса Ванандеци, «Բանբեր Երևանի համալսարանի», 1971, № 1, էջ 189): Նկատենք, որ Պետրոսն այդ փորագրությունը պատրաստել է 1696 թ. Ազովի հաղթական գրավումից հետո, երբ Ռուսաստանում լայն աշխատանք էր ծավալվում Ազովյան նավատորմիղի ստեղծման համար: Իսկ պատմական անհերքելի իրողություն է, որ Պետրոս I-ը Ամստերդամում եղած ժամանակ փորագրության արվեստ է սովորել Վանանդեցիների տպարանի հոլանդացի անվանի փորագրիչ Ադրիան Սկոնեբեկի մոտ, որին՝ կադրեր պատրաստելու և Ազովյան արշավանքի քարտեզների հրատարակությունը ղեկավարելու նպատակով Պետրոսը հրավիրել է Ռուսաստան, որտեղ էլ նա վախճանվել է 1705 թ.:

Կա մեկ ուշագրավ փաստ ևս. խոսելով Վանանդեցիների անմիջական ղեկավարությամբ հայերենի ուսումնասիրությանը ձեռնամուխ եղած գերմանացի ականավոր հայագետ Յոհան Շրյոդերի կյանքի ու գործունեության մասին, Գ. Ջահուկյանը գրում է. «Հայերենի մեջ կատարելագործվելու նպատակով Շրյոդերը որոշում է ճանապարհորդություն կատարել դեպի Հայաստան: Նա Արխանգելսկի վրայով մեկնում է Մոսկվա՝ սպասելով Թովմայի ժամանելուն, սակայն վերջինս վախճանվում է, և Շրյոդերը ստիպված է լինում վերադառնալ Ամստերդամ» (Գրաբարի քերականության պատմություն, Երևան, 1974, էջ 176): Ինչո՞ւ Թովմասը և Շրյոդերը նախապես ընտրել էին Հայաստան գալու հենց այդ ուղին, և ինչո՞ւ Շրյոդերը պետք է իր ապագա ուղեկցին սպասեր հատկապես Մոսկվայում: Մեր կարծիքով, բացառված չէ, որ դա ունեցել է նաև քաղաքական որոշ նկատառումներ, առավել ևս, որ Թովմասը Մոսկվա էր գալու Անգլիայի թագուհի Աննայի հետ հանդիպելուց հետո:

Մեր կարծիքով անկարևոր չէ և այն հանգամանքը, որ 1699 թ. Ղուկաս Վանանդեցու տըպագրած Գանձ չափոյ, կշռոյ, թուոյ և դրամից բոլոր աշխարհի արժեքավոր աշխատության մեջ հանդիպում են Ռուսաստանի տնտեսական ու առևտրական կյանքին վերաբերող հատուկ միտումով գրված անչափ հետաքրքիր բազմաթիվ տեղեկություններ, որոնցով հեղինակը, անտարակույս, ցանկացել է հայ, ամենից առաջ ջուղահայ, առևտրականների ուշադրությունը դարձնել դեպի Ռուսաստան, նրանց կապել Ռուսաստանի առևտրական կյանքի հետ: Դա զգացվում է հատկապես այն բանից, որ ի տարբերություն այլ երկրների, Ռուսաստանի մասին խոսելիս Վանանդեցին բազմիցս շեշտում է Ռուսաստանի մաքսային մեղմ քաղաքականությունը: Օրինակ, նա հայտնում է, որ եթե Ամստերդամից գնաս Արխանգելսկ, Նովգորոդ և Սմոլենսկ քաղաքները, որոնք տանում են Մոսկվա, բացի փոխադրավարձից մաքս չես վճարի: Նույն ձևով էլ, ավելացնում է նա, «Մօսկօվէն չուրի Հաշթարխան, էլ գոմրուկ չկայ, միայն նավի քիրայ կու տաս չուրի Նիազօվայ, որպէս Մօսկօվի թագաւորի հրաման է եղած» (էջ 39: Ընդգծումը մերն է— Հ. Մ.): Նախ՝ հետաքրքիր է, թե Վանանդեցին ի՞նչ աղբյուրից էր տեղեկացել Մոսկվայի թագավորի հրամանի մասին: Գուցե հենց անձամբ Պետրոս Մեծի՞ց, որը 1697—1698 թթ. գտնվում էր Եվրոպայում և հավանաբար ծանոթ էր Վանանդեցուն ու նրա գործունեությանը: Երկրորդ՝ շեշտելով, որ առևտրական այդ կարգը հաստատված էր թագավորի իսկ հրամանով, մեր կարծիքով, Վանանդեցին կամեցել է հայ վաճառականներին հասկացնել, որ Ռուսաստանի հետ և նրա վրայով Եվրոպայի հետ կատարվող առևտրի աշխուժացումը շահավետ է ո՛չ միայն իրենց, այլև Ռուսաստանի համար:

Վերջապես, ուշագրավ է և այն փաստը, որ 1702 թ. հրատարակված Բնաբանութիւն իմաստասիրական կամ տարերաբանութիւն որ է բան գրքում Ղուկաս և Մատթեոս Վանանդեցիները հայերեն այս կամ այն տերմինի օտար (հունարեն, լատիներեն, արաբերեն, տաճկերեն, եբրայերեն, հաբեշերեն) համարժեքների հետ մեկտեղ սկսում են գործածել նաև դրանց ռուսերեն և վրացերեն համարժեքները, մի բան, որ չենք տեսնում սկզբնական շրջանի նրանց հրատարակություններում: Չմտածե՞լ արդյոք, որ դա, ըստ էության, արտահայտությունն է հայ-ռուս-վրաց դաշինքի միջոցով Հայաստանի ազատագրման Իսրայել Օրու փայփայած գաղափարի: Ինչևէ: Ի մի բերելով այս ամենը, գտնում ենք, որ Իսրայել Օրու ռուսական կողմնորոշման երևան գալու, ինչպես նաև Օրու քաղաքական առաքելության հանդեպ Պետրոս Մեծի ցուցաբերած համակրալից վերաբերմունքի համար պետք է որ բարենպաստ հող նախապատրաստված լիներ դեռևս Պետրոսի Ամստերդամում եղած ժամանակ: Իսկ դա կնըշանակի, որ հոլանդացի գիտնականի վերոբերյալ հարցումը զուրկ չէ իրական հիմքից և, իսկապես, ինչ-որ կապ է եղել Վանանդեցիների գործունեության ու Իսրայել Օրու քաղաքական առաքելության միջև: Կարծում ենք, որ հետագա մանրազնին ուսումնասիրությունները կարող են ի հայտ բերել մեր այս եզրակացությունը հաստատող նոր աղբյուրներ:

Ղուկաս Վանանդեցու վերը բերված քաղաքական «գուշակություններից» ու դատողություններից դժվար չէ տեսնել, որ նա, ըստ էության, հակասական վերաբերմունք ունի պատերազմների հանդեպ. մի կողմից, նա մերժում ու դատապարտում է թագավորների ու իշխանների սանձազերծած պատերազմները, որովհետև դրանց հետևանքով ավելանում են ռամիկների ու ժողովրդական զանգվածների վրա անիրավությամբ դրված առանց այն էլ ծանր հարկերը, խափանվում են առևտուրը, երկրագործությունն ու արհեստները, շատանում են գողերն ու ավազակները և այլն, իսկ մյուս կողմից՝ փորձում է լռելյայն հասկացնել ժողովրդին, որ ցանկանալու դեպքում նա ի վիճակի է վնասելու թագավորներին ու իշխաններին, որ վերջիններս հավիտենական ու անփոփոխ չեն, այլ կարող են փոփոխվել «իշխանութիւնք իշխանաց» և կամ բացառված չէ «անհնազանդութիւն ռամկաց առ թագաւորն և կորուստ թագաւորութեան հիմիք»: Մի կողմից, նա իրավացիորեն պատերազմները համարում է արյունահեղության, երկպառակությունների, մարդկանց տրտմության, անձկացման ու սրտնեղության պատճառ, իսկ մյուս կողմից՝ պարզ ու մեկին գրում է, որ դրանք տեսանելի են դարձնում «անտես գերութիւն մարդոց», որ կարելի է բռնությամբ բացել բանտերը և ազատագրել բանտարկյալներից շատերին: Վերջապես, մի կողմից, երազում է խաղաղության մասին և առաջարկում է աստծուց խնդրել, որ չլինի «խռովութիւն ի մէջ իշխանաց» (էջ 59), իսկ մյուս կողմից՝ երազում ու անհամբերությամբ սպասում է, որ «թագաւորն տանկաց» խիստ նեղվի իր թշնամիներից, իսկ, եթե հնարավոր է, սպանվի իր բազմաթիվ զինվորների հետ միասին: Այս ամենը մեզ հիմք է տալիս ասելու, որ նոր շրջանի հայ տեսական մտքի պատմության մեջ Ղուկաս Վանանդեցին առաջիններից մեկն է փորձում տարբերակել արդարացի և անարդարացի պատերազմները՝ դրվատելով ու պաշտպանելով առաջինները, ընդհակառակը, մերժելով ու անարգանքի սյունին գամելով վերջինները:

Հայ ազատագրական մտքի պատմության մեջ Ղուկաս Վանանդեցու և նրա մերձավորագույն բարեկամների, ու ամենից առաջ նրա հորաքրոջ որդի Մատթեոս Վանանդեցու, խաղացած դերն ու մուծած նպաստը հասկանալու տեսակետից առանձնապես կարևոր է Ղուկասի և Մատթեոսի հեղինակած Բնաբանութիւն իմաստասիրական կամ տարերաբանութիւն որ է բան մեզ արդեն ծանոթ գիրքը: Այստեղ հեղինակները ի թիվս բնագիտական, փիլիսոփայական, տրամաբանական այլևայլ գիտելիքների հայ ընթերցողին գաղափար են տալիս նաև մի շարք նյութերի քիմիական բաղադրության, օգտակար ու վնասակար հատկությունների, ստացման եղանակների մասին և այլն: Ըստ այդմ էլ, խոսելով նատրիումական աղի քիմիական հատկությունների մասին, նրանք անսպասելիորեն հայտնում են, որ «ի նաթրուն աղից, կամ ի շօրայից, ի ծծմբոյ և ի գործելեաց (որ անձող կամ ածուխ ևս ասի) յօրինի, և կազմի հրային փոշին՝ որ գռեհկօրէն բարութ ձայնի» (էջ 62):

Այնուհետև բերված է մի աղյուսակ (նույն տեղը), որտեղ ցույց է տրված զենքի տարբեր տեսակների համար արկեր ու գնդակներ պատրաստելու վառոդի բաղադրամասերի անհրաժեշտ քանակությունը:

Ծանոթանալով այդ աղյուսակին, առաջին հայացքից թվում է, թե խնդրո առարկա գրքում այն տեղ է գտել թյուրիմացաբար և ոչ մի կապ չունի նրա ընդհանուր բովանդակության հետ: Բայց դա պարզապես թվում է, իրականում անչափ խոր իմաստ է պարունակում, որն ի հայտ է գալիս, երբ ներկա աղյուսակը համադրում ենք Ղուկաս Վանանդեցու վերոհիշյալ քաղաքական հարցադրումների հետ և առավել ևս՝ երբ փորձում ենք մտովի տեղափոխվել մեր ժողովրդի պատմության այն շրջանը, որում ապրում ու գործում էին Վանանդեցի հայրենասեր մտածողները: Ինչպես տեսանք, նրանք Իսրայել Օրու կատարած պատմական շրջադարձի՝ ռուսական կողմնորոշման, ժամանակակիցները, մեր կարծիքով, մասամբ և դրա աջակիցները էին, իսկ մոտավորապես երկու տասնամյակ հետո բռնկվեց Դավիթ-Բեկի գլխավորած ազատագրական զինված ապստամբությունը, որը, անկասկած, հանկարծահաս ինչ-որ բան չէր, այլ ամենից առաջ ծնունդ էր հայ ժողովրդի ազգային ինքնագիտակցության բարձրացման, հոգևոր հասունացման տևական աշխատանքի, որի մեջ իրենց լուման ունեին նաև Վանանդեցի հայրենասեր մտածողները:

Ասենք, որ Ղուկաս Վանանդեցին հետագա-

Գինը՝ 25 կ.
Индекс 77783
ISSN 0130--8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՆՈՐ ԱՂՄԿԱՄԱՐԻՉ

Շինանյութերի ու կառուցվածքների հայկական ԳՀԻ և Երևանի սրտաբանության ու սրտավիրաբուժության ինստիտուտում ստեղծվել է աղմուկը կլանող սարք։ Սարքի աշխատանքը հիմնված է հանրահայտ երևույթի վրա. միևնույն հնչյունը, որ վերարտադրվում է իր փուլի կեսի չափի ուշացումով, ալիքների ինտերֆերենցիայի շնորհիվ ասես թե մարում է։ Նոր սարքը կարող է աղմուկը կլանել ո՛չ միայն առանձին աշխատատեղում, այլև ողջ արտադրամասում։ Եթե սարքը բանելիս աղմուկ է առաջանում, ապա դա նշանակում է, որ խախտվել է սարքավորման սովորական ռիթմը, այսինքն՝ սարքը վնասվել է։

## ՇԻՆԱՆՅՈՒԹ՝ ՎԱԶԻՑ

Ագրոնոմիայի պահանջներին համապատասխան, ամեն տարի գարնանը խաղողի պլանտացիաներում կատարվում է վազերի էտում։ Հին վազերը, որոնք, ի դեպ, բավական հաստ են, սովորաբար այրում են կամ տալիս են կրծելու ընտանի կենդանիներին՝ ատամները ամրացնելու համար։ Էտվածքի ավելի ռացիոնալ օգտագործման եղանակ են առաջարկում Բուրգասի (Բուլղարիա) գիտատեխնիկական կայանի ինժեներները։ Բանն այն է, որ վազը ամուր և խիստ արժեքավոր փայտանյութ է՝ հարուստ լիգնինով և ցելյուլոզայով։ Մեկ հեկտարից ստացվում է մինչև 20 տոննա նման նյութ։ Եվ ահա առաջարկվում է այն չայրել, այլ հավաքել, չորացնել, մանրել և պատրաստել փայտատաշեղային սալիկներ։ Առաջին փորձերը պսակվեցին հաջողությամբ։ Նոր սալիկները պիտանի են ինչպես կահույքի, այնպես էլ շինարարական նպատակների համար։ Նման մշակումը կարևոր է և նրանով, որ խաղողը հիմնականում աճում է այն շրջաններում, ուր սովորաբար փայտանյութը պակաս է։

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԱՀԿ-ՆԵՐԸ

Էլեկտրոնային ավտոմատ հեռախոսակայանները կոչում են երրորդ սերնդի կայաններ։ Էլեկտրոնիկան այստեղ հնարավորություն է ընձեռում ավելի փոքրացնելու սարքավորման չափերը, ավելացնելու աբոնենտների թիվը և ապահովելու կապը առանց էլեկտրամեխանիկական սարքերի, այսինքն՝ գրեթե առանց խանգարումների։ Ընդ որում էլեկտրաէներգիան տնտեսվում է մոտ 40 տոկոսով։

«ՌՑՏ» (ԳԴՀ) կոմբինատի էլեկտրոնային ԱՀԿ-ի աշխատանքը ղեկավարում է միկրոպրոցեսորը։ Դրա շնորհիվ առավոտները հնչում են ավտոմատորեն պատվիրված ակուստիկ ազդանշաններ։ Եթե մեկի հետ խոսելիս ձեզ զանգահարում է մեկ ուրիշը, ապա ապարատը արձակում է նախազգուշական «տկտկոցներ»։ Լսափողը չկախելով, կարելի է հրաժեշտ տալ առաջինին և սկսել զրույցը երկրորդի հետ, իսկ հետո, մեկ կոճակ սեղմելով, կրկին կանչել առաջինին։ Եվ հետո. տոնական ու հոբելյանական օրերին դուք իրար հետևից կարող եք հավաքել, ասենք, ձեր յոթ ազգականների և ծանոթների հեռախոսահամարները և բոլորին միանգամից, ինչպես սելեկտորով, հաղորդել ձեր շնորհավորանքները։ Դրա համար կա ստեղնաշար, ինչպես և այլ նորույթներ։

## ՍՈՍԻՆՁ՝ ՈՒՂԵՂԻ ՀԱՄԱՐ

Պիտսբուրգի համալսարանում (ԱՄՆ) մշակվել է պլաստմասսայից պատրաստված բավական արդյունավետ «գերսոսինձ»՝ պայթելու ենթակա ուղեղանոթների համար։ Այն ներարկում են շպրիցի միջոցով, և դրա շնորհիվ շատ դեպքերում կանխվում է բավական վտանգավոր վիրաբուժական միջամտությունը։ Հարկ է նշել, որ անցյալում ևս նման փորձեր կատարվել են, սակայն այն ժամանակ սոսինձը ներարկում էին ճկուն ձողախողովակի միջոցով, որը պետք է անցներ անոթների ամբողջ հյուսվածքի միջով, ընդ որում երաշխիք չկար, թե սոսինձը կրնկներ հենց պահանջվող տեղը, իսկ պրոցեդուրան ինքը չափազանց բարդ էր։ Մինչդեռ նոր մեթոդը, ինչպես գրում է «Սայենս դայջեստ» հանդեսը, պարզ է և հուսալի. հիվանդի գանգի համապատասխան մասում արվում է ոչ մեծ բացվածք, իսկ հետո հատուկ ռենտգենյան ապարատի հսկողությամբ մտցվում է նուրբ շպրից, որով վտանգված տեղում ներարկվում է բուժիչ սոսնձի անհրաժեշտ բաժինը։